# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**3** ՄԱՐՏ · 1967
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 46-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏՆՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

**«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении**


## Բովանդակություն








---

# Содержание



---



# ՄԵԾ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ 50-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ

## ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՊԵՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ


Ա. ԲԵԳԻՅԱՆ

Իրավաբանական գիտությունների դոկտոր


Սովետական ազգային պետականությունը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ծնունդն է: Ինչ խոսք, որ նախկին ռուսական կայսրության գաղութատիրական ռեժիմի, ռուսական մեծապետական շովինիզմի գաղափարախոսության տիրապետության պայմաններում միանգամայն անհնար էր ոչ-ռուս ազգերի ու ազգությունների պետականության ստեղծումը:

Փետրվարյան հեղափոխությունը ևս ոչ մի էական փոփոխություն չմտցրեց ազգային հարաբերությունների մեջ: Նա չոչնչացրեց ազգային ճնշումը, չբավարարեց ժողովուրդների պահանջները՝ ազգային ազատություն ընձեռելու, ազգային պետականության իրավունք ստանալու վերաբերյալ:

Հասարակության առաջընթացը պահանջում էր սկզբունքորեն այլ հիմքերի վրա կառուցել ազգային-պետական հարաբերությունները: Եթե ցարիզմի և ժամանակավոր կառավարության ազգային քաղաքականության համար բնորոշ էին ոչ-ռուս ազգերի ու ազգությունների պետականության ամեն մի սաղմի ճնշումը, նրանց կուլտուրայի խեղումը, լեզվի արգելակումը և, անգամ, նրանց ռուսացումը, ապա բոլշևիկները Վ. Ի. Լենինի գլխավորությամբ պահանջում էին ոչ միայն բոլոր ազգերին «հավասարություն ընձեռել ամեն բանում, այդ թվում և պետական շինարարության մեջ, *«իր»* պետությունը կառուցելու փորձի մեջ» (Երկեր, հ. 22, էջ 457), այլև գործնական միջոցառումների դիմել նրանց էկոնոմիկան, կուլտուրան զարգացնելու, լեզուների լիակատար հավասարությունն ու ազատությունը, ինչպես և ազգային ազատ զարգացումն ապահովելու ուղղությամբ: Ոչ-ռուս ազգերի աշխատավոր մասսաները, ռուս պրոլետարիատի հետ միասին ու նրա գլխավորությամբ պայքարելով հանուն սոցիալական ազատագրության, միաժամանակ ապահովում էին իրենց ազգային ազատագրությունը: Այս առնչությամբ անհրաժեշտ էր պետական կազմակերպման նոր համապատասխան ձևեր գտնել:

Հարկավոր էր հասարակական ու պետական այնպիսի նոր կարգ, այնպիսի նոր պետական ապարատ, որն իր ինտերնացիոնալ բնույթով հանդերձ կարողանար ծառայել ոչ միայն սոցիալական, այլև ազգային-ազատագրության գործին: Ռուս և ոչ-ռուս ազգերի աշխատավոր մասսաների ինքնագործունեությունն ստեղծեց այդպիսիք՝ ի դեմս սովետների: Սովետների առաջացումը հնարավորություն ընձեռեց շաղկապելու Հոկտեմբերյան մեծ հեղափոխության սոցիալական և ազգային նվաճումները: «Եթե հեղափոխական դասակարգերի ժողովրդական ստեղծագործությունը չստեղծեր սովետները,—գրում էր Վ. Ի. Լենինը,— ապա պրոլետարական հեղափոխությունը Ռուսաստանում անհուսալի մի գործ կլիներ, որովհետև հին ապարատն ունենալով՝ պրոլետարիատը, անկասկած, չպիտի կարողանար իշխանությունը պահել իր ձեռքին, իսկ նոր ապարատ մեկեն ստեղծել չի կարելի» (Երկեր, հ. 26, էջ 110):

Սովետների բոլշևիկացումը, Ռուսաստանի բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավոր մասսաների համախմբումն այդ սովետների շուրջը, կանխորոշեցին Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակը: Հոկտեմբերյան հեղափոխությունը համաշխարհային պատմության մեջ եղած բոլոր հեղափոխություններից ամենաժողովրդականն էր ու ամենաարմատականը: Նա աննախընթաց մի շրջադարձ նշանավորեց ոչ միայն երկրի էկոնոմիկայում, նրա սոցիալ-քաղաքական, գաղափարական և կուլտուրական կյանքում, այլև ազգային քաղաքականության մեջ: Նա վերջ տվեց «ժողովուրդների բանտին», ազգային փոխհարաբերությունների նոր դարագլուխ բացեց մեր հսկայածավալ ու բազմազգ պետության մեջ, որտեղ յուրաքանչյուր ազգի կամ ազգության ազատ զարգացումը բոլորի ազատ զարգացման անվերապահ պայմանն է դարձել:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը դրեց մեր երկրի ազգերի և ազգությունների պետական զարգացման սկիզբը: Լենինյան ազգային քաղաքականության հիմնական սկզբունքները և նպատակներն իրենց արտահայտությունը գտան հեղափոխության ստեղծած սովետական պետության մի շարք կարևոր դեկրետներում ու փաստաթղթերում, ինչպիսիք են՝ «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիան», «Բնակչությանը», «Ռուսաստանի և Արևելքի բոլոր աշխատավոր մուսուլմաններին», «Կազանի, Ուֆայի, Օրենբուրգի, Եկատերինբուրգի սովետների և Թուրքեստանի երկրամասի ժողկոմսովետի» դիմումները և այլն:

1917 թվականի նոյեմբերի 5 (18)-ին հրապարակված «Դիմում բնակչությանը» փաստաթղթում ժողովրդական կոմիսարների սովետի նախագահ Վ. Ի. Լենինը աշխատավորներին կոչ էր անում համախմբվել ու իրենց ձեռքը վերցնել պետության բոլոր գործերը: Նույն միտքն էր արտահայտում նաև Ռուսաստանի նախկինում ճնշված ժողովուրդներին ուղղված դիմումը:

Բոլոր ազգերի ու ազգությունների աշխատավորները կարճ ժամանակամիջոցում համոզվեցին, թե առաջադիմական ինչպիսի փոփոխություններ է մտցնում իրենց կյանքում, ազգային վերածննդի և բազմակողմանի զարգացման ինչպիսի հնարավորություններ ընձեռում Հոկտեմբերյան հեղափոխությունը և անվերապահ ու անձնուրաց պաշտպան կանգնեցին նրան:

Մեր երկրից վռնդված բուրժուա-նացիոնալիստական կառավարությունների պարագլուխները, այդ թվում նաև դաշնակները, տասնյակ տարիներ շարունակ ճգնում են խեղաթյուրել կամ մերժել Հոկտեմբերյան հեղափոխության նշանակությունը ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների ճակատագրի, նրանց բազմակողմանի զարգացման ու ծաղկման գործում: Մեծ Հոկտեմբերի 50-ամյակի շեմին պարզապես չարանենգ ու ստոր ոտնձգություններ են դաշնակների փորձերը «ապացուցելու», թե Հոկտեմբերյան հեղափոխությունը հայ ժողովրդի համար ընդունելի չէ, թե առանց նրան էլ Հայաստանը կունենար իր ներկայիս նվաճումները: Այսպիսի վայրահաչություններ կրկնվում են անգամ 1966 թվականին դաշնակների «Հայրենիք», «Ալիք» և այլ թերթերում:



Լենինը դեռևս սովետական իշխանության առաջին օրերին մերկացրեց բուրժուա-նացիոնալիստական քաղաքագետների և հրապարակախոսների այն հերյուրանքները, թե, իբր, ոչ ռուս ազգերը չեն ընդունել Հոկտեմբերյան հեղափոխությունը, սովետների իշխանությունը: Նա լիակատար իրավունք և հիմք ուներ գրելու, որ «Ռուսաստանի բնակչության մեծամասնության և, առաջին հերթին, բոլոր ազգերի աշխատավոր մասսաների կողմից սովետական իշխանության ճանաչումը բոլորի համար ակնհայտ փաստ է» (Երկեր, հ. 26, էջ 510): Այդ անվիճելի փաստը հաստատվում է թեկուզ այն բանով, որ Հոկտեմբերյան հեղափոխության առաջին իսկ օրերից մեր երկրի բոլոր ազգերին պատկանող աշխատավոր մասսաները ոչ միայն պաշտպանեցին ու ամրապնդեցին Ռուսաստանի Սովետական Հանրապետությունը, այլև ձեռնամուխ եղան իրենց սովետական ազգային պետականության կառուցմանը:

Ամփոփելով սովետական իշխանության գոյության առաջին չորս տարիների ազգային-պետական շինարարության արդյունքները, Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «Մենք *բոլոր* ոչ-ռուս ազգություններին տվել ենք *իրենց սեփական* հանրապետությունները կամ ավտոնոմ մարզերը» (Երկեր, հ. 33, էջ 40): Եթե ճիշտ է այն դրույթը, որ մեր երկրի պայմաններում ազգային պետականությունն անհնարին էր առանց Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի և սովետական հասարակական-քաղաքական կարգի հաստատման, ապա ճշմարիտ է նաև այն, որ տվյալ պայմաններում սովետական հասարակական-քաղաքական կարգի ամրապնդման շահերը պահանջում էին տասնյակ ազգերի ու ազգությունների միավորում, նրանց պետականության ստեղծում և ամրապնդում: Դա լիովին համապատասխանում էր ազգային-պետական նոր հարաբերությունների զարգացման օբյեկտիվ տենդենցներին, ինչպես նաև օրինաչափ ու անհրաժեշտ էր պատմականորեն:

Սովետական ազգային պետականությունը, որ օրինաչափ ծնունդն է հեղափոխության, հենց սկզբից իր էությամբ սոցիալիստական է: Նա այնպիսի մի իշխանություն է, որը համապատասխանում է բոլոր ազգերի ու ազգությունների և, ամենից առաջ, նրանց բանվորների և գյուղացիների կենսական շահերին, նպատակ ունի ոչնչացնելու թե՛ օտար և թե ազգային բուրժուազիայի իշխանության բոլոր արմատները, միավորելու տվյալ ազգի աշխատավորության ջանքերը երկրի մյուս ազգերի աշխատավորության ջանքերին՝ բազմազգ միասնական սոցիալիստական պետությունն ամրապնդելու գործում:

ՍՍՀՄ ազգերի և ազգությունների պետականությունն ունի այն էական առանձնահատկությունը, որ նա պատմականորեն ստեղծվել է պրոլետարիատի դիկտատուրայի բազայի վրա: Քանի որ վերջինիս պետական ձևը մեր երկրում սովետներն են, ուստի, այն, ինչպես և համասոցիալիստական պետությունը, *սովետական* ազգային պետականություն է: Պրոլետարիատի դիկտատուրայից դուրս անհնարին կլիներ թույլ և փոքր ժողովուրդների հիրավի կայուն ազգային պետականությունը: Այսպես, ամենևին հուսալի և ռեալ չէր հայկական այն

պետականությունը, որ ստեղծել էին կապիտալի դաշնակ սպասավորները, ձըգ-
տելով Հայաստանում պահպանել շահագործողների տիրապետությունը:
Դաշնակները կաշվից դուրս էին գալիս ցույց տալու, թե իրենք կլուծեն
ազգային հարցը և կապահովեն Հայաստանի ազգային պետականությունը, ա-
զատությունն ու անկախությունը: Սակայն, իրականում, ազգային հարցի լուծ-
ման ասպարեզում նրանք նույնքան սնանկ դուրս եկան, որքան և Ուկրաինայի,
Բելոռուսիայի, Ադրբեջանի կամ Վրաստանի բուրժուա-նացիոնալիստական կու-
սակցությունները: Ազգային հարցի լուծումը, մասնավորապես հայկական և ազ-
գային մյուս պետականությունների ստեղծումն ու զարգացումը հնարավոր դար-
ձան միմիայն պրոլետարիատի դիկտատուրայի՝ սովետական իշխանության բա-
զայի վրա:

Սովետական ազգային պետականությունը մեր բազմազգ երկրի համար
կենսական անհրաժեշտություն է, որն այնպես է արտահայտում առանձին սովե-
տական ազգերի ու ազգությունների պահանջմունքները, ինչպես ընդհանուր
սովետական պետությունը՝ երկրի բոլոր ժողովուրդների պահանջմունքները:
Սովետական պետությունը և ազգային պետականությունը մեր երկրի ժողո-
վուրդների պետական կազմակերպման այն ձևերն են, որոնց լիովին հաջողվեց
համատեղել ինչպես առանձին ազգերի ազատ զարգացումը, այնպես էլ ամբողջ
երկրի, բոլոր աշխատավոր դասակարգերի աննախընթաց սոցիալական առա-
ջադիմությունը:

Ինչպես իսկական ազգային գաղափարները բանվորական շարժման մեջ,
ասում էր Ֆ. Էնգելսը, միաժամանակ և իսկական ինտերնացիոնալ, միջազգային
են, այնպես էլ սովետական ազգային պետականությունն իր սոցիալական բնույ-
թով սկզբից ի վեր հենց այնպիսի քաղաքական իշխանություն է, որը միաժա-
մանակ թե իսկական ազգային և թե խորապես միջազգային է: Փաստ է, որ մեր
երկիրը բազմազգ է, և որ նրա պետական կարգի ամրակուռ բնույթը հենված է
նրա բոլոր ազգերի ու ազգությունների շահերի և գործողությունների միասնու-
թյան վրա, մինչդեռ, բուրժուական բազմազգ պետությունների պայմաններում
միանգամայն անհնար է ամբողջ երկրի պետականության միասնությունը:

Սովետական բազմազգ երկրում ազգային-պետական շինարարության հի-
սուն տարիների փորձը վկայում է սովետական ազգային պետականության ձևե-
րի բազմազանության մասին: Հանդիսանալով սովետական ազգային պետա-
կանության կարևոր առանձնահատկությունը, ձևերի այդ բազմազանությունը
հնարավորություն է ընձեռում արտացոլելու մեր երկրի ազգերի ու ազգություն-
ների տնտեսական, կենցաղային և մշակութային յուրահատկությունները, ինչ-
պես նաև պատմական զարգացման առանձնահատկությունները, նպաստում
նրանց առավել արդյունավետ մասնակցությանը սոցիալիզմի և կոմունիզմի կա-
ռուցման մեծ գործին:

Սովետական ազգային պետականության ձևերի բազմազանությունը չի
ժխտում, այլ ենթադրում է նրանց անվերապահ միասնությունը համասովետա-
կան պետականության հետ, պետական իշխանության կազմակերպման միաս-
նությունն ամբողջ երկրի մասշտաբով: Նմանապես և ազգերի ու ազգություննե-
րի տնտեսական, կենցաղային, մշակութային և այլ առանձնահատկությունների
առկայությունը չի ժխտում, այլ ենթադրում է նրանց ընդհանուր տնտեսական,
քաղաքական խնդիրների և շահերի ներդաշնակությունը, ամբողջ սովետական
ժողովրդի շահերի ընդհանրությունը, միասնական տրադիցիաներն ու գծերը,



որոնք ավելի ու ավելի են զարգանում կոմունիստական շինարարության ըն-
թացքում: Այսպիսով, սովետական պետականությունը միասնական և միաժա-
մանակ բազմազան է, ինչպես և սովետական ժողովուրդը միասնական և միա-
ժամանակ բազմազգ է:

Սովետական ազգային պետականությունը ՍՍՀՄ ազգերի ու ազգություն-
ների պետականության հավաքական անվանումն է, որը վերաբերում է միութե-
նական սուվերեն և ինքնավար հանրապետություններին: Միութենական հան-
րապետությունը սովետական սոցիալիստական սուվերեն պետություն է, որն
ունի պետական իշխանության բարձրագույն օրգաններ, կառավարություն, դա-
տական գերագույն մարմին, դատախազության սիստեմ՝ հանրապետության դա-
տախազի գլխավորությամբ, ունի իր տերիտորիան, որը չի կարող փոփոխվել
առանց իր համաձայնության և վերջապես ընդունում է իր սահմանադրու-
թյունը:

Միութենական հանրապետությունը մեծ լիազորություններ ունի պետական,
տնտեսական և սոցիալ-կուլտուրական շինարարության, արտաքին հարաբերու-
թյունների, պաշտպանության, օրենսդրության, պետական կարգի ու քաղաքա-
ցիների իրավունքների պահպանման բնագավառում: Ճիշտ և հմտորեն օգտա-
գործելով իր այդ բավական լայն լիազորություններն ու իրավունքները, միու-
թենական հանրապետությունը պատշաճ ու նշանակալի դեր է խաղում կոմու-
նիստական հասարակարգի կառուցման գործում:

Կոմունիզմի կառուցման գործում նշանակալի դեր են խաղում նաև ինք-
նավար հանրապետությունները: Լինելով սովետական սոցիալիստական ազգա-
յին պետություն, ինքնավար հանրապետությունը նույնպես ունի պետական իշ-
խանության իր բարձրագույն օրգանները, կառավարությունը, դատական գերա-
գույն մարմինը, սահմանադրությունը, տերիտորիան, քաղաքականությունը:

Ինքնավար հանրապետությունն ունի հատուկ իրավակորություններ և
պետական այնպիսի սուվերենություն, որ նրա տերիտորիան չի կարող փոփոխ-
վել առանց իր համաձայնության. ունի իր Գերագույն սովետի ընդունած սահ-
մանադրությունը, օրենսդրությունը, որոնք, սակայն, իրավական բնույթով տար-
բերվում են միութենական հանրապետությունից: Նա իրավունք չունի ազատա-
կամ դուրս գալու այն միութենական հանրապետության կազմից, որի մեջ ինքը
մտնում է. նրա ընդունած սահմանադրությունը պետք է հաստատվի միութենա-
կան հանրապետության կողմից, այնուհետև նա իրավասու չէ քաղաքացիու-
թյուն ընդունել, անմիջապես հարաբերություններ հաստատել օտար պետու-
թյունների հետ, ստեղծել իր հանրապետական կորամիավորումները և այլն:

Վերոհիշյալ սովետական սոցիալիստական ազգային պետությունների հետ
մեկտեղ, ՍՍՀՄ ավելի քան երեք տասնյակ ազգեր ու ազգություններ ստեղծել
են իրենց պետականությունը՝ ազգային մարզերի կամ ազգային օկրուգների
ձևով: Վերջիններիս ստեղծումն ակնառու վկայում է, որ մեր երկրի բոլոր ազ-
գերն ու ազգությունները ստացել են իրենց սովետական ազգային պետականու-
թյունը, պետական իշխանության իրենց օրգանները, որոնք կազմված են հիմ-
նական բնակչության ներկայացուցիչներից և գործում են տվյալ ժողովրդի մայ-
րենի լեզվով:

Ինքնավար մարզը, չլինելով սովետական ազգային պետություն, չունենա-
լով պետական իշխանության գերագույն օրգաններ կամ կառավարություն, օժտ-
ված չլինելով օրենսդրական և պետությանը հատուկ այլ իրավունքներով, այ-

նուամենայնիվ, իրավական բնույթով էապես տարբերվում է սովորական մյուս մարզերից: Առաջին հերթին, նա ազգային-պետական կազմավորում է, ունի այնպիսի լայն իրավունքներ, որոնք լիովին ապահովում են համապատասխան ազգությունների քաղաքական, տնտեսական և կուլտուրական ազատ զարգացումը, ինչպես նաև ինքնուրույն ներկայացուցչություն ունեն ՍՍՀՄ Գերագույն սովետում: Դա վկայում է պետական իշխանության ֆունկցիաներ իրականացնելու նրանց լիազորությունների մասին:

Ազգային օկրուգը նույնպիսի ազգային-պետական կազմավորում է, ինչպես և ինքնավար մարզը: Առաջին ազգային՝ Կոմի-Պերմի օկրուգը ստեղծվեց 1925 թվականին: Իրենց կազմավորման սկզբնական շրջանից նրանք էապես տարբերվել են սովորական վարչական օկրուգներից—Մուրմանսկի, Նարինսկի, Կամչատկայի, Սախալինի օկրուգներից: ՌՍՖՍՀ հյուսիսային մասերում դրանք միաժամանակ ազգային-պետական կազմավորումներ են: Այդ օկրուգներում, ինչպես նաև ինքնավար մարզերում պետական իշխանության օրգանները, դատարանն ու դատախազությունը, ինչպես նաև դպրոցը, մամուլը, կուլտուրական և հասարակական կազմակերպությունները գործում են համապատասխան ազգության լեզվով: Ազգային օկրուգը անմիջականորեն ներկայացված է ՍՍՀՄ Գերագույն սովետի ազգությունների սովետում մեկ դեպուտատով: Ազգային օկրուգներից ընտրված առանձին դեպուտատներ մտել են ՍՍՀՄ Գերագույն սովետի մշտական հանձնաժողովների կազմի մեջ:

Ինքնավար մարզի և ազգային օկրուգի նշանակությունը անհամեմատ մեծ է: Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը բարձր են գնահատում նրանց դերը կոմունիստական շինարարության մեջ: Վերջին տարիներին միութենական և ինքնավար հանրապետությունների իրավունքների ընդլայնման հետ մեկտեղ, մի շարք միջոցառումներ են իրականացվել նաև մարզերի ու ազգային օկրուգների իրավունքները տնտեսական ու սոցիալ-կուլտուրական բնագավառներում ընդլայնելու ուղղությամբ:

Ազգային պետականության վանազան ձևերի իրավական օրինադրական տարբերություններն ամենևին չեն հակասում լենինյան այն դրույթին, թե ամեն մի ազգ ունի պետական շինարարության, իր սեփական պետությունը կառուցելու իրավունք:

Մեր երկրի ազգերի և ազգությունների պետականության այս կամ այն ձևը, լինի այն միութենական, ինքնավար հանրապետություն, ինքնավար մարզ թե ազգային օկրուգ, չի նշանակում որևէ մեկին արտոնություն տալ, իսկ մյուսին զրկել: Բազմազգ պետության սովետական սիստեմը միանգամայն դեմոկրատական է ու հետևողականորեն կենսագործում է ազգերի սուվերենության, իրավահավասարության սկզբունքը:

Յուրաքանչյուր ազգ մեկ մոտ սուվերեն է, իրավունք ունի ընտրելու այն ձևը, որն ինքն անհրաժեշտ է գտնում: Սոցիալիստական ազգերն իրենց քաղաքականությունը կառուցում են գիտական հիմունքներով և ընտրում ազգային պետականության այն ձևը, որը համապատասխանում է պատմական զարգացման տվյալ էտապին, այսինքն՝ օբյեկտիվ պայմաններին: Պետք է հաշվի առնել տվյալ ազգի զարգացման ամեն մի էտապի յուրահատկությունները, նրա էկոնոմիկայի կամ մշակույթի զարգացման աստիճանը, որը փոփոխվում է: Այդ պատճառով մի շարք ինքնավար մարզեր (օրինակ, Մարիականը, Ուդմուրտականը, Չուվաշականը և այլն) վերակազմվեցին որպես ինքնավար, իսկ որոշ ինքնա-



վար հանրապետություններ (Ղազախականը, Կիրգիզականը և այլն) որպես միութենական հանրապետություններ:

Այդ վերակազմությունների, ինչպես նաև սովետական ազգային պետականության ամեն մի ձև ստեղծելու ժամանակ որոշիչ հանգամանքներ են տվյալ ազգի կամ ազգության ազատ արտահայտված կամքը, նրա հետագա ազգային-պետական զարգացման շահերը:

***

ՄԱՐՔՍ-լենինյան գիտությունը ելնում է սովետական պետության և ազգային պետականության սոցիալական բնույթի և խնդիրների միասնությունից: Այդ ընդհանրությունը պայմանավորում է նրանց գործողությունների միասնությունը: Արտադրություն, մշակույթ, դաստիարակչական աշխատանք—ահա սովետական ազգային պետականության գործունեության հիմնական կողմերը: Վերոհիշյալ ոլորտներում անընդմեջ զարգացում է տեղի ունենում, զարգանում են նաև հարաբերությունները սովետական մարդկանց և ազգությունների միջև: Այդ պրոցեսում ավելի ու ավելի մեծ դեր է խաղում սովետական ազգային պետականությունը: Մեր ազգային պետականությունը, ինչպես և «ամեն մի քաղաքական վերնաշենք ընդհանրապես (որն անխուսափելի է, քանի չի ավարտված դասակարգերի ոչնչացումը, քանի չի ստեղծվել անդասակարգ հասարակություն), վերջին հաշվով, ծառայում է արտադրությանը և, վերջին հաշվով, որոշվում է տվյալ հասարակության արտադրական հարաբերություններով» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 85) :

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, ստեղծելով պատմության մեջ մինչ այդ չտեսնված հասարակական ու պետական նոր, սովետական կարգ, միաժամանակ ճանապարհ հարթեց ամբողջ երկրի, այնտեղ ապրող բոլոր ազգերի ու ազգությունների տնտեսական ու սոցիալ-կուլտուրական առաջընթացի համար: Սովետական պետության ամենադժվարին ու բարդ խնդիրներից մեկն էր նախկինում ճնշված ազգերի տնտեսական ու կուլտուրական հետամնացության, ռուս ազգի համեմատությամբ նրանց փաստական անհավասարության վերացումը: Չնայած դժվարություններին, մեր պետությունը ո՛չ միայն վստահորեն իր առջև դրեց այդ խնդիրը, այլև իսկական հեղափոխություն իրականացրեց մեր երկրում ապրող ավելի քան հարյուր ազգերի ու ազգությունների տնտեսության մեջ, մշակույթում և ամբողջ կյանքում:

Ռուսաստանում բնակվող ազգերի ու ազգությունների տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը վերացնելու, գաղութակալության մնացորդներին վերջ տալու համար անհրաժեշտ էր ռուս պրոլետարիատի ծավալուն ու անշահախնդիր օգնությունը: Կուսակցության տասներորդ համագումարը, տալով վերոհիշյալ անհավասարության պատմական արմատների խոր վերլուծությունը, միաժամանակ նշեց, որ անհրաժեշտ է օգնել «ոչ վելիկոռուս ժողովուրդների աշխատավոր մասսաներին հասնելու առաջ անցած կենտրոնական Ռուսաստանին» (ՍՄԿԿ-ն բանաձևերում..., I մաս, էջ 599) :

Առաջնորդվելով այդ պատմական որոշումով, կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունը մշակեցին և իրականացրին նախկինում ճնշված ու հետամնաց ազգերին ու ազգություններին ցույց տրվող օգնու-

թյան վիթխարի մի ծրագիր: Դրա շնորհիվ հնարավոր եղավ վերացնել այն փաստական անհավասարությունը, որը Ռուսաստանի առանձին ժողովուրդների միջև ստեղծվել էր ցարիզմի և ռուսական բուրժուազիայի քաղաքականության հետևանքով:

Մեր երկրի ազգերի ու ազգությունների փաստական անհավասարության վերացումը պայմանավորված էր հենց սովետական իշխանության բնույթով: Առաջնորդվելով լենինյան ազգային քաղաքականությամբ, Ռուսաստանի պրոլետարիատն անշահախնդիր օգնություն ցույց տվեց նախկինում ճնշված ու հետամնաց ազգերին ու ազգություններին ոչ միայն նրանց ազգային պետականությունն ստեղծելու, այլև ավերված արդյունաբերական ձեռնարկությունները վերականգնելու և արդյունաբերության նոր ճյուղեր ստեղծելու գործում: Դա իսկական ինտերնացիոնալիզմի դրսևորում էր, որն իրավացիորեն գնահատվել է որպես ռուս պրոլետարիատի, ռուս ժողովրդի պատմական սխրագործություն:

Պրակտիկան ակնառու ցույց է տվել, որ մեր երկրում ազգերի ու ազգությունների իրավահավասարությունն ամենևին փրազ չէ, այլ ազգերի փաստական հավասարության վրա ամուր խարսխված ռեալություն: Այդ են վկայում թեկուզ Հայկական ՍՍՀ տնտեսական ու կուլտուրական նվաճումները: Ընդ որում, հանրապետության տնտեսական կարգացման տեմպերն ավելի բարձր էին, քան ռուսական շատ մարզերինը: Այսպես, Հայկական ՍՍՀ-ի համախառն արտադրանքը 1940 թվականից մինչև 1960 թվականը աճել է 7,9, իսկ ՌՍՖՍՀ-ինը՝ 4,9 անգամ: Դրա շնորհիվ էլ Հայաստանը դարձավ ՍՍՀՄ առաջավոր արդյունաբերական շրջաններից մեկը:

Հայաստանը, որն առաջներում ներմուծում էր գրեթե ամեն ինչ, անգամ լուցկի, այժմ ինքը Եվրոպայի, Ասիայի, Լատինական Ամերիկայի, Աֆրիկայի շուրջ 70 երկրներն է ուղարկում 150 տեսակի արտադրանք՝ մետաղահատ հաստոցներ, էլեկտրական մեքենաներ, կոմպրեսորներ, պոմպեր, էլեկտրոնային և ճշգրիտ սարքեր, քիմիական նյութեր և այլն: Մեր օրերի Հայաստանն անչափ առաջ է գնացել նախահեղափոխական շրջանի նույնիսկ ամենահամարձակ երազանքներից: Դաշնակ պարագլուխների իդեալն էր երկիրը դարձնել կապիտալիստական տերությունների հումքային բազա: Այսպես, դաշնակ գործիչներից մեկը՝ Ն. Աղբալյանը, գրում էր. «Մենք պետք է հումք արդյունահանենք և թող Եվրոպան այն վերամշակի: Քանի դեռ մենք հումք կարտադրենք, մենք միշտ էլ քաղաքակիրթ պետությունների հետ կլինենք, իսկ մենակ դա արդեն պատիվ է բերում մեզ»:

Աննախընթաց նվաճումներ ունեցավ Հայաստանը նաև մշակույթի բնագավառում: Ինչպես մյուս բոլոր միութենական հանրապետություններում, այնպես էլ Հայաստանում տեղի է ունեցել ծավալուն և խոր կուլտուրական հեղափոխություն:

Համանման տնտեսական ու կուլտուրական վերելք են ապրել նաև մյուս միութենական հանրապետությունները:

Կապիտալիզմը գժտություններ էր սերմանում ազգերի ու ազգությունների միջև, նրանց մեջ արմատավորում եսասիրություն, ազգային սահմանափակվածություն, նրանց զրկում մյուս ազգերի հետ շփվելու, նոր ազգային արժեքներ ձեռք բերելու հնարավորությունից: Հոկտեմբերյան հեղափոխությունն այնպիսի բանական ու արդարացի հարաբերությունների սիստեմ և քաղաքականություն



իրականացրեց ազգերի միջև, որը ոչ թե առանձնացնում, սահմանազատում է այդ ազգերին, այլ մերձեցնում է նրանց, համախմբում մեկ ընտանիքում:

Կոմունիստական կուսակցությունը և սովետական կառավարությունն ըստ ամենայնի զարգացրին ու խորացրին Հոկտեմբերի այդ ճիշտ քաղաքականությունն ու գաղափարները: Ամբողջ աշխարհին հայտնի են դրանց իրականացման զարմանահրաշ արդյունքները: Միութենական հանրապետությունների համատեղ ջանքերով կառուցվում ու շահագործման են հանձնվում գործարաններ ու ֆաբրիկաներ, երկաթուղիներ ու միասնական էներգասիստեմներ: Յուրաքանչյուր միութենական հանրապետություն իր արտադրանքը կամ կադրերը փոխանակում է այլ հանրապետությունների հետ: Այսպես, միութենական հանրապետությունների մեջ դժվար թե գտնվի այնպիսին, որն այս կամ այն կերպ չօգտագործի Հայաստանի արդյունաբերության արտադրանքը կամ նրա կադրերը: Իսկ Հայաստանն էլ, իր հերթին, ամեն կարգի օգնություն է ստանում եղբայրական հանրապետություններից:

Ծավալվում ու կատարելագործվում են ոչ միայն հանրապետությունների տնտեսական կապերը, այլև նրանց համագործակցությունը գիտության, մշակույթի, արվեստի բնագավառում: Տեղի է ունենում հոգևոր արժեքների լայն փոխանակում: Մեր երկրի բոլոր ազգերն ու ազգություններն իրենց ավանդն են մուծում Սովետական Հայաստանի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման գործում: Հայ ժողովուրդն էլ իր հերթին ուրախանում է մյուս ազգային հանրապետությունների, մարզերի, յուրաքանչյուր ազգային օկրուգի հաջողություններով: «Փոխադարձ հաջողության նկատմամբ սովետական ազգերի ջերմ շահագրգռվածությունը,— ասաց Լ. Ի. Բրեժնևը,—օրինաչափ արտահայտությունն է այն փաստի, որ նրանք բոլորն ունեն մեկ ընդհանուր գործ, ընդհանուր իղձեր ու հույսեր, նպատակներ ու ձգտումներ»:

Միութենական հանրապետությունների բազմակողմանի կապերի հետագա խորացման ու ընդլայնման խնդիրներին մեծ ուշադրություն նվիրեց ՍՄԿԿ XXIII համագումարը: Այդ խնդիրների հետևողական իրականացումը մեծ դեր է խաղում ՍՍՀՄ ազգերի ու ազգությունների հետագա մերձեցման, նրանց տնտեսական ու գաղափարական ընդհանրության, ինչպես նաև հոգևոր կապերի ընդհանուր գծերի զարգացման գործում:

Սովետական Միության մեջ, Հոկտեմբերյան դրոշի ներքո, տեղի է ունենում սովետական ազգերի ծաղկման ու մերձեցման մեծ պրոցեսը, որն ավելի է կատարելագործում նրանց պետականությունը և ավելի մոտեցնում մեր երկիրը կոմունիզմի վսեմ բարձունքներին:



# ԱՐՄԱՏԱԿԱՆ ՎԵՐԱՓՈԽՈՒՄՆԵՐ ԳՅՈՒՂՈՒՄ

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

ՀԱՅ գյուղը շատ հին, դարերի խորքից եկող պատմություն ունի: Այն նույնքան հին է, որքան հայ ժողովուրդը: Նրանց անցած ուղին, ճակատագիրը մեկ են, որովհետև ժողովուրդը հիմնականում ապրել է գյուղում, կապվել մայր հողի հետ և նրանով պահպանել իր գոյությունը:

Դա հեշտ չի եղել մանր, փոշիացած ու հետամնաց տնտեսություն վարող բազմաչարչար գյուղացու համար: Նա քրտնաթոր աշխատանք է թափել հողի վրա, տանջանքների գնով դաշտերից քարեր է հավաքել, կոճղեր հանել, մացառներ մաքրել, թմբեր հարթել, թիզ առ թիզ վարելահողն ընդարձակել ու չարչարանքով մշակել: Ծանր է եղել հատկապես լեռնային շրջաններում բնակվող շինականի վիճակը. քիչ բերրի վարելահողեր ունենալով հանդերձ, նա հաճախ տուժել է բնական աղետներից և, առանձնապես, երաշտից:

Դժվար է եղել աշխատավոր գյուղացու դրությունը, նրա տնտեսական վիճակը: Դրա պատճառը, իհարկե, միայն սակավահողությունն ու բնական անբարենպաստ պայմանները չեն, որովհետև այդ պայմաններում անգամ սերնդիցսերունդ փորձված հայ գյուղացին իր ջանասեր աշխատանքով քիչ բարիքներ չէր արտադրում: Բայց նա իր արտադրած բարիքների միակ տնօրինողը չէր: Պետությունը, ինչպես և իշխաններն ու վաշխառուները տզրուկի պես ծծում էին չարքաշ գյուղացու արյունը, խլում ու կողոպտում նրա աշխատանքի վաստակը, երբեմն ամբողջ ունեցվածքը:

Իրենց թիկունքում ունենալով պետությունն ու նրա վարչական օրգանները, գյուղի տերերը՝ Գրիգոր աղաներն ու միկիտան սաքոները ոչ միայն բացարձակ կերպով խաբում և թալանում էին անգրագետ ու անօգնական գյուղացիներին, այլև ուզած պահին քանդում նրանց օջախները, ցանկացած մարդուն բանտ նստեցնում, շղթայակապ Սիբիր ուղարկում կամ էլ ֆիզիկապես ոչնչացնում: Ստեղծված անտանելի դրությունից դուրս գալու համար գյուղացին դիմում էր տարբեր միջոցների: Բայց հաճախ նա կանգնում էր կոտրած տաշտակի առաջ և, տեղում չունենալով ոչ մի հնարավորություն, ճարահատյալ թողնում էր հայրենի գյուղը, հարազատ ընտանիքը: Պանդուխտի ցուպը ձեռքին նա գնում էր քաղաք, խտացնում պրոլետարների շարքերը և աշխատանք որոնում բուրժուաների մոտ: Վերջիններս, իհարկե, նրան պակաս չէին կեղեքում, քան գյուղի ցեցերը:



Այդպես էր ժամանակը, այդպես էր օրենքը. ի՞նչ կարող էր անել անպաշտպան գյուղացին, որին կյանքում ծանր աշխատանքն ու դառնությունն էր բաժին ընկել: Այդ ամենը լավ է նկատել գյուղացու ցավերի երգիչ, մեր մեծ բանաստեղծ Հովհաննես Թումանյանը, որի նշանավոր «Գութանի երգը» բանաստեղծության մեջ աշխատավոր հողագործը գանգատվում է իր ծանր վիճակից, սրտի մորմոքով ասում.

Էն օրն եկան թովչի արին,
Հարկ են ուզում տերության.
Ի՞նչ տամ կոռին ու բեգյարին...
Վարի՛, վարի՛, իմ գութան:

Ջերս պակաս, ուժըս հատած,
Հազար ու մի ցավի տեր,
Ինձ են նայում մերկ ու սոված
Մի տուն լիքը մանուկներ:

Դառն փորձություններին միշտ դիմացող աշխատավոր հայ գյուղացին այդպիսի տառապանքներով պահպանելով իր գոյությունը, միշտ էլ երազել է լավ օրվա մասին: Բայց նրա երազանքը մնացել է սոսկ երազանք, որովհետև իր պետականությունը կորցրած գյուղացիական Հայաստանը կողոպտվում, ավերվում էր ոչ միայն ներքին կեղեքիչների, այլև արտաքին զավթիչների կողմից:

Հայ գյուղի ողբերգական վիճակն ավելի սաստկացավ դաշնակցության անփառունակ տիրապետության ժամանակաշրջանում: Այդ են ցույց տալիս փաստերը: Այսպես. եթե Հայաստանի ներկա տերիտորիայում 1913 թվականին գյուղատնտեսական կուլտուրաների ամբողջ ցանքատարածությունը եղել է 345,7 հազար հեկտար, ապա հետագայում՝ 1919 թվականին, կրճատվելով հասել է 82,7 հազար հեկտարի: Այդ նույն ժամանակամիջոցում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը պակասել էր 3 անգամ, քայքայվել էր ոռոգման սիստեմը, խիստ ընկել բերքատվությունը, խոպան էր մնացել մշակվող հողերի մեծ մասը:

Անցնելով իշխանության գլուխ, դաշնակցականներն անձեռնմխելի թողեցին կալվածատիրական ու վանքապատկան հողերը: Ավելին, նրանց ուղղակի թողտվությամբ կուլակներն սկսեցին զավթել գյուղացիներին պատկանող առանց այն էլ քիչ հողերը: Փաստորեն աշխատավոր գյուղացին զրկվում էր ապրուստի վերջին միջոցից. գնալով խիստ պակասում էր գյուղատնտեսական մթերքների արտադրությունը: Բավական է նշել, որ Հայաստանում գյուղատնտեսական մթերքների ընդհանուր արտադրանքը 1920 թվականին 5 անգամ պակաս էր, քան 1913 թվականին, իսկ անասունների գլխաքանակը պակասել էր գրեթե 4 անգամ:

Այս ամենի հետևանքով գյուղում ծայր առավ համատարած սովը: Մի կողմից սովն ու համաճարակը, մյուս կողմից սանձարձակ թուրքական հորդաները վերջնականապես կամայացնեին Հայաստանն ու նրա հազարամյա գյուղերը, եթե չճառագեր հյուսիսի ազատարար արևը՝ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը լիակատար ազատություն բերեց ցարական կառա-

վարության լծի տակ հեծող բոլոր ժողովուրդներին, այդ թվում և բազմաչարչար հայ ժողովրդին:

Վերացնելով կալվածատերերի ու կապիտալիստների տիրապետությունը, խորտակելով շահագործողական անարդարացի կարգը, ապստամբ Հոկտեմբերը պատմության մեջ առաջին անգամ ամբողջ իշխանությունը տվեց բանվորներին ու գյուղացիներին: Դրանով սկսվեց աշխատավորների տիրապետության դարաշրջանը, որն արմատական փոփոխություններ առաջացրեց ժողովրդական մասսաների ոչ միայն տնտեսական, այլև քաղաքական կյանքի բոլոր բնագավառներում:

## ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ՇՈՂԵՐՈՎ

ՎԼԱԴԻՄԻՐ Իլյիչ Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցության անմիջական ղեկավարությամբ հաղթանակած Հոկտեմբերն էր միայն, որ լիակատար պայմաններ ու հնարավորություններ ստեղծեց մեր երկրի բազմազգ ժողովրդի նվիրական ձգտումների իրականացման համար: Նա էր, որ ընդմիշտ վերջ տվեց բազմամիլիոն ընչազուրկ գյուղացիության և, հատկապես, ծայր աստիճանի քայքայման հասած մեր հանրապետության գյուղացիության անասելի տառապանքին, նրան բերեց նոր, ազատ ու բախտավոր կյանք, ապահովեց հայ գյուղի վերածնունդը:

Հայաստանի աշխատավոր գյուղացիությունն իր բախտը կապելով Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հետ, հասավ իր դարավոր բաղձանքի՝ հողային հարցի արդարացի լուծմանը: Սովետական իշխանության հաստատումից մեկ ամիս հետո, 1920 թվականի դեկտեմբերի 28-ին հրապարակվեց Հայաստանի հեղկոմի դեկրետը հողի ազգայնացման մասին: Այդ դեկրետով ազգայնացվեց 1,5 միլիոն հեկտար հող:

Հայ գյուղացին մեծ բերկրանք ապրեց հող ստանալով: Բայց հողը մշակելու համար նա համապատասխան միջոցներ չուներ. պակասում էին գյուղատնտեսական գործիքներ, չկային սերմացու, բանող անասուններ և այլն: Հաշվի առնելով անցյալից ժառանգած այդ ծանր իրադրությունը, նորաստեղծ սովետական իշխանությունը ոչինչ չխնայեց և իր տրամադրության տակ ունեցած սուղ միջոցներով աշխատավոր գյուղացիությանը տրամադրեց սերմվարկ, գյուղատնտեսական գործիքներ, օգնեց դրամով և այլն: Այդ և մյուս միջոցառումների կենսագործման շնորհիվ բազմատանջ հայ գյուղացին սկսեց աստիճանաբար ոտքի կանգնել, կարգավորել ու վերականգնել իր քայքայված տնտեսությունը, շունչ ու կենդանություն տալ դաշտերին ու այգիներին:

Սակայն կատարված այդ առաջին քայլերը դեռևս բավարար չէին գյուղատնտեսության դարավոր հետամնացությունը հաղթահարելու համար: Դրան խանգարում էր գյուղացիական հետամնաց, անհատական տնտեսությունը, ապրանքային մանր արտադրությունը: Ահա թե ինչու կոմունիստական կուսակցությունը, Վ. Ի. Լենինը խնդիր էին դնում, որ սոցիալիստական հեղափոխությունը պետք է շարունակել մինչև վերջ, երկրի ինդուստրացման բազայի վրա գյուղը տեղափոխել սոցիալիստական ռելսերի վրա՝ մանր, փոշիացած գյուղացիական տնտեսություններից կազմակերպելով կոլեկտիվ խոշոր տնտեսություններ, որոնք գյուղացիությանը վերջնականապես դուրս կբերեն տնտեսական կարիքից, նրա



համար կապահովեն բարեկեցիկ կյանք և հիմք կհանդիսանան նոր, կոմունիստական հասարակարգի կառուցմանը:

Ուղեցույց ունենալով Լենինի *կոոպերատիվ պլանը*, ինչպես Սովետական Միության, այնպես էլ հանրապետության աշխատավոր գյուղացիությունը մեր պանծալի բանվոր դասակարգի օգնությամբ միավորվեց կոլեկտիվ խոշոր տնտեսություններում: Դա, ինչ խոսք, հասարակական մի բարդ, դժվարին ու արմատական վերափոխում էր, որը բախտորոշ նշանակություն ունեցավ գյուղացու համար:

Վերածնված հայ գյուղը կոլտնտեսային կարգի հաղթանակի շնորհիվ արագ թափով առաջ գնաց տնտեսապես ու կուլտուրապես և պատմական ամենակարճ ժամանակամիջոցում կարգացման այնպիսի բարձր աստիճանի հասավ, որպիսին չէր տեսել ու չէր էլ կարող տեսնել իր հազարամյա պատմության ընթացքում: Մենք իրավամբ հպարտանում ենք այսօրվա գյուղի կարգացման բարձր աստիճանով, բոլոր բնագավառներում նրա ձեռք բերած մեծագույն նվաճումներով:

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՎԵՐԵԼՔԸ

ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ գյուղի ամենամեծ նվաճումը նրա տնտեսական վերելքն է, որը հնարավոր դարձավ նոր հիմունքներով արտադրության կազմակերպման ու կատարելագործման, նորագույն տեխնիկայի ու գիտության նվաճումների օգտագործման, հողագործների կոմունիստական դաստիարակության և ստեղծագործական ակտիվության բարձրացման շնորհիվ:

Միավորվելով կոլեկտիվ խոշոր տնտեսություններում, երեկվա մենատնտես գյուղացին ստացավ նյութական ամուր բազա. նա արորը փոխարինեց տրակտորով, սայլը՝ ավտոմեքենայով, կամը՝ կալսիչով, գերանդին՝ կոմբայնով: Իրականացավ հանճարեղ Լենինի երազանքը՝ անգամ հեռավոր Հայաստանի գյուղերում գյուղացին սովորեց տրակտոր վարել: Մենք ուրախությամբ ենք նշում այն, որ վերածնված Սովետական Հայաստանի գյուղատնտեսական արտադրության մեջ այսօր գործում են շուրջ 14 հազար տրակտոր (15 ձիաուժի հաշվով), 7500 ավտոմեքենա, 1600 հացահատիկային կոմբայն, մեծ քանակությամբ ունիվերսալ բեռնիչներ, կուլտիվատորներ, շարքացաններ և գյուղատնտեսական այլ մեքենաներ ու գործիքներ, որոնք, մի կողմից, խոշոր չափով թեթևացրել են գյուղացու գործը, կրճատել ձեռքի ծանր աշխատանքը, մյուս կողմից՝ բարձրացրել աշխատանքի արտադրողականությունը, որոշակիորեն բարելավել հողամշակության կուլտուրան:

Տարեցտարի բարձրանում է հանրապետության կոլտնտեսությունների ու սովխոզների էներգազինվածությունը, որը հնարավորություն է ընձեռում ընդարձակելու գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման ծավալը: Բավական է նշել, որ 1964 թվականին հանրապետության կոլտնտեսություններում եգիպտացորենի միջշարային տարածությունների մշակումը մեքենայացված էր 71, շաքարի ճակնդեղինը՝ 59, բանջարեղենինը՝ 27, հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը՝ 71, սիլոսային կուլտուրաներինը՝ 42 և խոտհնձինը՝ 27

տոկոսով: Նորագույն տեխնիկայի հմուտ օգտագործման շնորհիվ մեր բազմաթիվ կոլտնտեսություններում վարը, ցանքը և հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը ամբողջապես մեքենայացված է: Էլեկտրաէներգիայի օգտագործման շնորհիվ որոշակի գործ է կատարված նաև անասնապահական ֆերմաներում և արհեստանոցներում աշխատատար պրոցեսների մեքենայացման ուղղությամբ:

Գյուղատնտեսական տեխնիկան, արմատապես փոխելով արտադրության վարման ձևերը և գյուղատնտեսական աշխատանքը վերածելով ինդուստրիալ աշխատանքի տարատեսակի, միաժամանակ հսկայական դեր խաղաց բուն գյուղացիության որակական կազմի փոփոխության ասպարեզում: Գյուղում վճռական դեմք են դարձել տրակտորիստը, կոմբայնավարը, մեխանիկը, ավտովարորդը, մեքենավարը, մարդիկ, որոնք ըստ էության ունեն ինդուստրիալ պրոֆեսիա: Վիճակագրական տվյալների համաձայն, առ մեկը ապրիլի 1965 թվականի հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում աշխատում էին 13,7 հազար տրակտորիստ-մեքենավարներ, տրակտորիստներ, կոմբայնավարներ և ավտովարորդներ:

Գյուղատնտեսության մեխանիզատորների շարքերն ամեն տարի համալրվում են ութնամյա և միջնակարգ կրթությամբ երիտասարդներով: Դրանց թիվն առաջիկայում ավելի կմեծանա, որովհետև ընթացիկ հնգամյակում հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները ստանալու են 8000 տրակտոր, ավելի քան 1300 հացահատիկային կոմբայն, 5600 բեռնատար ավտոմեքենա և գյուղատնտեսական այլ մեքենաներ:

Սովետահայ գյուղն այսօր հարուստ է ո՛չ միայն մեխանիզատորական, այլև միջնակարգ ու բարձրագույն կրթությամբ մասնագետ կադրերով: Ներկայումս մեր կոլտնտեսություններում, սովխոզներում և գյուղատնտեսական այլ հիմնարկներում աշխատում են 4.214 բարձրագույն և 4.105 միջնակարգ մասնագիտական կրթությամբ մարդիկ:

Գյուղի համար մասնագետ կադրերի պատրաստումը շարունակվում է չթուլացող թափով: Հանրապետության գյուղատնտեսական 10 տեխնիկումները տարեկան տալիս են միջնակարգ կրթությամբ ավելի քան 700, իսկ ինստիտուտները՝ բարձրագույն կրթությամբ մոտ 500 մասնագետներ: Դրանք գիտության նորագույն նվաճումներով զինված գյուղատնտեսներ, ագրոտեխնիկներ, կոոտեխնիկներ, անասնաբույժներ, բուժակներ, մեխանիկ-ինժեներներ և այլ մասնագետներ են, որոնք մեծ մասամբ աշխատում են բուն արտադրության մեջ:

1921 թվականի ապրիլի 14-ին «Ադրբեջանի, Վրաստանի, Հայաստանի, Դաղստանի, Լեռնականների հանրապետությունների կոմունիստ ընկերներին» ուղարկած իր պատմական նամակում Վ. Ի. Լենինը խորհուրդ է տալիս «...բոլոր ուժերով զարգացնել հարուստ երկրի արտադրողական ուժերը, սպիտակ ածուխը, ոռոգումը: Ոռոգումը հատկապես կարևոր է հողագործությունն ու անասնապահությունը ինչ գնով էլ լինի բարձրացնելու համար»:

Նույն նամակում, խոսելով գյուղացիներին ցույց տրվող օգնության մասին, առաջնորդը գրում է. «Իսկույն աշխատել բարելավել գյուղացիների դրությունը և սկսել էլեկտրիֆիկացիայի, ոռոգման խոշոր աշխատանքներ: Ոռոգումն ամենից ավելի պետք է և ամենից ավելի կվերստեղծի երկիրը, կվերածնի նրան, կթաղի անցյալը, կամրապնդի անցումը դեպի սոցիալիզմ» (Երկ., հ. 32, էջ 403—404):



Անշեղորեն կենսագործելով առաջնորդի ցուցումները, մեր հանրապետության կուսակցական կազմակերպությունները, սովետական օրգանները, ամբողջ ժողովուրդը միասնական ուժերով խոշոր աշխատանք կատարեցին ոռոգման ցանցի ընդարձակման ուղղությամբ: Ակնառու են այդ բնագավառում ձեռք բերված հաջողությունները: Այդ առումով հարկ է նշել, որ լեռնային մի այնպիսի հանրապետությունում, ինչպիսին Հայաստանն է, ոռոգման ցանցի ընդարձակումը որոշակի դժվարություն է հարուցում (պահանջում ավելի շատ միջոցներ, տեխնիկա և սարքավորումներ): Եղած դժվարությունը հաղթահարելու համար ձեռնարկվել ու ձեռնարկվում են լուրջ միջոցներ: Բավական է ասել, որ սովետական իշխանության տարիներին ջրաշինարարության մեջ ներդրվել է 140 միլիոն ռուբլի: Պետության միջոցներով կառուցվել ու գործում են Շիրակի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Ներքին-Հրազդանի, Թալինի (առաջին հերթ), Կոտայքի, Արզնի-Շամիրամի (առաջին հերթ) ջրանցքները, ինչպես և մի քանի ջրամբարներ, պոմպակայաններ և այլն: Այդ ամենի շնորհիվ 1920 թվականի 60.000 հեկտարի փոխարեն 1965 թվականին հանրապետությունում արդեն ոռոգվում էր 263.000 հեկտար հողատարածություն: Միայն յոթնամյակի ընթացքում ոռոգվող հողատարածությունն ընդարձակվել է 52.000 հեկտարով և ջրարբիացվել է 141.000 հեկտար արոտավայր:

Հանրապետությունում ջրաշինարարական աշխատանքները լայն ծավալ են ստացել ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1965 թ.) պլենումի որոշումից հետո: Այժմ հանրապետությունում կառուցվում են 27 ջրանցք, ջրհան կայան ու ջրամբար: Այդ և մյուս միջոցառումների շնորհիվ ջրարբի հողերը ընթացիկ հնգամյակում կավելանան 80.000 հեկտարով:

Կենսագործելով Լենինի ցուցումները, սովետական իշխանությունն անցած տարիներին հետևողական աշխատանք ծավալեց նաև Հայաստանի գյուղերի լուսավորման բնագավառում և այսօր մեր հանրապետության բոլոր բնակավայրերում, լինեն հարթավայրերում թե բարձրաբերձ լեռների գրկում, պայծառորեն վառվում են Իլյիչի լամպերը: Սակայն էլեկտրաէներգիան միայն լուսավորության համար չէ. այն միաժամանակ օգտագործվում է նաև կոլտնտեսային ու սովխոզային արտադրության մեջ:

Կոմունիստական կուսակցության ու սովետական իշխանության ամենօրյա հոգատարության շնորհիվ Հայաստանի երբեմնի հետամնաց ու քայքայված գյուղատնտեսությունը զարգացել և հասել է նշանակալից հաջողությունների: Այդ են ցույց տալիս փաստերը: Այսպես. հանրապետությունում գյուղատնտեսական կուլտուրաների ցանքատարածությունները 1965 թվականին հասան 415 հազար հեկտարի, 1913 թվականի 346 հազարի փոխարեն: Այդ նույն ժամանակաշրջանում տեխնիկական և բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքատարածություններն ավելացան 2,2 անգամ, իսկ կերային կուլտուրաներինը՝ 4,4 հազարից հասան 120 հազար հեկտարի: 1913 թվականի համեմատությամբ, 1965 թվականին, խաղողի այգիներն ավելացան 9000 հեկտարով և հասան 35.000 հեկտարի, իսկ մրգերինը՝ 4,5 հազարից՝ 34.000 հեկտարի (դրանց որոշ մասը նորատունկ են և բերք կտան առաջիկայում):

Բանը, իհարկե, միայն ցանքատարածությունների ավելացումը չէ: Առաջավոր ագրոտեխնիկա կիրառելու, ոռոգման ցանցն ընդարձակելու և հանքային պարարտանյութեր օգտագործելու միջոցով զգալի չափով ավելացել է նաև հանրապետության գյուղատնտեսության ընդհանուր համախառն արտադրանքը:





Օրինակ, 1965 թվականին, 1913 թվականի համեմատությամբ, հանրապետությունում խաղողի և մրգերի համախառն արտադրանքն ավելացել է 3, կարտոֆիլինը՝ համարյա 4 անգամ, իսկ ծխախոտի հումքի արտադրանքը 0,7 հազար ցենտներից հասել է մինչև 134.000 ցենտների: Չնայած այն հանգամանքին, որ տվյալ ժամանակաշրջանում հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունը կրճատվել է, բայց բերքատվության բարձրացման շնորհիվ հացահատիկի համախառն բերքն ավելացել է 1,5 անգամ:

Հարկ է նշել, որ Կամոյի, Հոկտեմբերյանի, Արտաշատի, Սիսիանի, Թալինի, Իջևանի և մյուս շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների բազմաթիվ առաջավորներ պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով: Նրանցից մոտ 170 հոգի գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության ու անասնապահության մթերատվության բարձրացման բնագավառում առավել աչքի ընկնող հաջողությունների հասնելու համար արժանացել են սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչման:

Կան գյուղատնտեսական կուլտուրաներ, ինչպես՝ շաքարի ճակնդեղն ու գերանը, որոնք նախասովետական Հայաստանում չեն մշակվել: Այժմ հանրապետության շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ հաջողությամբ մշակում են այդ կուլտուրաները, որոնք մեծ եկամուտ են տալիս և շահութաբեր են:

Ուրախալի մի երևույթ ևս: Լեռնային շրջանների (Մարտունի, Բասարգեչար, Կամո և այլն) բազմաթիվ գյուղերում աշխատավորների սեղանը զարդարվում է տեղում աճեցրած քաղցրահամ խնձորով, տանձով, ինչպես նաև վարունգով, կանաչ պոմիդորով և այլն, որոնց մշակությունը սկսվել է միայն վերջին ժամանակներում:

Այսօրվա Հայաստանի գյուղի տնտեսական հաջողությունները ակնբախ են: Դրանք առավել նշանակալից կլինեն վաղը, որի համար կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունը ստեղծել են բոլոր պայմանները:

## ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԾԱՂԿՈՒՄԸ

ՆԱԽԱՍՈՎԵՏԱԿԱՆ հայ գյուղում հազվագյուտ երևույթ էր բարձրագույն կրթությամբ որևէ մասնագետի առկայությունը: Հազվագյուտ երևույթ էր նաև այն, թե տասնյակ հազարավոր երիտասարդներից ում կվիճակվի բարձրագույն կրթություն ստանալ: Այս գործում, բնականաբար, բախտը ընչազուրկ գյուղացիների կավակներին չէր ժպտում (խոսքը բարեգործական նպատակով ուսման ուղարկված հատ ու կենտ պատանիների մասին չէ), նրանք միջոցներ չունեին Հայաստանից դուրս գալու և որևէ երկրի համալսարաններից մեկում սովորելու: Ասպարեզը մնում էր ունևոր դասակարգի զավակներին: Սակայն սրանցից շատերը չէ, որ ուսման ձգտում ունեին կամ էլ բարձրագույն կրթություն ստանալով, ծառայում էին գյուղի աշխատավորներին: Գյուղի լուսավորությունը հիմնականում գտնվում էր խավարամոլ տեր-թոդիկների ու մոսիների ձեռքում, որոնք ավելի շատ խոշտանգում, քան տարրական գրագիտություն էին տալիս ուսման ծարավ մանուկներին: Գյուղը փաստորեն խարխափում էր տգիտության, խավարի ու համատարած անգրագիտության մեջ, որը, ինչ խոսք, ձեռնտու էր ինչպես ցարական կառավարությանը, այնպես էլ ներքին շահագործող դասակարգերին:



Միայն ավատարար Հոկտեմբերն էր, որ վերջ տվեց դրան: Կուլտուրական հեղափոխությունն ընդգրկեց նաև գյուղը: Ամենուրեք բացվեցին դպրոցներ, իսկ մեծահասակների անգրագիտության վերացման համար՝ լիկկայաններ: Շատ չանցած սովետահայ գյուղում վերացավ անգրագիտությունը, անցյալից ժառանգություն մնացած այդ ահավոր հետամնացությունը:

Գյուղում մատաղ սերնդի ուսուցման ու դաստիարակության գործն իր արժանի բարձրության վրա դնելու, կրթված ու բազմակողմանիորեն զարգացած քաղաքացիներ պատրաստելու համար սովետական կառավարությունը ոչ մի բան չի խնայում: Նրա հատկացրած միջոցներով բոլոր գյուղերում կառուցված են դպրոցական բազմահարկ շենքեր, որոնք կահավորված դասասենյակների հետ միասին ունեն ֆիզիկայի, քիմիայի, բնագիտության, աշխարհագրության կաբինետներ, ֆիզկուլտ դահլիճներ, հրապարակներ և այլ հարմարություններ:

Հանրապետության գյուղական 909 դպրոցներում ներկայումս սովորում են 248.889 երեխա, որոնց հետ պարապում են բարձրագույն և միջնակարգ մանկավարժական կրթությամբ 14.491 ուսուցիչներ: Խոշոր գյուղերից շատերն ունեն երկու դպրոց: Մեր բոլոր գյուղերում հաջողությամբ իրագործվում է պարտադիր ուսուցումը:

Ուրախալի երևույթ է գյուղական վայրերում երկարօրյա առաջին դպրոցների բացումը: 1964/1965 ուսումնական տարում հանրապետության գյուղական վայրերում այդպիսի դպրոցների թիվը հասնում էր 14-ի, որից 9-ն ութնամյա, իսկ 5-ը միջնակարգ դպրոցներ էին: Այդ դպրոցներն ունեին երկարօրյա 84 խումբ՝ 2792 աշակերտով: Դրանք նոր երևույթ են մեր գյուղում և ունեն մեծ ապագա: Կյանքի հրամայական պահանջով գյուղում ևս այդպիսի դպրոցները լայն զարգացում կստանան, որով պատանեկության ուսման ու դաստիարակության գործը կդրվի ավելի բարձր աստիճանի վրա:

Ամեն տարի մենք ականատես ենք լինում մի երևույթի, որը գյուղի կուլտուրական մեծ աճի վառ վկայություններից է. դա գյուղական միջնակարգ դպրոցներն ավարտած երիտասարդների հոսքն է դեպի բարձրագույն ուսումնական հաստատությունները: Միայն 1966—1967 ուսումնական տարում հանրապետության գյուղական երիտասարդներից պետական համալսարանի ստացիոնար և հեռակա բաժիններն են ընդունվել 483, բժշկական ինստիտուտը՝ 248, գյուղատնտեսական ինստիտուտը՝ 389, մանկավարժական ինստիտուտը 346 հոգի և այլն:

Ուսման, այն էլ ձրի ուսման այսպիսի փաստեր դուք չեք գտնի կապիտալիստական ամենազարգացած երկրներում: Բայց միայն դա չէ: Հայ գյուղը խոշոր հաջողությունների է հասել նաև կուլտուրայի զարգացման բնագավառում: Մտեք ցանկացած գյուղը և դուք այնտեղ կտեսնեք ակումբ, գրադարան, կինո, ռադիո, գրախանութ, միութենական ու հանրապետական տարբեր թերթեր, ամսագրեր: Այդ բոլորը ծառայում են կոլտնտեսային աշխատավորությանը: Նրանք, իհարկե, միայն դրանով չեն սահմանափակվում: Նրանց հաճախ կարելի է տեսնել քաղաքական ու գիտական թեմաներով կազմակերպվող դասախոսություններին, հարց ու պատասխանի, ինչպես նաև նշանավոր մարդկանց հետ հանդիպումների երեկոներին, քաղխմբակների, երբեմն էլ մասնագիտական կարճատև դասընթացների պարապմունքներին:

Տարբեր միջոցառումների անցկացման ժամանակ գյուղի մարդիկ միայն

դիտողի դերում չէ, որ հանդես են գալիս: Հաճախ նրանք են նախաձեռնում ու անցկացնում այս կամ այն միջոցառումը, ղեկավարում գեղարվեստական ինքնագործ խմբերը կամ մասնակցում նրա ելույթներին: Այդ խմբերից քչերը չեն, որ իրենց գեղարվեստական վարպետությամբ և կատարման կուլտուրայով հիացմունք են պատճառում, հաջողությամբ հանդես գալիս հանրապետական ու միութենական օլիմպիադաներին: Մի՞թե Թալինի շրջանի Աշնակ գյուղի ժողովրդական պարի ինքնագործ խմբակը դրա ապացույցը չէ, խումբ, որը սասունցիների կրակոտ պարով հանդես եկավ նաև Մոսկվայում և մեծ հաճույք պատճառեց նրա խստապահանջ հանդիսատեսին:

Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվել է գյուղի բնակչության որակական կազմը: Գյուղատնտեսության մեխանիզատորներից բացի, գյուղում աշխատում է բժիշկների, մանկավարժների, գյուղատնտեսների, կոոտեխնիկների, ինժեներների և բարձրագույն կրթության տեր այլ մասնագետների մի ստվար ջոկատ: Դա գիտությամբ պինված և ստեղծագործական խիզախումներով լի գյուղական մտավորականությունն է, որն անգնահատելի ծառայություն է մատուցում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և նոր մարդու դաստիարակման գործին:

Գյուղական ինտելիգենցիան մեծ թիվ է կազմում և դրսևորում է մեր ժողովրդի կարգացման բարձր աստիճանը: Այսպես, Ալավերդու շրջանի Ուզունլար գյուղում աշխատում են ավելի քան 220 մտավորականներ, որոնցից 75-ը բարձրագույն կրթությամբ ուսուցիչներ, բժիշկներ և գյուղատնտեսության մասնագետներ են: Նման օրինակներ կարելի է բերել Կամոյի շրջանի Սարուխան, Նորադուզ, Կարմիր, Մարտունու շրջանի Լիճք, Վարդենիկ, Բասարգեչարի շրջանի Զոդ, Կարճաղբյուր, Արտաշատի շրջանի Այգեզարդ, Վեդիի շրջանի Արմաշ, Գորիսի շրջանի Խնձորեսկ, Տեղ, Հոկտեմբերյանի շրջանի Արմավիր, Բամբակաշատ, Մրգաշատ գյուղերից և այլն:

## ԱՊԱՀՈՎ և ԱՌՈՂՋ ԿՅԱՆՔ



ԺՎԱՐ չէ պատկերացնել, թե ինչպիսի կործանարար ողբերգության առջև կկանգներ տառապյալ հայ ժողովուրդը, եթե նրան չհասներ Հոկտեմբերի փրկարար ձեռքը, այն Հոկտեմբերի, որն ազատության հետ միասին ժողովրդին պարգևեց ապահով կյանք:

Վայելելով Հոկտեմբերի բարիքները, Հայաստանի աշխատավոր գյուղացիությունն աստիճանաբար հաղթահարեց երբեմնի թշվառությունը: Գյուղում սկսվեց պակասել, իսկ կոլտնտեսային կարգերի հաղթանակից հետո վերացավ չքավորությունը: Գործելով մեքենայացված հանրային արտադրության մեջ, հավասար իրավունք ունենալով արտադրամիջոցների նկատմամբ, գյուղացին աշխատեց նոր եռանդով և բազմապատկեց հանրային ունեցվածքը, բոլոր կոլտնտեսականների բարօրության հիմնական աղբյուրը: Մենատնտես գյուղացիների համեմատությամբ, կոլտնտեսականների եկամուտներն ավելացան մի քանի անգամ, նրանց համար ստեղծվեց բարեկեցիկ կյանք:

Այժմ, երբ մեր ողջ ժողովուրդը թևակոխել է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը, կոմունիստական կուսակցությունն ու սովետական կառավարությունն առավել մեծ ուշադրություն են նվիրում կոլտնտեսականների



նյութական բարեկեցության բարձրացմանը: Մենք նկատի ունենք կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրությունը:

Վարձատրության այս նոր կարգը, որն իրականացվում է պետության անմիջական օգնությամբ, զգալիորեն նպաստում է կոլտնտեսականների եկամուտների ավելացմանը և նրանց կյանքի պայմանների առավել բարելավմանը: Վարձատրության նոր կարգին անցած հանրապետության կոլտնտեսություններից 450-ն անցած տարվա հուլիս ամսին կոլտնտեսականների կատարած աշխատանքի դիմաց վճարել են 6795,6 հազար ռուբլի: Շամշադինի շրջանի կոլտնտեսություններն այդ գումարից նույն ամսին կոլտնտեսականներին վճարել են 504,6 հազար ռուբլի, որից Նորաշենի կոլտնտեսությունը՝ 86,8, Ն. Կարմիր աղբյուրինը՝ 72,8, Մովսեսինը՝ 60, Չորաթանինը՝ 38 հազար ռուբլի:

1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, հանրապետության կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության ֆոնդը ավելացել է 32,4 տոկոսով կամ 25,6 միլիոն ռուբլով:

Հայաստանի գյուղացու կյանքն այսօր ապահով է: Ամենամսյա երաշխավորված վարձատրությունից բացի, նրանք օգտվում են նաև սոցիալական ապահովությունից: Ծերության, հաշմանդամության, կերակրողին կորցնելու դեպքում կոլտնտեսականներն ստանում են կենսաթոշակ, իսկ կոլտնտեսուհիները հղիության և ծննդաբերության դեպքում՝ նաև նպաստ:

Գյուղական շրջաններում կենսաթոշակ ստացող կոլտնտեսականների թիվը փոքր չէ: Միայն Սպիտակի շրջանից թոշակառու են 1800 կոլտնտեսական, որոնք 1966 թվականի 9 ամսում ստացել են մի քանի հարյուր հազար ռուբլու կենսաթոշակ: Զգալի գումարի հասնող կենսաթոշակներ են ստացել նաև մյուս շրջանների կոլտնտեսականները, որով, ինչ խոսք, զգալիորեն բարձրացել է նրանց կենսամակարդակը:

Սովետական կառավարությունը հոգ է տարել, որպեսզի կոլտնտեսականների կենսամակարդակի բարձրացման հետ միասին բարվոք հիմքերի վրա դրվի նաև նրանց առողջապահության գործը: Այդ ուղղությամբ շատ բան է արված: Ներկայումս մեր հանրապետության ամեն մի շրջկենտրոնում կա 100—190 մահճակալ ունեցող հիվանդանոց, որտեղ աշխատում են յոթ հիմնական մասնագիտությունների գծով բժիշկներ:

Նախկինում Հայաստանում մեծ չարիք էր մալարիա հիվանդությունը, որով տառապում էր բնակչության 60 տոկոսը: Ի պատիվ հանրապետության առողջապահության բնագավառի աշխատողների պետք է ասել, որ այդ հիվանդությունը իսպառ վերացել է:

Գյուղական շրջաններում խոշոր միջոցառումներ են իրագործված մոր և մանկան պաշտպանության բնագավառում: Ներկայումս հանրապետությունում կա ավելի քան 150 գյուղական ծննդատուն, ինչպես նաև զգալի քանակությամբ կանանց և մանկական կոնսուլտացիաներ, մանկական կաթնախոհանոցներ, մանկամսուրներ և այլն:

Գյուղական բնակչության առողջապահության գործում շատ կարևոր է բժիշկների թվի ավելացումը, որով մենք իրոք կարող ենք պարծենալ: Եթե 1913 թվականին Երևանի նահանգի գյուղական հիվանդանոցներում աշխատում էին ընդամենը 14 բժիշկ, ապա այժմ միայն Հոկտեմբերյանում աշխատում են 58 բժիշկ, որոնք սպասարկում են ամբողջ շրջանի բնակչությանը:

Հանրապետության գյուղական բնակչության կենսամակարդակի բարձրաց-

ման և առողջապահության գործի հաջող կազմակերպման շնորհիվ վաղուց վերացել են տարափոխիկ հիվանդությունները, խիստ կրճատվել են դժբախտ դեպքերը և մահացությունը, բարձրացել է մարդկանց կյանքի տևողության միջին տարիքը:

## ԱՅՆՊԵՍ, ԻՆՉՊԵՍ ՔԱՂԱՔՈՒՄ

ԿՈԼՏՆՏԵՍԱՅԻՆ կարգի հաղթանակի շնորհիվ սոցիալական հեղաշրջում կատարվեց գյուղի կենցաղում: Մեր գյուղն այսօր ընթանում է ՍՄԿԿ ծրագրային պահանջի՝ քաղաքի և գյուղի միջև եղած տարբերությունների հաղթահարման ճանապարհով: Այդ ուղղությամբ իսկայական աշխատանք է կատարված: Առանձնապես աչքի են զարնում գյուղերի բարեկարգումն ու այնտեղ կատարվող շինարարությունը:

Գյուղի բարեկարգված, ծառապատված ու մեծ մասամբ ասֆալտապատված ու խճապատված ուղիղ փողոցների երկու կողմերում ուլունքի պես շարված են վարդագույն տուֆ քարից կառուցված գեղեցիկ շենքեր (միայն վերջին յոթ տարում կոլտնտեսականները կառուցել են 49 հազար բնակելի նոր տուն: Շատ բնակարաններ են կառուցված նաև սովխոզների բանվորների համար): Դրանք միհարկանի և երկհարկանի գրավիչ առանձնատներ են՝ իրենց կոմունալ հարմարություններով, ծաղկազարդ պարտեզներով ու մրգատու փոքր այգիներով: Կենտրոնական փողոցներում վեր են խոյացել դպրոցների, ակումբների, գրադարանների, մանկամսուրների, մանկապարտեզների, առողջապահական ու վարչական հիմնարկների շենքերը, իսկ ծայրամասերում՝ արհեստանոցների, մեքենայական պարկի ու արտադրական մյուս շենքերը: Համարյա չկա գյուղ, որը չունենա իր ֆիզկուլտ հրապարակներն ու զբոսայգիները, ցայտաղբյուրներն ու հուշարձան աղբյուրները, մթերային ու արդյունաբերական ապրանքների խանութները, թեյարաններն ու ճաշարանները:

Մեծ մասամբ այդպիսին է մեր հանրապետության այսօրվա գյուղը: Բայց այն ավելի լավ ու գեղեցիկ կլինի վաղը: Դրա լավագույն ապացույցը պետության կողմից գյուղական շինարարությանը հատկացվող կապիտալ ներդրումներն են. որոնք նոր հնգամյակում երկու անգամ ավելի են, քան նախորդ հինգ տարում:

Արմատապես փոխվել են գյուղի մարդկանց ապրելակերպը, կենցաղը: Հողի աշխատավորն այսօր իր նորակառույց բնակարանում նստած, հեռուստացույցի միջոցով դիտում է կինոնկարներ, ֆիզկուլտ խաղեր, լսում դասախոսություններ, կրույցներ, համերգներ, ծանոթանում է գիտության նորություններին, միջազգային դրությանը և այլն: Նրա համար օրվա պահանջ են թատրոնը, կինոն, թերթերը, գրականությունը, ինչպես նաև զբոսանքը, շախմատ, շաշկի, բիլիարդ խաղալը, երեկույթներին մասնակցելը:

Կոլտնտեսականների բարեկեցիկ ու կուլտուրական կյանքի մասին են վկայում նաև նրանց բնակարանների ճաշակով կահավորումը, անձնական օգտագործման առաջին անհրաժեշտ իրերի, գույքի, գործիքների ձեռքբերումը: Ճաշակով կահույք, գորգեր, դաշնամուրներ, ակորդիոններ, հեռուստացույցներ, ռադիոընդունիչներ և այլն կան համարյա բոլոր բնակարաններում. դրանք հիմնովին մտել են մեր գյուղացու կենցաղի մեջ:

Տնային տնտեսուհիների համար բարիք է կենցաղային սպասարկման մեքենայացումը, որով խոշոր չափերով թեթևանում է տնտեսուհիների աշխատանքը, բարելավվում բնակարանների սանիտարական պայմանները, որը էական նշանակություն ունի լավ հանգստի, առողջության և, վերջապես, արդյունավետ աշխատանքի համար:



Պակաս կարևոր նշանակություն չունի բնակչության սննդի հանրային եղանակով կազմակերպումը և զուր չէ, որ հանրային փռերի, ճաշարանների ցանցը գնալով ընդլայնվում է ամենուր:

Կոլտնտեսային գյուղի համար մեծ բարիք է կենցաղում հեղուկ գազի օգտագործումը: Մեկ անչափ ուրախություն է պատճառում այն, երբ այսօր հանրապետության կոլտնտեսականներից և սովխոզների աշխատողներից 137 հազարի բնակարաններում աթարի ու փայտի օջախին փոխարինել է գազօջախը:

Բազմաթիվ օրինակներ կարելի է բերել, թե ինչպես կոլտնտեսային գյուղը արտադրության միջոցների, աշխատանքի, լուսավորության, կուլտուրայի, կենցաղի և մյուս բնագավառներում մոտեցել ու շարունակում է մոտենալ քաղաքի մակարդակին: Նշելով այդ ուղղությամբ ձեռք բերված հաջողությունները, կուսակցության XXIII համագումարը կոնկրետ միջոցառումներ մշակեց քաղաքի և գյուղի միջև եղած տարբերությունների հաղթահարման վերաբերյալ: Մասնավորապես կուլտուր-կենցաղային պայմաններում եղած տարբերությունների վերացման առթիվ համագումարի դիրեկտիվներում կարդում ենք. «*Զգալի աշխատանք կատարել գյուղում կառուցելու* բնակելի տներ, դպրոցներ, մանկապարտեզներ, հիվանդանոցներ, ակումբներ, գրադարաններ, կինո-թատրոններ, լվացքատներ, փռեր, բարելավել գյուղական բնակչության առևտրական սպասարկումը, ավելի լայնորեն արմատավորել ռադիոն և հեռուստատեսությունը: Ելնելով տարբեր շրջանների տեղական պայմաններից, մշակել գյուղի և քաղաքի կյանքի կուլտուր-կենցաղային պայմաններում եղած տարբերությունները վերացնելու կոնկրետ միջոցառումներ և ձեռնամուխ լինել այդ ծրագրի լայն իրագործմանը»:

Կենսագործելով կուսակցության XXIII համագումարի որոշումները, Հոկտեմբերի հաղթանակով վերածնված հայ գյուղը նորանոր հաջողությունների կհասնի տնտեսական ու կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում և հաստատ քայլերով կընթանա դեպի կոմունիզմ:



# ՀՈԴՎԱԾՆԵՐ

Վ. ԿՈՒԴՐՈՎ

## ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՊՐՈԳՐԵՍԸ ԵՎ ՍՍՀՄ ՈՒ ԱՄՆ-Ի ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՏԵՆԴԵՆՑՆԵՐԸ

ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ երկու սիստեմների տնտեսական մրցության պրոբլեմը բնավ չի կորցրել իր ակտուալությունը, և, ինչպես միշտ, նրա վրա է բևեռված ամբողջ աշխարհի աշխատավորների ուշադրությունը: Կոմունիստները ելնում են Վ. Ի. Լենինի այն հայտնի դրույթից, թե մեր սոցիալիստական պետությունը միջազգային հեղափոխության վրա գլխավորապես ներգործում է իր տնտեսական քաղաքականությամբ: Կոմունիստ-լենինյանները հենց դրանում են տեսնում արդի հեղափոխական պրոցեսի հետագա զարգացման հիմունքներից մեկը: «Սովետական Միության վերցրած առաջխաղացման տեմպերը,— ՍՄԿԿ XXIII համագումարում ասաց Ուրուգվայի կոմունիստական կուսակցության Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Արիսմենդին,— ամրապնդում են խաղաղությունն ամբողջ աշխարհում, բազմապատկում նրա հզորությունը, որը դարձել է ազատագրվող ժողովուրդների վահանը, եղբայրության ձեռք են մեկնում հանուն ազատագրության հերոսական սխրանքներ գործող ժողովուրդներին, ամրապնդում մեր գաղափարները մարդկության մեծամասնության գիտակցության մեջ: Ձեր ամեն մի թիվը հարված է իմպերիալիզմի կրծքին, ոգեշնչող լույս բանվոր դասակարգի և ողջ աշխարհի շահագործվողների համար, այն աջակցում է դեմոկրատիայի նորանոր հաջողություններին, ազգային-ազատագրությանն ու սոցիալիզմին»:

Վերջին տարիներին համաշխարհային երկու սիստեմների, մասնավորապես ՍՍՀՄ և ԱՄՆ-ի տնտեսական մրցության բնույթի վրա մեծ կնիք է թողնում աշխարհով մեկ ծավալված գիտատեխնիկական բուռն առաջադիմությունը: Նրա ազդեցությամբ փոխվում են առանձին երկրների տնտեսական զարգացման հաջողությունների չափանիշներն ու գնահատականները: Այդ տեսակետից, անկասկած, հետաքրքրական է աշխարհի առաջատար ինդուստրիալ երկու պետությունների՝ Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների տնտեսական զարգացման տենդենցների վերլուծությունը:

### ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՏԵՄՊԵՐՆ ՈՒ ԾԱՎԱԼԸ ՍՍՀՄ-ՈՒՄ ԵՎ ԱՄՆ-ՈՒՄ

Սոցիալիստական շինարարության տարիներին Սովետական Միությունը որակական թռիչք կատարեց հետամնացությունից դեպի պրոգրես, սկզբունքորեն նոր աստիճանի բարձրացավ ինդուստրիալ էկոնոմիկայի զարգացման բնագավառում: Բավական է հիշատակել, որ ՍՍՀՄ-ը ներկայումս արդյունաբերական արտադրանք է թողարկում մոտավորապես 60 անգամ ավելի, քան ցարական Ռուսաստանը 1913 թվականին: 1965 թվականին ՍՍՀՄ-ն արտադրել է ամբողջ համաշխարհային արդյունաբերական արտադրանքի մոտ $^1/_5$ մասը, իսկ երկրորդ համաշխարհային պատերազմի նախօրեին Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի բաժինը $^1/_{10}$-ից էլ պակաս էր: Ընդ որում, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ ՍՍՀՄ բնակչությունը կազմում է երկրագնդի բնակչության միայն 7 տոկոսը: XXIII համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Բրեժնևը, նշելով այդ հաջողությունները, ասաց. հետևողականորեն լուծվում է կուսակցության առաջադրած խնդիրը՝ բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ գերազանցել առավել զարգացած կապիտալիստական երկրներին: Ավելի ու ավելի է կրճատվում Սովետական Միության և Ամերիկայի Միացյալ Նահանգների արդյունաբերական արտադրանքի մակարդակների միջև եղած ճեղքվածքը:



Այդ հաջողությունները ձեռք բերվեցին շնորհիվ նոր հասարակարգի մեծ առավելությունների, էկոնոմիկայի աճի բարձր տեմպերի, որպիսիք այդչափ երկար ժամանակամիջոցում չի տեսել ոչ մի կապիտալիստական երկիր: Այսպես. միայն վերջին 15 տարիներին ՍՍՀՄ ազգային եկամտի աճի տարեկան միջին տեմպերը կազմել են 9,0 տոկոս, արդյունաբերական արտադրանքինը՝ 10,7, այն դեպքում, երբ ԱՄՆ-ում դրանք համապատասխանաբար եղել են՝ 3,5 և 4,4 տոկոս:

Վերլուծելով ՍՍՀՄ և ԱՄՆ-ի միջև տնտեսական մրցության ընթացքը, չի կարելի մոռանալ, որ ելման բնագծերը, որտեղից սկսվեց այդ մրցությունը, չափազանց տարբեր էին: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության պահին ԱՄՆ-ի արտադրաուժերը, ցարական Ռուսաստանի համեմատությամբ, հասել էին զարգացման բավական բարձր մակարդակի: Օրինակ, 1913 թվականին ԱՄՆ-ում 8 անգամ ավելի արդյունաբերական արտադրանք էր արտադրվում, քան Ռուսաստանում, արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը 9 անգամ բարձր էր:

Հայտնի է, որ Սովետական Միության գոյության 49 տարիներից մոտ երկու տասնամյակը խլել են քաղաքացիական և երկրորդ համաշխարհային պատերազմներն ու դրանց հաջորդած ժողտնտեսության վերականգնման ժամանակաշրջանները: Սովետական էկոնոմիկային փիթխարի վնասներ հասցրեց երկրորդ համաշխարհային պատերազմը: Եվ, եթե ՍՍՀՄ և ԱՄՆ-ի հետպատերազմյան ժամանակաշրջանի համեմատության ելակետային բազան ընդունենք 1950 թվականը, քանի որ մինչ այդ բուժվել էին պատերազմի վերքերը, ապա այս դեպքում էլ ակնհայտ կլինի այդ ժամանակաշրջանում ԱՄՆ-ի ձեռք բերած արդյունաբերական պոտենցիալի զարգացման մեծ առավելությունը: Այսպես, ԱՄՆ-ի արդունաբերական արտադրանքի ծավալը 1950 թվականին ավելի քան երեք անգամ գերազանցում էր սովետական մակարդակը. ԱՄՆ-ում արտադրվում էր 3,3 անգամ ավելի պողպատ, 3,8 անգամ ցեմենտ, 7,1 անգամ՝ նավթ, 4,5 անգամ՝ էլեկտրաէներգիա և այլն:

Ժամանակակից խոշոր արդյունաբերության ըստեղծման պրոցեսում Սովետական Միությունը ան-

| | Տարիներ | | | 1970 թ. ՍՍՀՄ-ում սպասվում 1965թ. ԱՄՆ-ի մակարդակի |
|---|---|---|---|---|
| | 1950 | 1957 | 1965 | |
| Ազգային եկամուտը | 31 | 50 | 62 | 88 |
| Արդյունաբերության համախառն արտադրանքը | 30 | 47 | 65 | 97 |
| այդ թվում՝ | | | | |
| «Ա» խումբ | 32 | 65 | 77 | 115 |
| «Բ» խումբ | 27 | 42 | 46 | 65 |
| | | ավելի մոտավոր. | | |
| Գյուղատնտեսության համախառն արտադրանքը[1] | 55 | 70 | 75 | 83—90 |
| Աշխատանքի արտադրողականությունը՝ արդյունաբերության մեջ | 30—40 | 40—50 | 40—50 | 55—68 |
| Գյուղատնտեսության մեջ | 20 | 25—30 | 25 | 35 |
| Արդյունաբերական արտադրանքի առանձին ցուցանիշները | | | | |
| Ածուխ (հաշված է քարածխով) | 44 | 85 | 107 | 141 |
| Նավթ | 14 | 28 | 63 | 91 |
| Գ ա զ | 3 | 7 | 29 | 51 |
| Պողպատ | 30 | 49 | 75 | 105 |
| Թուջ | 32 | 51 | 82 | 119 |
| Էլեկտրաէներգիա | 22 | 28 | 42 | 70 |
| Ավտոմեքենաներ | 5 | 7 | 6 | 15 |
| Տրակտորներ՝ ֆիզիկական հաշվումներով | 17 | 44 | 54 | 95 |
| Մետաղկտրիչ հաստոցներ | 42 | 77 | 109 | 135 |
| Թուղթ | 12 | 17 | 19 | 31 |
| Հանքային պարարտանյութեր | 31 | 42 | 63 | 126 |
| Քիմիական մանրաթել | 4 | 20 | 27 | 53 |
| Պլաստմասսա և ձյութ | 6 | 9 | 14 | 42 |
| Ցեմենտ | 26 | 58 | 111 | 157 |
| Շաքարավազ | 84 | 142 | 194 | 217 |
| Կենցաղային սառնարաններ | 0,02 | 9 | 25 | 120 |
| Հեռուստացույցներ | 0.2 | 11 | 31 | 80 |
| Կաշվե կոշկեղեն | 39 | 52 | 78 | 100 |

1. Մոտակա հինգ տարիների միջինը

րացնելու նպատակով: Միայն կոլտնտեսությունների ու պետության ուղղակի ներդրումները հնգամյակում կկազմեն 71 միլիարդ ռուբլի: Հինգ տարում գյուղատնտեսությանը մատակարարվելու է 1,790 հազար տրակտոր (այդ թվում 780 հազարը հերկող), 1,100 հազար բեռնատար ավտոմեքենա, 550 հազար հատիկահավաք կոմբայն և գյուղատնտեսական այլ տեխնիկա: Մոտ 3 անգամ շատ էլեկտրաէներգիա կսպառվի գյուղատնտեսության մեջ: Այդ ամենի և պլանավորման սիստեմի ու գյուղատնտեսական արտադրության ղեկավարման կատարելագործման շնորհիվ հնարավոր կլինի 40—50 տոկոսով բարձրացնել կոլտնտեսությունների և սովխոզների աշխատանքի արտադրողականությունը:

Գյուղատնտեսությունը ժամանակակից տեխնիկայով հագեցնելը, դրա հիման վրա աշխատանքի արտադրողականության բարձրացումը լիովին ռեալ են դարձնում հնգամյակում պլանավորված գյուղատնտեսական արտադրության աճման տեմպերը, որը նախորդ հինգ տարիների համեմատությամբ 25 տոկոս աճ է նշանակում: Այդ թույլ կտա Սովետական Միությանը 1970 թվականին զգալի չափով մոտենալու ԱՄՆ-ի գյուղատնտեսության զարգացման ժամանակակից մակարդակին:

### ԳԻՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ, ՈՉ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՈԼՈՐՏԻ ՊՐՈԲԼԵՄԸ

Ժամանակակից տնտեսության զարգացման օրինաչափությունները ցույց են տալիս, որ կապիտալիզմի հետ տնտեսական մրցությունը կարելի է շահել միայն գիտատեխնիկական հեղափոխության հնարավորությունների արագ ու լրիվ օգտագործման դեպքում, որը թույլ կտա բարձրացնել հասարակական արտադրության արդյունավետությունը: ՍՄԿԿ XXIII համագումարի 1966—1970 թթ. հնգամյա պլանի վերաբերյալ դիրեկտիվների հիմնական խնդիրներից մեկը՝ աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացումը, հիմնվում է գիտատեխնիկական առաջադիմության արագացման անհրաժեշտության, գիտական հետազոտությունների լայն զարգացման և արտադրության մեջ դրանց արդյունքների արագ օգտագործման ու գյուտերի ներդրման վրա:

Սովետական Միությունը գիտական հետազոտությունների և կրթության բնագավառում մեծ հաջողությունների է հասել: Վերջին 10 տարիներին ՍՍՀՄ-ում գիտական հետազոտությունների հատկացումներն ավելացել են 6 անգամ: 1965 թվականին ՍՍՀՄ նորավարտ ինժեների թիվը 4 անգամ բարձր էր ԱՄՆ-ից և հասնում էր 170 հազար հոգու: Ներկայումս ՍՍՀՄ-ում է կենտրոնացված աշխարհի գիտաշխատողների քառորդ մասը:

Արագ են աճում գիտության վրա կատարվող ծախսերը նաև ԱՄՆ-ում: Ծախսումների ծավալով, մյուս բնագավառների համեմատ, առաջին տեղը գրավեց «Գյուտարարության ինդուստրիան»: Հետազոտությունների վրա ծախսվող ընդհանուր գումարը ԱՄՆ-ում այժմ կազմում է տարեկան 20 մլրդ դոլար: Անցյալ տարիներին ԱՄՆ-ում հետազոտությունների վրա կատարվող ծախսումներն այնքան ավելացան, որ չափակցվում էին կապիտալ ներդրումների հետ: Եվ այժմ, երբեմն դժվար է ասել, որն է առավել ներգործում տնտեսական աճի վրա՝ կապիտալ ներդրումները, թե հետազոտությունների համար հատկացված հավասարամեծ գումարների ծախսումները: ԱՄՆ-ի մշակող արդյունաբերության մեջ գիտական հետազոտությունների ծախսումները հասնում են այդ բնագավառի կապիտալ ներդրումների $^2/_3$-ին, էլեկտրատեխնիկական և ավիաարդյունաբերության մեջ դրանք արդեն կապիտալ ներդրումների ծավալը գերազանցել են 3—6 անգամ:

Գյուտերի արագ ներդրումը արտադրության մեջ կարևոր գործոն է մրցակիցների հետ վաճառահանման շուկաների նվաճման համար մղվող պայքարում: Այդ պատճառով էլ ԱՄՆ-ում արտադրվող ապրանքների նոմենկլատուրան շատ արագ է վերափոխվում: Ըստ եղած տվյալների 1964 թվականին մշակող արդյունաբերության արտադրանքի 14 տոկոսը նոր էր. դրանք չորս տարի առաջ չէին արտադրվում, 1960 թվականին այդպիսի արտադրանքը 10 տոկոս էր կազմում: Էլեկտրոնային արդյունաբերության ընկերությունները հաշվել են, որ իրենց այժմյան վաճառքի 75 տոկոսը այնպիսի ապրանքներ են, որոնք հայտնի չէին նույնիսկ տասը տարի առաջ: ՍՍՀՄ-ը նույնպես իր խնդիրն է համարում թողարկվող արտադրանքի անընդհատ վերափոխումը: Գիտաշխատողների, գյուտարարների և ռացիոնալիզատորների հսկայական բանակը մեր երկրում հաջողությամբ է լուծում այդ խնդիրները: Մենք ենթարկվում ենք գյուտարարական ու ռացիոնալիզատորական առաջարկությունների, այսպես ասած՝ գրոհին: 1950 թվականին դրանց թիվը 1 մլն 240 հազար էր, 1955-ին ավելի քան 2 մլն, 1965-ին արդեն անցնում էր 4 միլիոնից: Դրանցից 3 մլն ներդրվել է արտադրության մեջ, որը ժողտնտեսությանը 1880 մլն ռուբլու խնայողություն է տվել: Իսկ վերջին 7 տարիների ընթացքում խնայողությունն անցնում է 11 միլիարդ ռուբլուց: Նոր հնգամյա պլանի վերաբերյալ XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսված է գիտական հետազոտությունների լայն զարգացում, դրանց արդյունավետության էական բարձրացում



և արդյունքների արագ ներդրում արտադրության մեջ: Այդ նպատակով նախատեսված է գիտական ուժերն ու նյութական ռեսուրսներն օգտագործել գիտության ու տեխնիկայի հիմնական պրոբլեմները լուծելու համար, որոնք տալիս են մաքսիմալ տնտեսական արդյունք:

Գիտատեխնիկական առաջադիմության արագացման համար մեծ դեր է խաղում փոխադարձ ձեռնտու արտոնագրերի և լիցենզիաների առևտուրը: Արտոնագրային ինֆորմացիան արտացոլում է խիստ ժամանակակից տեխնիկայի ու տեխնոլոգիայի զարգացման մակարդակը, հնարավորություն է ընձեռում «սաղմնային» վիճակում տեսնելու տեխնիկական առաջադիմության այն տենդենցները, որոնք ապագայում կարող են դառնալ առաջատար: Պատահական չէ, որ վերջին տասը տարվա ընթացքում նոր տեխնոլոգիայի միջազգային առևտրի շրջանառությունը գրեթե երեք անգամ արագ է աճել, քան սովորական ներքին առևտրի շրջանառությունը: Վերջին հինգ տարիների ընթացքում ԱՄՆ-ն արտոնագրերի վաճառքից եւ է ստացել 4 մլրդ դոլարից ավելի:

Երկար ժամանակ ՍՍՀՄ-ում պատշաճ ուշադրություն չէր նվիրվում այդ մեծ պրոբլեմին, և հաճախ չէին օգտագործվում այն ակնհայտ առավելությունները, որոնք ընձեռում է տեխնիկական առևտուրը: Այդ դրվածքը խիստ արդարացի քննադատվեց ՍՄԿԿ XXIII համագումարում: Սովետական արտաքին առևտրի առջև խնդիր է դրված լիցենզիաների ասպարեզում արժանի տեղ նվաճել համաշխարհային շուկայում:

Երբ խոսվում է ՍՍՀՄ և ԱՄՆ-ի տնտեսական մրցության մասին, ապա հաճախ սահմանափակվում են այդ մրցության նյութական արտադրության ոլորտի շրջանակներով: Սակայն արտադրաուժերի զարգացման ժամանակակից փուլում այդ բավարար չէ: Նյութական արտադրության և աշխատանքի արտադրողականության ոլորտի վրա, հատկապես բանվորական ուժը արտադրամիջոցներով որոշակիորեն հագեցնելու փուլում, փիթխարի հակադարձ ներգործություն է ունենում, ոչ արտադրողական ոլորտը՝ ժամանակակից արտադրության այդ անհրաժեշտ «թիկունքը»: Այս կապակցությամբ ավելի ու ավելի մեծ թվով տնտեսագետներ հակված են ոչ արտադրողական ծախսերի մեջ տեսնելու առաջադիմության գլխավոր գործոնը: Այսպես, ամերիկյան տնտեսագետ Է. Դենիսոնի կարծիքով, 1929—1957 թվականների ժամանակաշրջանում մեկ զբաղվածին ընկնող եկամտի աճի 78 տոկոսը արդյունք էր կրթության ու գիտության առաջադիմության և միայն 9 տոկոսը՝ մասնավոր կապիտալի աճի: Սովետական նշանավոր տնտեսագետ ակադեմիկոս Ստրումիլինը իր տնտեսության կազմավորմանը նվիրված աշխատության մեջ գտնում է, որ 1960 թվականին ՍՍՀՄ ազգային եկամտի 23 տոկոսը ստացվել է աշխատողների որակավորման աճի հաշվին:

ՍՍՀՄ-ում մեծ չափերով զարգացած են ոչ-արտադրական ոլորտի այնպիսի ճյուղերը, ինչպիսիք են կրթությունն ու բժշկությունը: Սովետական Միությունն ուսանողների թվով աշխարհում գրավում է առաջին տեղը (3859 հազար մարդ), բժիշկների թվով նույնպես առաջինն է (555 հազար մարդ): Սակայն, ամբողջությամբ վերցրած, ՍՍՀՄ ոչ արտադրական ոլորտի բաժինը դեռևս փոքր է, այնտեղ զբաղված են ժողտնտեսության աշխատողների միայն 20 տոկոսը, մինչդեռ ԱՄՆ-ում գրեթե 50 տոկոսը: Մինչև վերջերս ՍՍՀՄ ոչ արտադրական ոլորտի հատկացումները կապիտալ ներդրումների միայն 35 տոկոսն էին կազմում, մինչդեռ ԱՄՆ-ում 50 տոկոսն է:

Բնական է, որ ԱՄՆ-ի ոչ արտադրական ոլորտի մասշտաբներն ու կառուցվածքը ՍՍՀՄ-ի համար ամենևին էլ չափանիշ չեն: Անհրաժեշտ է հիշել, որ ոչ արտադրական ոլորտի շատ ճյուղեր ԱՄՆ-ում կազմվել են սոցիալական գործոնների ազդեցությամբ, դրանց զարգացումը բացատրվում է արտադրության կապիտալիստական եղանակի արատներով: Օրինակ, ԱՄՆ-ում գերիշխում է ռեկլամը, որի վրա արվող ծախսումները անցնում են բանականության բոլոր սահմանները: Սոցիալիզմի ժամանակ գիտական հիմքի վրա պլանաչափ զարգացող ոչ արտադրական ոլորտը կոչված է մարդու համար ստեղծելու բոլոր հարմարությունները, լիովին բավարարելու ժողովրդի պահանջմունքներն ու կարիքները:

Այս հնգամյակում Սովետական Միությունում ոչ արտադրական ոլորտն արագ ու բազմակողմանի կզարգանա: Այդ նպատակին հատկացվում են անընդհատ աճող միջոցներ: Հնգամյակի ընթացքում էապես կբարելավվի բնակչության առևտրական սպասարկումը, կընդլայնվի բնակարանային շինարարությունը, կզարգանա բժշկական ու կուլտուրական սպասարկումը: Կենցաղսպասարկումը կվերածվի ժողտնտեսության խոշոր մեքենայացված ճյուղի: Բնակչությանը ցույց տրվող կենցաղ սպասարկման ծավալը 1970 թվականին կմեծանա մոտ 2,5 անգամ, այդ թվում գյուղական վայրերում՝ ավելի քան 3 անգամ:

***

ՍՍՀՄ-ում ստեղծվել է հզոր ինդուստրիալ բազա, որն աշխարհում երկրորդ տեղն է գրավում: Այս բազայի հետագա ընդլայնման ու ամրապնդման հնարավորություններն ու ռեսուրսներն

առավել ևս փառահեղ են: Աշխատանքային ռեսուրսներով ՍՍՀՄ-ը հարուստ է ԱՄՆ-ից: Ժողկրթության ու գիտության կարգացմամբ Սովետական Միությունն աշխարհում առաջատար տեղ է գրավում: Բնական ռեսուրսներով էլ Սովետական Միությունը ոչ միայն ետ չի մնում, այլ շատ դեպքերում գերազանցում է ԱՄՆ-ին: ՍՍՀՄ վարելահողային տարածությունը համարյա 3 անգամ ավելի է ԱՄՆ-ից, անտառամասերը ևս երեք անգամ: Նավթի, գազի, երկաթահանքի և այլ կարևոր հանույթները նույնպես ավելի շատ են, քան ԱՄՆ-ում:

Բայց բնական ռեսուրսների գերազանցությունն ամենևին էլ այն գլխավոր գործոնը չէ, որը վճռական ազդեցություն ունենար ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի միջև տնտեսական մրցության ելքի վրա: Գլխավորը՝ սոցիալիստական հասարակարգի առաջադեմ լինելն է, նրա անվիճելի առավելությունը կապիտալիստականի հանդեպ: ՍՍՀՄ սոցիալիստական հասարակարգի կարգացման ողջ պատմությունը, մեկ երկրի շրջանակներից սոցիալիզմի դուրս գալը և համաշխարհային սոցիալիստական սիստեմի, մարդկության կարգացման վճռական գործոնի վերածվելը, Սովետական Միությունում կոմունիզմի նյութատեխնիկական բազայի հաջող կառուցումը՝ այս ամենը խորապես ու գիտականորեն հիմնավորում են կապիտալիզմի հետ տնտեսական մրցությունում սոցիալիզմի հաղթանակի պատմական անխուսափելիությունը, արտադրության կապիտալիստական եղանակը սոցիալիստականով փոխարինելու անխուսափելիությունը:

Ընթացիկ հնգամյակում Սովետական Միության տնտեսությունը ոտք է դնում կարգացման նոր, ավելի բարձր աստիճանի վրա: 1966—1970 թվականների ընթացքում կլուծվեն ողջ հասարակական արտադրության ինտենսիվացման, դրա արդյունավետության բարձրացման, առկա ռեսուրսների օգտագործման խիստ բարելավման բարդ խնդիրները: Նոր հնգամյակը ժողովրդի բարեկեցության արագ բարձրացման ժամանակաշրջան է:

Խոսելով ՍՍՀՄ և ԱՄՆ-ի միջև տնտեսական մրցության հեռանկարների մասին, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ արտադրության ծավալի, տեմպերի և որակական աճի հետ մեկտեղ մրցության մեջ հաղթանակի չափանիշ պետք է լինեն որակական բոլոր ցուցանիշների բարելավումը, արտադրական մինիմում ծախսերով արտադրանքի մաքսիմում հատույցը, բնակչության կենսամակարդակի արագ աճը:

Լենինը սովորեցնում էր, որ առանց ժողովրդի նախաձեռնության, աշխատավորների ինքնագործունեության, առանց սոցիալիստական դեմոկրատիայի բազմակողմանի կարգացման հնարավոր չէ աշխատանքի արտադրողականությամբ, կենսամակարդակով անցնել կարգացած կապիտալիստական երկրներից: Միլիոնների ակտիվությունը, նրանց նյութական շահագրգռվածությունը և լայն մասնակցությունը, տնտեսության ղեկավարմանը էկոնոմիկայի կարգացման հզոր գործոն են: Կառավարման ու պլանավորման նոր սիստեմի կիրառումը մեր երկրում, ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների կենսագործումը դրա համար լայն հնարավորություններ են ստեղծում և, անտարակույս, մեր երկիրը կհասցնեն կուլտուրական ու տնտեսական արագ առաջադիմության, սոցիալիստական արտադրաեղանակի առավելությունների մաքսիմալ դրսևորման, կապիտալիզմի հետ խաղաղ տնտեսական մրցության մեջ նորանոր հաղթանակների:

«Проблемы мира и социализма» № 10, 1966 г.



Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

ՀՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր ռադիոհաղորդումների և հեռուստատեսության կոմիտեի նախագահ

# ՄԵՐ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԸ՝ ՀՈԳՍԵՐ ՈՒ ԽՆԴԻՐՆԵՐ

*Հասարակության զարգացման արդի փուլում անհնար է պատկերացնել կյանքն առանց ռադիոյի, հեռուստատեսության: Լրատվության և ոչ մի միջոց ի վիճակի չէ մրցելու ռադիոյի և հեռուստատեսության հետ թե՛ օպերատիվությամբ, թե՛ հնարավորություններով, նաև ազդեցության ոլորտներով, ընդգրկման ծավալով, նմանապես և արագությամբ: Ինֆորմացիա և քաղաքական-հասարակական ամենաբազմապիսի խնդիրների մեկնաբանություն, տնտեսական կյանք և հոգևոր մշակույթ՝ դաստիարակություն, համընդհանուր կարծիքի արմատավորում, ուսուցում. ահա այն հիմնական բնագավառները, որոնց շուրջ ռադիոն և հեռուստատեսությունն ամեն օր զրուցում են մարդկանց հետ, մեծ դեր խաղալով ժողովրդի հոգևոր կյանքում, նրա քաղաքական-բարոյական դաստիարակության, կոմունիզմի գաղափարներին նվիրվածություն արմատավորելու գործում: Սովետական ռադիոն և հեռուստատեսությունը ծառայում են ժողովրդին, հանդիսանում իսկական ժողովրդական տրիբունա: Դրանով են պայմանավորված կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության մշտական ուշադրությունն ու հոգատարությունը ռադիոյի և հեռուստատեսության զարգացման նկատմամբ:*

*Սովետական Միությունում ռադիո և հեռուստատեսային հաղորդումների ամենօրյա ծավալը հավասար է չորս էջանոց 325 թերթի: Փաստորեն սովետական ամեն մի քաղաքացի լսում, մոտ 100 միլիոն մարդ դիտում են հեռուստատեսային հաղորդումները:*

*Հայաստանի ռադիոյի օրական 28 ժամ տևող հաղորդումները լսում են ոչ միայն 300 հազար ռադիոընդունիչներից և 140 հազար ռադիոկետերից օգտվող հանրապետության աշխատավորությունը, այլև սփյուռքահայությունը Մերձավոր ու Միջին Արևելքում, Արևմտյան Եվրոպայում և Ամերիկայում:*

*Հեռուստատեսային 14—15-ժամյա ծրագրերը, այդ թվում սեփական և տեղական 6-ժամյա հաղորդումներն ամեն օր դիտում է հանրապետության բնակչության 75 տոկոսը: Առաջիկա տարիներին այդպիսի հնարավորություն կստանա ողջ բնակչությունը, երբ շահագործման կհանձնվեն Զանգեզուրը, Շիրակը և հանրապետության այլ մասերը Երևանին կապող ռադիոռելեային*

գծերը: Սեմյոնովկայի և Պուշկինի դժվարամատչելի լեռնանցքներում կապավորների ջանքերով կառուցված ռադիոռելեային հզոր ռետրանսլյացիոն (վերատրանսլյացիոն) կայանների կառուցման շնորհիվ կանոնավոր ընդունում ենք Մոսկվայից տրվող հաղորդումները, իրազեկ դառնալով Սովետական Միությունում և արտասահմանում տեղի ունեցող իրադարձություններին: Շուտով տեխնիկապես հնարավոր կդառնա նաև մեր հեռուստատեսային հաղորդումների ընդունումը Մոսկվայի կողմից, և միլիոնավոր մարդիկ անմիջականորեն կդիտեն մեր հանրապետության առօրյան:

## 1

Ռադիո և հեռուստատեսային հաղորդումների գլխավոր խնդիրը ամենօրյա անդուլ օգնությունն է լենինյան կուսակցությանը՝ սովետական մարդկանց դաստիարակելու բարձր գաղափարայնության, սովետական հայրենասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, աշխատանքային ակտիվության, հասարակության նկատմամբ պատասխանատվության, աշխատանքային ու պետական կարգապահության ոգով: Բազմաբովանդակ է մեր 700 հոգուց բաղկացած կոլեկտիվի գործունեությունը:

Ռադիոյի և հեռուստատեսության յուրաքանչյուր աշխատող գոհունակությամբ ընդունեց կուսակցության XXIII համագումարում արտասանած ընկ. Բրեժնևի հետևյալ խոսքերը. «Կուսակցությունն ունի պրոպագանդիստների, ագիտատորների, ժուռնալիստների, հեռուստատեսության, կինոյի, թատրոնների հիանալի կադրեր: Հիրավի, դրանք կուսակցության ոսկե ֆոնդն են, որը պետք է պահպանել, խնամքով աճեցնել և ճիշտ օգտագործել»:

Արդարև, ժուռնալիստական կադրերով, նրանց մասնագիտական-գեղարվեստական վարպետությամբ է պայմանավորված մեր խոսքի ճշմարտացիությունը, հյութեղությունը, ներգործության ուժը: Ամեն խոսք չէ, որ լսվում է, ամեն խոսք չէ, որ հավատում է, գերում, տանում իր հետևից: Ընդհանուր, ոչինչ չասող, վերամբարձ ու փքուն, «սիրունիկ» խոսքից ռադիոլսողը խուսափում է. անջատում է ռադիոընդունիչը, և վերջ: Այդպիսի դեպքերում մենք չենք հասնում մեր նպատակին, կորցնում ենք ամենագլխավորը՝ համակրանքն ու հարգանքը մեր խոսքի նկատմամբ:

Հատկապես մեր օրերում անչափ դժվար է ժուռնալիստի խնդիրը: Ինֆորմացիայի, փոխտեղեկության հսկայական չափերը, զարգացման օրըստօրե արագաթափ տեմպը, ժամանակաշրջանի թելադրած ռիթմը բարդ, երբեմն անհնարին են դարձնում ժուռնալիստի գործը՝ միշտ ընթանալ առջևից: Հակառակ դեպքում նա կորցնում է մասնագիտական նկարագիրը և դառնում արձանագրող: Հայտնի է նաև, թե որքա՜ն քիչ բան է պահանջվում արձանագրողից—սովորական գրագիտություն և գրասենյակային բարեխղճություն: Վերանում են միտքը, բանականությունը: Կորչում է նորի, կարևորի զգացումը: Երբ ժուռնալիստն իրապես չի ընկալում կյանքի ելևէջները, բարդ պրոցեսների էությունը, չի կարողանում այդ ամենը վերարտադրել ու ներկայացնել, նրա խոսքը ո՛չ միայն անընդունելի կամ ձանձրալի է, այլ նույնիսկ վնասակար:

Ցավոք, սովորույթի ուժը, ապավինելը մեկ անգամ փորձվածին՝ խոր արմատներ ունի որոշ ժուռնալիստների մտածողության, գրելաձևի, աշխատան-



քային կուլտուրայի մեջ: Աննշան փոփոխություններ են նկատվում որոշ մարդկանց տարիներ առաջվա և այսօրվա հաղորդումների շարադրանքում. նույն դարձվածքը, ծանոթ պարբերություններ, վերամբարձ, հողից կտրված ոճ, քննության, վերլուծության իսպառ բացակայություն: Մեզ պետք է քննական-վերլուծական, բանիմաց մոտեցում յուրաքանչյուր խնդրին արծարծելիս: Յուրաքանչյուր բառն ընդգծում եմ, որովհետև այժմ անկարևոր խնդիրներ չկան: Քաղաքական մարտաշունչ հրապարակախոսության բացակայությունը մեր հանրապետությունում տխուր խորհրդածությունների է հանգեցնում: Անգամ մեր անվանի ժուռնալիստները գերադասում են խոսել ամեն բանի մասին, բայց զարմանալի համառությամբ խուսափում են հրապարակախոսության պես շնորհակալ, գերհագեցած, խոսքի մեծ արվեստ պահանջող հույժ կարևոր ժանրից: Մամուլի այդ լուրջ բացը որոշ չափով լրացնում են ռադիո և հեռուստատեսային մեկնաբանությունները, բայց դրանք նույնպես կարոտ են համապարփակության, նյութի իմացության ու կողմնորոշման, անձնական ստույգ վերաբերմունքի, երևույթի կամ փաստի հանգամանալի ներկայացման առումով: Ստեղծագործական նման հոգսերի առթիվ երկար կարելի է խոսել: Եվ պետք է խոսել:

Հեռուստատեսության մուտքը առօրյայում և նրա բուռն զարգացումը ինչպես ամենուր, մեզ մոտ ևս թերահավատություն, սառնություն հարուցեցին ռադիոհաղորդումների նկատմամբ: Այնինչ, չնայած հեռուստատեսության ձգողական մեծ ուժին, ռադիոն հաջողությամբ է դիմանում հեռուստատեսության «մրցակցությանը»: Այստեղ իրենց խոսքն են ասում նաև ռադիոտրանզիստորները: Դա արդյունք է ռադիոաշխատողների գործունեության ճկունության և հմտության, հաղորդումները բազմազան ու լսելի դարձնելու ունակության: Այլապես, ոչ մի լավատեսություն չի փրկի ռադիոն, այն կկորցնի իր ուրույն դերը, որ մեծ գյուտից հետո նվաճել է ժողովրդի հոգևոր կյանքում: Կարելի է ասել, որ Հայաստանի ռադիոյի ստեղծագործական կազմը ընդհանուր առմամբ հաջողությամբ է կատարում իր այդ դերը:

Ռադիո-ժուռնալիստիկայի առջև առանձնապես մեծ խնդիրներ են դրված ներկա՝ հոբելյանական տարում: Կազմել բարձրորակ և բազմազան մի ամբողջ տարեգրություն և մեծ հեղափոխությունը ներկայացնող հաղորդումներ, արձագանքել կյանքի կարևոր իրադարձություններին, հասնել այն բանին, որ յուրաքանչյուր անհատ իր հոգեկան ու մտավոր աշխարհով, աշխատանքային գործունեությամբ մշտապես լինի ռադիո և հեռուստատեսային հաղորդումների կենտրոնում՝ ահա մեր առաջնահերթ խնդիրը:

Հոբելյանական տարվա անելիքներն, անշուշտ, լրացում են հանդիսանում մեր ամենօրյա գործունեությանը, եթերը հմտորեն ու օգտավետությամբ զբաղեցնելու մեր կոչմանը: Այդ իսկ տեսակետից առանձնակի նշանակություն ունեն ռադիոյի երաժշտական ծրագրերն ու հաղորդումները: Ամեն օր մոտ 14 ժամ երաժշտություն, այսինքն՝ 35—40 համերգ: Եթե փոքր-ինչ խտացնենք պատկերը, ապա՝ մի քանի ֆիլհարմոնիաների համատեղ գործունեություն: Ռադիոյով հնչող երաժշտությունը տարիների ընթացքում դարձել է մարդկանց համար կենսապահանջ, գեղագիտական դաստիարակության, երաժշտական ճաշակի ու գիտելիքների հղկման, հարստացման անփոխարինելի միջոց:

Մեր երաժշտական հաղորդումների բարելավումը համարում ենք առաջնահերթ խնդիր: Այդ ուղղությամբ կատարված են նախնական քայլերը: Որպես

սկզբունք կիրառվում է հետևյալը. ամեն օր ռադիոլսողը պետք է ստանա ազգային, համաշխարհային երաժշտության դասական և ժամանակակից գործերի որոշակի պաշար։ Համերգային ծրագրերից հետզհետե վերանում են կրկնություններն ու ավելորդությունները, շեշտը դրվում է այժմեական մակարդակ ունեցող արժեքների ըստ ամենայնի ներկայացման ու տարածման վրա։ Բացի այդ ստեղծված են սիմֆոնիկ ու էստրադային նվագախմբեր։ Կատարողական ունակ խմբերի նման առկայությունը հնարավորություն է ընձեռում առավել կազմակերպվածությամբ շարունակելու ազգային ձայնադարանը նորանոր ժապավեններով հարստացնելու գործը։ Դեռևս տարին չբոլորած, այդ խմբերն արդեն կատարել են զգալի քանակությամբ ձայնագրություններ։ Այդուհանդերձ տվյալ ոլորտում տակավին մեծ անելիքներ ունենք. բացեր կան թե՛ տեխնիկական, կազմակերպական, թե՛ ստեղծագործական առումով։

Խոսքս ուզում եմ ուղղել մեր ունկնդիրներին։ Ռադիոլսողը մի վատ սովորություն ունի. պատահական ժամին միացնում է ընդունիչը կամ բարձրախոսը, և եթե այդ պահին հաղորդվող երաժշտությունը կամ խոսքը նրա սրտովը չէ, ձեռքը թափ է տալիս ու կազմում որոշակի կարծիք, խորհելով, թե ռադիոյում աշխատել չգիտեն։ Դրանից տուժում է միայն ինքը։

Ռադիոլսողն առայժմ չի վարժվել տպագիր ծրագրերից օգտվելուն։ Դրա ցայտուն ապացույցն է Խոսում է Երևանը թերթի տպաքանակը՝ 26.000 օրինակ։ Չնչին թիվ է այդ՝ հանրապետության ռադիոլսարանի համեմատությամբ։ Ծրագրերից նա կարող է վերցնել այն, ինչ համապատասխանում է իր ճաշակին, հակումներին, տրամադրությանը։ Ինչպես յուրաքանչյուր օրգան, ռադիոն և հեռուստատեսությունը նույնպես պահանջում են պարբերական, ուշադիր վերաբերմունք։ Այժմ, հատկապես, ռադիոյի երաժշտական ծրագրերը կազմողները իրականացնում են մշտական, կայուն ժամերի սկզբունքը՝ Հայկական երաժշտության հատընտիր, Նոր ձայնագրություններ, Մեծ երաժշտության պահեր, Մեկ ժամ միայն էստրադա, Մեկ ժամ դասական երաժշտություն և այլ համերգներ ունեն իրենց կայուն ժամերը։ Ուստի ծրագրերից օգտվելով, դրանք ուղեցույց դարձնելով միայն կարելի է վերցնել ռադիոյից և հեռուստատեսությունից առավելագույնը, ինչ պետք է յուրաքանչյուրին։

Չի կարելի նաև բնական համարել հանրապետության թերթերի և ամսագրերի անուշադիր վերաբերմունքը ռադիոյի, հեռուստատեսության գործունեության նկատմամբ։ Բանը սոսկ այն չէ, որ մամուլում տպագրվում են ռադիոյի և հեռուստատեսության ծրագրերը՝ կամ ժամանակ առ ժամանակ տեղ հատկացնում ռադիոլսողների կամ հեռուստադիտողների ցանկություններին, նկատառումներին։ Վերջիններս հաճախ այնչափ տարբերային ու անկազմակերպ են, որ հեռու են իրականությունից, իրերի իսկական դրությունից։ Մնում է միայն զարմանալ որոշ խմբագրությունների անիրազեկության վրա։

Այսօրվա հասարակական կյանքում ռադիոյի և հեռուստատեսության անփոխարինելի դերն ըմբռնող յուրաքանչյուր խմբագիր, հարկավ, պետք է ունենա շատ ավելի լուրջ, քննական վերաբերմունք մեր բոլոր հաղորդումների նկատմամբ։

Թատերական ամեն մի նոր ներկայացում, որին ներկա են լինում մի քանի հարյուր մարդ, երկար-բարակ վեճերի ու քննարկումների առարկա է դառնում մամուլի էջերում։ Իսկ հեռուստատեսային կամ ռադիոբեմադրությունները, որպես կանոն (չնչին բացառությամբ), չեն արժանանում մեր մամուլի ուշա-



դրությանը։ 1966 թվականին ստեղծվել և հաղորդվել են ռադիո և հեռուստատեսային բազմաթիվ պիեսներ։ Սակայն մամուլը, մասնագետները լռում են, թեև այդ հաղորդումները ամեն անգամ լսում և դիտում են մեկ միլիոնից ավելի մարդ։ Նման պրակտիկան վկայությունն է այն բանի, որ մեր հասարակական կյանքում ոչ բոլոր օղակներն են զգում դարի զարկերակը, նորը, կարևորը և շարունակում են իրենց ընթացքը հին, տրորված ուղիներով։ Օրինակ, գրողների վերջին համագումարում խիստ տարօրինակ էր, որ ոչ մի զեկուցող և ելույթ ունեցող չհիշեց այն վիթխարի աշխատանքը, որ կատարել ու կատարում են ռադիոն և հեռուստատեսությունը մեր գրական արժեքները պրոպագանդելու, ժողովրդին մատուցելու, նրա հոգևոր կյանքը հարստացնելու, դրամատուրգիական նոր գործեր ստեղծելու, սովետահայ գրողներին բազմամարդ լսարան դուրս բերելու ուղղությամբ։ Այսպիսի փաստեր կարելի է շատ թվարկել։ Իհարկե անմտություն կլինի կարծել, թե դա արվում է ինչ-որ մեկի սուբյեկտիվ ցանկությամբ կամ մոռացկոտության հետևանքով։ Այստեղ իրեն զգացնել է տալիս սովորության, հին ձևերի, հին չափանիշների ուժը։

Հեռուստատեսությամբ ժողովրդին խոսք ասելու, նրա հետ խոսելու պրակտիկան, ցավոք, շատ դանդաղ է արմատավորվում մեզ մոտ։

Մեզ թվում է, որ ռադիոյի ու հեռուստատեսության գործունեությունը պետք է լինի մամուլի ուշադրության կենտրոնում։ Եթե կան թատերագետներ ու թատերական քննադատներ, ապա ժամանակն է, որ լինեն, ասենք, հեռուստատեսային քննադատներ, որոնք արժեքավորեն, վերլուծեն կամ քննադատեն հեռուստատեսային այս կամ այն հաղորդումը, իրենց գործունեությամբ նպաստեն որակի բարձրացմանը։ Ցավալի է, որ մենք հազվագյուտ ենք ստանում իսկապես օգնող, մեր հաղորդումները ճշմարտացիության դիրքերից բնութագրող, արժեքավորող դիտողություններ պարունակող նամակներ։ Նամակների հեղինակներն, ավելի հաճախ իրենց ճաշակից ելնելով, կամ գովում են, կամ հողին հավասարեցնում այս կամ այն հաղորդումը, փորձում միակողմանիորեն թելադրել իրենց ցանկությունները։ Ոմանք հեռուստատեսությունը փորձում են դիտել լոկ որպես յուրօրինակ տնային կինոէկրան, ուրիշները իրենց ճաշակին համապատասխան ցանկանում են երաժշտական ծրագրերը սահմանափակել միայն որոշակի, ասենք գուսանական երաժշտությամբ։ Կարճ ասած, որքան մարդիկ, որքան հեռուստադիտող, այնքան ճաշակ, այնքան պահանջներ և ցանկություններ։ Ծայրահեղությունների մեջ ընկնող մարդիկ մոռանում են, որ ինչպես ամեն գիրք կամ թերթային հոդված չի կարող գլուխ գործոց լինել, այնպես էլ յուրաքանչյուր հեռուստատեսային կամ ռադիոհաղորդում չի կարող արժանանալ բոլորի ուշադրությանը և նորություն լինել։

Կոմիտեն այս տարի կանցկացնի մի շարք մրցույթներ, որոնք, մեր կարծիքով, բարերար դեր կխաղան նոր երգերի, պիեսների, ակնարկների ստեղծման ու մասսայականացման գործում։

«Հայկական ռադիոն» վերջին տարիներին չափազանց հանրահայտ դարձավ մեզ մոտ և արտասահմանում՝ նրան վերագրվող անեկդոտներով։ Սակայն, աստիճանաբար այն հայտնի է դառնում իր իրական գործունեությամբ։ լեհ, չեխոսլովակ, բուլղար ռադիոլսողները հատուկ ծրագրեր են լսել մեր հանրապետության մարդկանց ու առօրյայի մասին։ Գոհունակությամբ պետք է նշել սոցիալիստական երկրների ռադիոների և Հայաստանի ռադիոյի միջև ամրապնդվող համագործակցությունը։ Ռադիոօրեր են կազմակերպվել նաև

եղբայրական հանրապետություններում, որոնց ռադիոծրագրերը նույնպես հաճույքով են ընկալվել մեր ռադիոլսողների կողմից։ Ռադիոծրագրերի փոխանակությունն զգալի դեր է խաղում ժողովուրդների կուլտուրական մերձեցման, նրանց փոխհարստացման գործում։

## 2

Մերձավոր ու Միջին Արևելքի երկրների հայության և այլազգի բնակչության համար Երևանի ձայնն ամեն օր հնչում է մոտ հինգ ու կես ժամ՝ հայերեն և այլ լեզուներով։ Երևանի ձայնն ունկնդրում է նաև Եվրոպայի ու Ամերիկայի հայությունը՝ հայերեն, անգլերեն և ֆրանսերեն։

Արտասահմանի համար տրվող Երևանի ռադիոյի հաղորդումները պատմում են Սովետական Միության և, մասնավորապես, Սովետական Հայաստանի տնտեսական ու մշակութային զարգացման մասին, սփյուռքահայությանը հաղորդակից դարձնում այն ամենին, ինչ տեղի է ունենում հայ ժողովրդի կյանքում մայր հայրենիքում։ Երևանի ռադիոն իր գործունեությամբ սփյուռքահայության առանձին հատվածներին հաղորդակից է դարձնում նաև միմյանց կյանքին, կազմակերպում սփյուռքահայ գործիչների, գրողների կամ տուրիստների ելույթներ։

Մեր սփյուռքահայ հայրենակիցներն ունկնդրում են մեր «Խոսում են նամակները» հաղորդումը։ Եվ որքան նրանց է ուրախացնում Երևանի ձայնը, այնքան էլ մենք ենք գոհունակությամբ կարդում նրանց նամակները, ձգտում կատարել նրանց ցանկությունները։ Սփյուռքահայերի յուրաքանչյուր արձագանք ոգևորում է մեզ, համակում մեր աշխատողներին սփյուռքահայության համար ավելի լավ հաղորդումներ տալու ձգտումով։ Եվ մի՞թե մենք կարող ենք անտարբեր լինել մի այնպիսի նամակի նկատմամբ, որի մեջ Իրանի Ռեշտ քաղաքի բնակչուհի Էլիոնորա Գյողալյանը գրում է.

«Մեր կյանքի ամենամեծ հաճույքը՝ ամեն գիշեր Երևանից տրվող ծրագրերի ունկնդրումն է։ Չեմ կարծում, որ օտարության մեջ ապրող հայի համար ավելի նվիրական պահ լինի, քան այն, երբ հոգնած առօրյա կյանքի հոգսերից, հանգստանալով, լսում ես քո իսկ մայրենի լեզվով հայրենիքիդ նվիրական ձայնը։ Օ՜հ, ո՛չ, դուք չեք կարող զգալ այն ցնծությունն ու հրճվանքը, որ պատճառում եք մեզ, որովհետև դուք երջանիկ եք, ապրում եք հայրենիքում և չգիտեք օտարության դառնությունը»։

«Արտասահմանի համար եղող ձայնասփռումները,— Բեյրութից գրում է ճարտարապետ Դաղլյան Անդրանիկը,— անկասկած մեծ սատար են հանդիսանում սփյուռքը սերտորեն կապելով հայրենիքին։ Սփյուռքի հայ զանգվածն անհամբերությամբ սպասում է ամեն երեկո այն ժամին, երբ պիտի լսե հայրենիքի ձայնը, ավետաբեր կռունկը, որուն այնքան ծարավն էր զգում երկար ժամանակներե ի վեր»։

Այս նամակներում դրսևորվում են հայրենիքի նկատմամբ սփյուռքահայության ունեցած կարոտն ու նվիրումը, նրա հույզերն ու հայրենադարձվելու փափագը։ Նամակների հիման վրա ստեղծվող հաղորդումներում մեր ունկընդիրները լսում են իրենց հարազատների կենդանի ձայնը, իրազեկ դառնում նրանց կյանքին, աշխատանքին, առօրյային։

«Երևանի ձայնի» հարգելի սփյուռքահայ ունկնդիրներ. գրեցե՛ք մեզ ձեր



ցանկություններն ու տպավորությունները։ Հաճույքով կունկնդրենք ձեր խոսքը, կկազմակերպենք նոր հաղորդումներ, համերգներ՝ ձեր պատվերներով, կպատմենք այսօրվա մեր ծաղկող Սովետական Սոցիալիստական Հայաստանի բազմահարուստ կյանքի, առաջիկա հնգամյակում մեր աշխատավորության խնդիրների, այն պայծառ հեռանկարների մասին, որ հնգամյա պլանի կենսագործմամբ կբացվեն մեր հանրապետության համար։

Ինչպես մինչև այժմ, այսուհետև նույնպես, Երևանի ռադիոն կբերի հայրենի երկրի ձայնը, նրա ստեղծագործ ու բեղուն կյանքի արձագանքները։ Նրա ալիքներով սփյուռք կհասնեն հայ ժողովրդի անցյալի մռայլ, բայց մաքառման, հերոսապատումներով լի էջերը, նրա գոյատևման անխորտակելի կամքը, նրա պայքարը հանուն սոցիալական և ազգային ազատագրության։

Արտասահմանի համար տրվող հաղորդումներն ավելի են ամրապնդում բարգավաճող հայրենիք ունենալու գիտակցությունն ու ինքնավստահությունը, մեր ժողովրդի առջև խոստումնալից հեռանկարներ բացող հայ նոր, սոցիալիստական պետականության ընձեռած արժանապատվությունը։

Ահա թե ինչու այժմ հրամայական պահանջ է դարձել վճռականորեն բարելավել ռադիոհաղորդումների տեխնիկական բաղան, Սովետական Հայաստանի սահմաններից դուրս ապրող հայության համար ավելի լսելի դարձնել սոցիալիստական հայրենիքի ձայնը։

## 3

Հայաստանի ռադիոն արժանավայել մասնակցեց Հոկտեմբերյան հեղափոխության 49-րդ տարեդարձին նվիրված ռադիոֆեստիվալին։ Համամիութենական ռադիոյով տրված հաղորդումները բարձր գնահատականի արժանացան։ Այս տարի մայիսի 27-ին համամիութենական ռադիոն նորեն կորամադրվի մեր հանրապետությանը։

Տասնվեց ժամ տևողությամբ բազմապիսի հասարակական թեմաներով, երաժշտական, թատերական և այլ հաղորդումներով Հայաստանի ռադիոն կմասնակցի Մեծ Հոկտեմբերի 50-ամյակին նվիրված ռադիոֆեստիվալին։

Սովետական ժուռնալիստիկայի բոլոր օղակները, ինչպես և ռադիո և հեռուստատեսային ժուռնալիստիկան, վաղուց արդեն գտնվում են 50-ամյակի նախապատրաստության եռուզեռում։ Բազմաթիվ ու բազմանուն են մեր ժամանակի խոշորագույն իրադարձությունը նշանավորող հաղորդումները նաև Հայաստանի ռադիոլսողների և հեռուստադիտողների համար։

Հոկտեմբերի 50-ամյակին նվիրված թեմաները մշակվել և աշխատանքային հատուկ ծրագիր դարձած հաստատվել են կոմիտեում, որը և հանդիսանում է յուրաքանչյուր խմբագրության գործունեության հիմքը։

Այսպես, ուրեմն, ի՞նչ ենք արել մենք և ի՞նչ ենք պատրաստվում անել...

Դեպի մեծ Հոկտեմբերի 50-ամյակը խորագրով հաղորդումները կրել են տնտեսության ու կուլտուրայի աշխատողների հաջողություններն ընդհանրացնող, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքը պրոպագանդող, ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը, երիտասարդ սերնդի նպատակային դաստիարակությանը նպաստող բնույթ։ Այդպիսի հաղորդումներ են տրվել ու տրվում արդյունաբերական ձեռնարկություններից, գյուղատնտեսության բնագավառից, կուլտուրայի, գրականության ու արվեստի աս-

պարեզներից։ Հեռուստատեսային ստուդիան սկսել է հաղորդաշար **Հոկտեմբերյան տարեգրության էջեր** խորագրով։ Այդ շարքի յուրաքանչյուր հաղորդում ըստ տարիների ընդգրկում է Սովետական Հայաստանի զարգացման կարևոր փուլերը, համեմատությունների միջոցով արտացոլում նախասովետական ու Սովետական Հայաստանի կյանքը։ Դա հաղորդաշար է, ուր հիմնականում խոսում են փաստաթղթերը, իրադարձությունների մասնակիցներն ու ականատեսները։

Հիշարժան այլ աշխատանքներ ևս կարելի է նշել, սակայն բավարարվենք այսքանով, քանի որ հիմնական անելիքները դեռ առջևում են։

Առաջիկա տարին լինելու է աշխատանքային բարձր լարվածության շրջան նաև սովետական հեռուստատեսության համար։ Ամենօրյա բարձրարժեք հաղորդումների ապահովման հոգսերից զատ, բոլորի առջև դրված է անչափ պատասխանատու խնդիր՝ մեծ հոբելյանի նախապատրաստումը, մի շրջան, որ պետք է խոշոր խթան հանդիսանա հեռուստատեսային կինոֆոնդի հարստացման, այլ կերպ ասած՝ Մեծ Հոկտեմբերի հեռուստատեսային յուրատեսակ էպոպեա ստեղծելու համար։ Ստեղծվում է աշխատանքի երկու ճակատ՝ առօրյա հաղորդումներ և կինոֆոնդ։

Ավելի քան 300 անուն հաղորդումներ ու կինոնկարահանումներ են նախատեսված թեմատիկ ծրագրում, որոնց մի մասն արդեն իրականացվել է, մի խոշոր մասը գտնվում է իրագործման եռուն շրջանում. տարվում են մյուսների նախապատրաստական աշխատանքները։

**Հեղափոխության ճամփաներով** խորագիրը ենթադրում է հիմնականում կինոնովելների շարք՝ նվիրված Հայաստանի հեղափոխական նշանավոր վայրերին, ականավոր դեմքերին, հիշարժան իրադարձություններին։ Արդեն պատրաստ են այդ նովելներից մի քանիսի սցենարները և ընթացքի մեջ են նկարահանման աշխատանքները։

**Լենինյան բարեկամության թևերով** շարքն ստեղծողները նկատի ունեն ո՛չ միայն առանձին կինոնկարներ սովետական ժողովուրդների անխախտ բարեկամության մասին, այլ նաև հեռուստատեսային թեմատիկ երեկոներ՝ անդրկովկասյան ստուդիաների համատեղ ուժերով։

**Նրանք աշխատել են Լենինի հետ** վավերագրական կինոպատմվածքը ընթանալով Անդրկովկասում լենինյան գաղափարների հաղթական ուղու հետքերով, կամբողջացնի Մեծ Լենինի զինակիցներ Ստեփան Շահումյանի, Սուրեն Սպանդարյանի, Լալայանցի, Կնունյանցի, Կամոյի, Վահան Տերյանի, Կասյանի, Մյասնիկյանի, Լուկաշինի, Գայի, Աթարբեկյանի և այլ նշանավոր մարդկանց հեղափոխական կերպարները։

Հեղափոխության թեման կարտացոլվի նաև մի շարք այլ աշխատանքներում։ Լավ արձագանքի արժանացան **Նրանք երիտասարդ մնացին** կինոնկարը, ուր պատմվում է Երևանի պիոներական ջոկատներից մեկի սխրագործությունը Հայրենական պատերազմի ճակատներում, **Վերջին նետում** կինոնկարը, որը Կիևում տեղի ունեցած հեռուստաֆիլմերի համամիութենական առաջին ֆեստիվալում արժանացավ հատուկ մրցանակի։ Նկարահանվում են Մեծ հոկտեմբերի 50-ամյակին նվիրված մի քանի ֆիլմեր, **Ռազմի ճամփաներով** վավերագրական կինոնկարը, որ գծում է Հայկական Թամանյան 89-րդ դիվիզիայի հերոսական ուղին, **Առնո Բաբաջանյանը քո ժամանակակիցն է**, սովետական իշխանության տարիներին մեր հանրապետության, Երևան քաղաքի կյանքում



տեղի ունեցած, հիրավի, պատմական տեղաշարժերին նվիրված կինոնկարները, մի շարք վավերագրական կինոնկարներ **Լենինիանա** շարքից և այլն։

Թեմատիկ ծրագրում առանձին ուշադրություն է հատկացվել այսօրվա Հայաստանի կյանքի համակողմանի արտացոլմանը։ Առանձին հաղորդումներ և կինոնկարահանումներ կնվիրվեն Սովետական Հայաստանի տնտեսության, գիտության ու կուլտուրայի առավել զարգացած բնագավառներին, կստեղծվեն կինոակնարկ-դիմանկարներ մեր օրերի հերոսների մասին։ Դրանցում կընդգծվի, թե ինչպես են իրականացվել լենինյան պատգամները Հայաստանում և թե որն է մեր ժողովուրդների հզոր առաջընթացի քաղաքական-տնտեսական աղբյուրը։ Այդ առաջընթացը հպարտությամբ է համակում ո՛չ միայն մեր ժողովրդին, այլև ժամանակների դաժան բերումով աշխարհով մեկ ցրված տարագիր հայերին։ Հայրենադարձության թեման ևս պիտի դառնա առանձին կինոնկարի նյութ։

## 4

Հիրավի, հսկայական են մեր անելիքները ընթացիկ տարում։ Փառապանծ 50-ամյակը պարտավորեցնում է կոլեկտիվի յուրաքանչյուր անդամին ձգտել և հասնել ստեղծագործական վարպետության կատարելագործման նոր բարձունքների։ Սակայն ցանկությունները մի բան են, հնարավորությունները այլ բան։

Մեր հանրապետության հեռուստատեսության տասնամյա գոյությունը մենք նշեցինք՝ տակավին չունենալով հեռուստատեսային քիչ թե շատ նորմալ ստուդիա։ Անտարակույս մեր հեռուստադիտողների գերակշռող մասը գաղափար չունի թե ինչ պայմաններում են ստեղծվում ամենօրյա հաղորդումները։ Չէ՛ որ այսօրվա հեռուստատեսային կենտրոնը տեղավորված է մի քանի սենյակից բաղկացած շենքում, զուրկ ամենատարրական հարմարանքներից՝ արտադրական տեխնիկական համապատասխան պայմաններից։ Հեռուստատեսային հաղորդումների համար անհրաժեշտ ամենահամեստ պահանջներն անգամ չի կարող բավարարել այն միակ 60 քառակուսի մետրանոց ստուդիան, որտեղից դուք ամեն օր հաղորդումներ եք դիտում. մինչդեռ ըստ տեխնիկական կանոնադրության, հաղորդումներ պետք է տալ ոչ պակաս քան 150 քառակուսի մետրանոց ստուդիայից։ Հեռուստակենտրոնի սարքավորումները գործում են արդեն տասը տարուց ավելի, առանց էական վերակառուցման, առանց տեխնիկական առաջադիմության բարելավման ուղղությամբ քիչ թե շատ լուրջ քայլեր իրականացնելու։ Այս ամենին ավելանում է այն, որ ստուդիան շատ հեռու է քաղաքից, կան կազմակերպչական բազում բացեր, զգացվում է ցածր և միջին տեխնիկական մասնագիտական կադրերի խիստ պակաս, կան նաև բազմաթիվ այլ դժվարություններ։ Միայն հեռուստատեսային աշխատողների՝ ռեժիսյորների, խմբագիրների, օպերատորների գերլարված ջանքերով է հնարավոր դառնում ամենօրյա հաղորդումների ստեղծումը։

Գլխավոր հարցը, որն այսօր մեզ ամենից շատ է մտահոգում, հեռուստատեսային նոր ստուդիայի շինարարության ավարտումն է։ Շինարարությունն սկսվել է 1959 թվականից և դատապարտելի դանդաղկոտությամբ շարունակվում է մինչև այսօր։ Նոր ստուդիայի նախագծային հզորությունը հեռուստա-

դիտողներին հնարավորություն կընձեռի միաժամանակ օգտվել երկու ինքնուրույն և մեկ տրանսլյացիոն ծրագրից։ Նոր ստուդիան կունենա կինոարտադրական անհամեմատ մեծ հնարավորություններ, անհրաժեշտ այլ պայմաններ՝ 600 քառակուսի մետրանոց և մի շարք այլ ստուդիաներ։ Այս ամենը էապես կփոխի հաղորդումների որակը, դյուրություններ կստեղծվեն կոլեկտիվի համար՝ կարճ ժամկետում որակյալ հաղորդումներ տալու։

Սակայն շինարարության մինիստրության երրորդ տրեստը, ենթակապալառու բազմաթիվ կազմակերպություններ խախտում են բոլոր ժամկետները՝ իրենց դանդաղկոտությամբ, աշխատանքի ցածր կազմակերպվածությամբ ձախողում այդ ունիկալ և խիստ անհրաժեշտ կառույցը արագ և որակով շահագործման հանձնելու գործը։

Անցյալ տարի շինարարները պետք է իրացնեին 254 հազար ռուբլի, իրականում կատարեցին միայն 183 հազար ռուբլու աշխատանք։ Նոր ստուդիայի թանկարժեք սարքավորումների գերակշռող մասն ստացված է։ Զուտ շինարարական աշխատանքներն ավարտելու դեպքում միայն հնարավոր կլինի արագ տեղադրել սարքերը և հասնել ստուդիայի շինարարության ավարտին։

Առանց չափազանցության կարելի է ասել, որ համապատասխան մեխանիզմների, բանվորական ուժի լայն մոբիլիզացման աշխատանքները ինչպես հարկն է կազմակերպելու դեպքում հնարավոր է մի քանի ամսում ավարտել շենքի շինարարական, հարդարման աշխատանքները։ Սակայն մեր շինարարները, որ այնքան հիասքանչ կառույցներ են նվիրել հարազատ ժողովրդին, ստուդիայի ունիկալ կառույցին վերաբերվում են այնպես, ասես թե մի սովորական շինություն են ստեղծում։ Բացակայում է պատշաճ լրջությունը, բոլոր միջոցները գործի դնելու ցանկությունը, իսկ նրանց գործունեությունը ղեկավարող ու վերահսկող կազմակերպություններն ու մարդիկ հանդես չեն բերում պահանջկոտություն, բոլոր լծակները գործի դնելու պատրաստակամություն։ Հեռուստատեսային նոր ստուդիայի շահագործման հանձնումը մեծագույն իրադարձություն կհանդիսանա մեր հանրապետության կյանքում, էապես կփոխի աշխատավորության կուլտուրական սպասարկումը։



Մեր կոլեկտիվի առջև բարդ և պատասխանատու խնդիրներ են դրված․ պրոպագանդել կոմունիստական շինարարության ընթացքը, աշխատավորներին դաստիարակել մարքսիզմ-լենինիզմի գաղափարներին նվիրվածության ոգով, նրանց պատվաստել հասարակական մեծ խնդիրներն ըմբռնելու ունակություն, նպաստել սովետական մարդկանց կուլտուրական մակարդակի հետագա բարձրացմանը։ Մեր գործունեության գլխավոր նպատակն է այնպես անել, որ բանվորն ու մտավորականը, կոլտնտեսականն ու սովետական բանակի մարտիկն իրենց հոգեկան աշխարհով, իրենց աշխատանքային սխրանքներով մշտապես լինեն ռադիո և հեռուստատեսային հաղորդումների կենտրոնում։ Չի կարելի ասել, թե դա բոլոր օղակներին և միշտ է հաջողվում։ Սակայն տեսանելի տեղաշարժերը հուսադրող են և այսուհետև ռադիոյի ու հեռուստատեսային յուրաքանչյուր աշխատողի պարտքը պետք է լինի գրել և ցուցադրել հնգամյակի աշխատանքային հերոսական առօրյան, ամեն կերպ նպաստել կոմունիզմի ուղիով մեր երկրի առաջընթացին։



Վ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Տնտեսական գիտությունների թեկնածու

# ՍՍՀՄ-Ն ԱՐՏԱՔԻՆ ՇՈՒԿԱՅՈՒՄ

Սովետական Միությունը, կենսագործելով սոցիալ-տնտեսական տարբեր սիստեմներ ունեցող երկրների հետ խաղաղ գոյակցության քաղաքականություն, հետևողականորեն հանդես է գալիս արտասահմանյան երկրների հետ արտաքին առևտրական կապերի բազմակողմանի ընդլայնման օգտին։ Այժմ, երբ երկրագնդի բոլոր մասերում խաղաղության ուժերը պայքարում են պատերազմի սանձազերծման դեմ, առևտուրը կարող է միջազգային լարվածության թուլացման գործուն միջոց լինել։

Պետությունների միջև առևտրական ու տնտեսական այլ կապերի զարգացման օբյեկտիվ անհրաժեշտությունը, անկախ նրանց հասարակական կարգից, խարսխվում է աշխատանքի միջազգային բաժանման վրա։

Աշխատանքի բաժանումը զարգանում է հասարակության արտադրաուժերի աճի չափով։ Այդ ճիշտ է նաև աշխատանքի միջազգային բաժանման նկատմամբ։ «Փոխհարաբերությունները տարբեր ազգերի միջև կախված են այն բանից, թե նրանցից յուրաքանչյուրը ինչ չափով է զարգացրել իր արտադրաուժերը, աշխատանքի բաժանումը և ներքին հաղորդակցումը»,—մատնանշել են Կ. Մարքսն ու Ֆ. Էնգելսը (Немецкая идеология, Соч., т. 3, стр. 19):

Այստեղից հետևում է, որ միանգամայն սխալ է բուրժուական տնտեսագետների այն կոնցեպցիան, ըստ որի, իբր, փոխառևտուրը կարող է զարգանալ, ամենից առաջ, այն երկրների միջև, որոնք տնտեսության մեջ «փոխադարձաբար լրացնում են» միմյանց. նրանցից մեկը, ասենք, ինդուստրիալ երկիր է և արտահանում է մեքենաներ ու սարքավորումներ, մյուսը՝ ագրարային, համաշխարհային շուկա է բերում հումք ու պարեն։

Բուրժուական տնտեսագետները, ի պաշտպանություն իմպերիալիզմի, այդպիսի հերյուրանքների են դիմում մթագնելու կապիտալիստական աշխարհի աճող հակասությունների անժխտելի փաստը։ Համաշխարհային առևտրի հարցերի գիտակ, ամերիկացի պրոֆեսոր Ջ. Վայները հավաստում է, որ արդյունաբերությունը գյուղատնտեսության նկատմամբ ոչ մի ներքին առավելություն չունի ու այդ պատճառով էլ հարկ չկա, որ զարգացող երկրները ձգտեն ինդուստրացման, ստեղծեն սեփական արդյունաբերություն։ «Տնտեսական»

այդ հայտնությունները լիովին համապատասխանում են իմպերիալիստական մոնոպոլիաների պրակտիկային, որոնք ջանում են ստրկացնել գաղութային ու կախյալ երկրները։

Իրականում, որքան զարգացած են երկրի արտադրաուժերը, այնքան ավելի լայնորեն նա կարող է մասնակցել աշխատանքի միջազգային բաժանմանը, մեծ դեր խաղալ համաշխարհային շուկայում։

Այսպես. ՍՍՀՄ արտաքին առևտրի շրջանառության աճը հենվում էր սովետական էկոնոմիկայի ինտենսիվ զարգացման վրա, որն ապահովեց արտահանվող ապրանքների խիստ լայն շրջան և վճռեց երկրի ներմուծման հնարավորությունների աճը։

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը ՍՍՀՄ մասնակցությունը միջազգային առևտրին բավականաչափ նշանակալից էր առանձին ապրանքների գծով, հատկապես վառելիքա-հումքային ու պարենային. սակայն, ամբողջությամբ վերցրած, համաշխարհային շուկայում Սովետական Միությունը գրավում էր միայն տասնվեցերորդ տեղը։

Հետպատերազմյան շրջանում սովետական արտաքին առևտուրը բուռն վերելք ապրեց հատկապես վերջին հնգամյակում։ 1960 թվականին ՍՍՀՄ-ը միջազգային առևտրում վեցերորդ տեղում էր, իսկ 1963-ին՝ հինգերորդ, ԱՄՆ-ից, Անգլիայից, ԳՖՀ-ից, Ֆրանսիայից հետո։

Վերջին տարիներին ՍՍՀՄ-ը առևտուր է անում ավելի քան 90 երկրների, մինչդեռ 1959 թվականին՝ միայն 59 երկրների հետ։ 1963 թվականին ՍՍՀՄ արտաքին առևտրի շրջանառությունը 12,9 մլրդ ռուբլի էր, իսկ 1964-ին՝ 13,9 մլրդ։ Այս նշանակում է, որ ՍՍՀՄ արտաքին առևտրի ծավալը, 1958 թվականի համեմատությամբ, այսինքն՝ վերջին վեց տարիների ընթացքում, ավելացել է ավելի քան 75 տոկոսով։

Սովետական արտաքին առևտրի աճի տեմպերը արդյունք են ժողովրդական տնտեսության հաջող զարգացման։ Հարկ է նշել, որ ՍՍՀՄ արտաքին առևտուրն ավելի արագ է զարգանում, քան կապիտալիստական երկրների միջազգային առևտուրը, այդ են վկայում հետևյալ տվյալները։ ՍՍՀՄ արտաքին առևտրի շրջանառությունը, իր ֆիզիկական ծավալով, գերազանցեց մինչպատերազմյան 1938 թվականի մակարդակը ավելի քան 12 անգամ, մինչդեռ կապիտալիստական երկրների միջազգային առևտուրն այդ ժամանակամիջոցում մեծացել է մոտ երեք անգամ։

Համաշխարհային սոցիալիստական շուկայի աճող ռեզերվներն ու ծավալը իրենց վառ արտահայտությունն են գտնում սոցիալիստական երկրների միջև արտաքին առևտրի շրջանառության արագ ընդլայնման մեջ։

ՍՍՀՄ զանազան ապրանքների մատակարարումները սոցիալիստական երկրներին (քանակական արտահայտությամբ) մեծ չափերի են հասնում։ Այսպես. 1963 թվականին սովետական երկաթաքարի արտահանումը հասավ 20 մլն տոննայի, նավթամթերքներինը՝ 8 մլն, սև մետաղների գլանվածքինը՝ 2,9 մլն տոննայի և այլն։

ՍՍՀՄ համագործակցությունը համաշխարհային սոցիալիստական շուկայում փոխադարձաբար ձեռնտու բնույթ ունի։ 1963 թվականին մեր երկիրը ներմուծված արտասահմանյան բոլոր մեքենաների ու սարքավորումների գրեթե $^3/_4$-ը ԳԴՀ-ից է, Չեխոսլովակիայից, Հունգարիայից, Լեհաստանից և մյուս սոցիալիստական երկրներից։ Նավթամթերքների ու այլ վառելիքների, ծանր



արդյունաբերության անհրաժեշտ այլևայլ նյութերի գրեթե $^2/_3$-ը ՍՍՀՄ-ը ներմուծել է սոցիալիստական երկրներից։

1963 թվականին սոցիալիստական երկրների բաժինը մեր երկրի արտաքին առևտրի շրջանառության մեջ 70 տոկոս էր։ Ընդ որում, չորս տարի շարունակ առջևում էր Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը. նրա տեսակարար կշիռը 1963 թվականին 18,3 տոկոս էր։ Երկու երկրների արտաքին առևտրի շրջանառությունը վերջին հինգ տարիներին ավելացել է 60 տոկոսով և 1963 թվականին հասել 2356 մլն ռուբլու. այդ ավելի քան երկու անգամ գերազանցում է ՍՍՀՄ 1938 թվականի արտաքին առևտրի մակարդակը (համեմատական գներով) և գերակշռում շրջանառությունը այնպիսի երկրների միջև, ինչպիսիք են՝ ԱՄՆ-ն ու ԳՖՀ-ն, ԱՄՆ-ն ու Մեծ Բրիտանիան։

Արդյունաբերական հումքի ու սարքավորումների, ինչպես և այլ ապրանքների սովետական մատակարարումները ԳԴՀ-ի պահանջմունքների բավարարման գործում մեծ դեր են խաղում։ Վերջին հնգամյակում հանրապետությունը ներմուծման պահանջմունքները բավարարել է՝ նավթինն ու երկաթահանքինը՝ ավելի քան 90 տոկոսով, բամբակինն ու աղացված փայտեղենինը՝ 80—90, սև մետաղների ու թուջի գլանվածքինը՝ 70—80 տոկոսով, քարածխինն ու կոքսինը՝ 50։ Այդ ամենի հետ մեկտեղ Սովետական Միությունը ԳԴՀ-ին տեխնիկական օգնություն է ցույց տալիս մետալուրգիական, էներգետիկ և ժողտնտեսության այլ կարևորագույն ճյուղերի ընդլայնման ուղղությամբ։ Սովետական Միությունը իր հերթին ԳԴՀ-ից ներմուծում է մեքենաներ, գործիքներ ու սարքավորումներ, գնում է նավեր, արդյունաբերական էլեկտրաքարշեր, մարդատար վագոններ։

Մեծ տեմպերով է զարգանում առևտուրը Չեխոսլովակիայի հետ, որը ՍՍՀՄ արտաքին առևտրի մեջ երկրորդ տեղն է գրավում։ 1963 թվականին արտաքին առևտրի ծավալը երկու երկրների միջև ավելացել է 90 տոկոսով և կազմել 1620 մլն ռուբլի։

Չեխոսլովակիայի էկոնոմիկայի զարգացման համար, նրա համեմատաբար սահմանափակ հումքային բազաների ու ներքին շուկայի նեղության պայմաններում, Սովետական Միության հետ առևտրի ընդլայնումը խիստ կարևոր է։ Սովետական մատակարարումները հիմնականում բավարարում են երկրի ներմուծման պահանջմունքները. նավթինը՝ ավելի քան 90 տոկոսով, երկաթաքարինը՝ 70, բամբակինը՝ ավելի քան 40, էներգետիկ քարածխինը՝ 17 տոկոսով և այլն։

Միաժամանակ տարեցտարի ավելանում է մեքենաների ու սարքավորումների ներմուծումը ՉՍՍՀ-ից։ Չեխոսլովակյան մատակարարումները Սովետական Միություն ներմուծած մեքենաների ու սարքավորումների ողջ արժեքի $^1/_5$ մասն են կազմում։ Վերջին տարիներին ավելացել են նավթամշակման գործարանների, քիմիական ու գլանվածքային սարքավորումների, մագիստրալային էլեկտրաքարշների, ջերմաքարշների մատակարարումները ՍՍՀՄ։ Չեխոսլովակյան սարքավորումներն ու մեքենաները տեղակայված են Մոսկվայի ու Լենինգրադի, Ուկրաինայի ու Անդրկովկասի, Մերձբալթիկայի ու Սիբիրի ձեռնարկություններում։ Քիմիական ու նավթային, ինչպես նաև նավերի ու դրանց սարքավորումների մատակարարման վերաբերյալ երկարաժամկետ նոր համաձայնագրի ստորագրումը (մինչև 1970 թվականը) ամուր բազա կստեղծի

սովետա-չեխոսլովակյան արտաքին առևտրի կապերի հետագա զարգացման համար։

Մեծ թափ է ստացել ՍՍՀՄ առևտուրը Լեհաստանի, Բուլղարիայի, Հունգարիայի, Ռումինիայի և սոցիալիստական այլ երկրների միջև։

Ամրանում ու ծավալվում է Սովետական Միության առևտրա-տնտեսական համագործակցությունը Կուբայի Հանրապետության հետ։ 1963 թվականին ՍՍՀՄ ապրանքաշրջանառությունը Կուբայի հետ ավելացել է 3 անգամ և կազմել 500 մլն ռուբլի։ Մեծանում է Կուբա արտահանվող սովետական մեքենաների ու սարքավորումների տեսակարար կշիռը։ 1963 թվականին այն հասավ 35 տոկոսի, որի մոտ կեսը կոմպլեկտային ձեռնարկությունների սարքավորում է։ Օրինակ, կոմպլեկտային սարքավորումներ են մատակարարվել մետալուրգիական ու քիմիական արդյունաբերության, էլեկտրակայանների և շատ այլ ձեռնարկությունների շինարարության, վերակառուցման և ընդլայնման համար։ Սրանք, անշուշտ, երիտասարդ հանրապետության ժողտնտեսության համար կարևոր նշանակություն ունեն։

Միաժամանակ, Կուբան մեծ քանակությամբ շաքարի հումք է մատակարարում Սովետական Միությանը, դրանով զգալի չափով փոխհատուցում սովետական ապրանքների գնման իր ծախսերը։ 1964 թվականի հունվարին համաձայնագիր ստորագրվեց, որի համաձայն 1965—70 թթ. ընթացքում Կուբան Սովետական Միությանն է մատակարարելու 24 մլն տոննա շաքարի հումք։

Անշեղորեն հետևելով տարբեր հասարակարգ ունեցող պետությունների հետ խաղաղ գոյակցության լենինյան կուրսին, Սովետական Միությունը մշտապես հոգում է, որպեսզի ծավալվի առևտուրը զարգացող երկրների հետ։

Ինչպես հայտնի է, սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության սկզբունքներից մեկը հարստահարված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարին աջակցելն է։ Այդ սկզբունքը անշեղորեն կիրառվում է նաև զարգացող երկրների հետ Սովետական Միության տնտեսական հարաբերություններում։ Արդի պայմաններում, այն պետությունների ճնշող մեծամասնությունը, որոնք դեռ են շպրտել գաղութային շղթաներն ու կանգնել ինքնուրույն զարգացման ուղու վրա, դեռևս չեն պոկվել համաշխարհային կապիտալիստական տնտեսությունից, անկախ չեն իմպերիալիզմից, մոնոպոլիստական կապիտալի շահագործման օբյեկտ են։ Զարգացող երկրների տնտեսության վերելքի իրականացման համար դեռևս անբավարար են միջոցներն ու բարձրորակ կադրերը։ Նրանց արտաքին առևտուրը ցանկալի արդյունք չի տալիս, ինչպես արտահանման միջոցների սահմանափակության, այնպես էլ իմպերիալիստական մոնոպոլիաների կողմից կիրառվող գների ու դիսկրիմինացիայի քաղաքականության հետևանքով։

Սովետական Միության արտաքին տնտեսական քաղաքականությունը, ամենից առաջ, ուղղված է զարգացող երկրների տնտեսական առաջընթացին աջակցելուն, այն օգնում է նրանց՝ դուրս գալու օտարերկրյա կապիտալի ազդեցությունից, ապահովելու արտադրաուժերի անհրաժեշտ զարգացումը, բարձրացնելու բնակչության կենսամակարդակը։

Ասիայի, Աֆրիկայի, Լատինական Ամերիկայի երկրների հետ ՍՍՀՄ կնքած առևտրական պայմանագրերը, որպես կանոն, հիմնված են առավելագույն բարենպաստ սկզբունքի վրա։ Սովետական Միությունը զարգացող երկրներից միակողմանի որևէ զիջման և հատուկ արտոնության հետամուտ չի



լինում։ Սովետական մատակարարումների ցուցակներում մտցված են միայն այնպիսի ապրանքներ, որոնք անհրաժեշտ են այդ երկրների էկոնոմիկայի զարգացմանն ու բնակչության պահանջմունքների բավարարմանը։ Այնտեղ չկան այնպիսի ապրանքներ, որոնց ներմուծումը կարող է վնասել տեղական արտադրության զարգացմանը։ Զարգացող երկրները, իրենց հերթին, Սովետական Միություն են առաքում արտահանման տրադիցիոն ապրանքներ, որը հնարավորություն է տալիս նրանց ՍՍՀՄ-ից իրենց ներմուծումների վճարման համար ոսկի կամ ազատ վալյուտա չծախսել։ Միջկառավարական համաձայնագրերի հիման վրա ստեղծված ուղղակի առևտրա-տնտեսական համագործակցության շնորհիվ Սովետական Միության ապրանքաշրջանառության ծավալը զարգացող երկրների՝ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի հետ վերջին հինգ տարիներին ավելացել է 75 տոկոսով և կազմել 1400 մլն. ռուբլի։ Եթե ՍՍՀՄ-ը հետպատերազմյան առաջին տարիներին առևտրական երկու համաձայնագիր ուներ Արևելքի երկրների հետ, ապա այժմ առևտրական և վճարման համաձայնագրերի հիման վրա նա առևտուր է անում 35 զարգացող երկրների հետ։ Ընդ որում, Սովետական Միության առևտրի ամենամեծ տեսակարար կշիռը (60 տոկոս) ընկնում է Ասիայի երկրներին, այդ թվում՝ Հնդկաստանին, Ինդոնեզիային, Իրանին, Աֆղանստանին։ Հարկ է նշել, որ Ասիայի երկրների ապրանքաշրջանառության 40 տոկոսը Հնդկաստանինն է։ 1963 թվականին արտաքին առևտրի շրջանառությունը այդ երկրի հետ 340 մլն ռուբլի էր։ 1965 թվականի սկզբին ՍՍՀՄ և Հնդկաստանի միջև ապրանքների փոխմատակարարումների վերաբերյալ Դելիում համաձայնագիր կնքվեց, որի շնորհիվ ապրանքաշրջանառությունը պետք է մեծանար 500 մլն ռուբլով։ Այդ նշանակում է, որ Հնդկաստանը, առանց սոցիալիստական ճամբարի երկրների, Սովետական Միության հետ ապրանքաշրջանառության ծավալով առաջին տեղն է գրավում։

Մեր երկիրը Հնդկաստան է արտահանում գլխավորապես մեքենաներ ու սարքավորումներ, որի բաժինը այդ երկրի բոլոր մատակարարումների արժեքի 60 տոկոսից ավելի է։ Արդեն մի քանի տարի է, ինչ ՍՍՀՄ-ը Հնդկաստան է ուղարկում նավթամթերք, թուջ և սև մետաղների գլանվածք, գունավոր մետաղներ, քիմիական նյութեր, դեղորայք և անհրաժեշտ այլ ապրանքներ։ Դրանց փոխարեն մենք գնում ենք ինչպես հումք, այնպես էլ հնդկական ազգային արդյունաբերական ապրանքներ։ Անցյալ տարի Հնդկաստանից ներմուծվել է 20 հազար տոննա թեյ, ավելի քան 8 հազար տոննա սուրճ, 30 հազար տոննա ծխախոտ, 11 մլն հատ կաշի և շատ տարբեր հումքային ապրանքներ։

Առևտրական կապերը զգալի չափով ընդլայնվել են Աֆրիկայի մայր ցամաքի երկրների հետ, որոնց մասը զարգացող երկրների հետ Սովետական Միության ապրանքաշրջանառության ավելի քան 30 տոկոսն է կազմում։ Աֆրիկայում Սովետական Միությունը առևտուր է անում Արաբական Միացյալ Հանրապետության, Գանայի, Գվինեայի, Ալժիրի, Մարոկկոյի, Մալիի, Թունիսի, Սուդանի, Սոմալիի հետ։ Ընդ որում, ամենից շատ՝ ԱՄՀ-ի, որի մասը աֆրիկյան երկրների հետ ՍՍՀՄ ապրանքաշրջանառության 60 տոկոսն է կազմում։ Այստեղ արտահանման հիմնական ապրանքները մեքենաներն ու սարքավորումներն են։ Եվ դա պատահական չէ։ Հայտնի է, որ դրանք անհրաժեշտ են այն երկրներին, ուր զարգանում է ազգային էկոնոմիկան։ Նկատի

ունենալով այդ, սովետական արտաքին առևտրի կազմակերպությունները զարգացող երկրներին մեքենաներ ու սարքավորումներ են վաճառում վճարման արտոնյալ պայմաններով։ Սովետական ապրանքների վաճառքից ստացված գումարով մենք Աֆրիկայից գնում ենք կակաո, սուրճ, ցիտրուս, համեմունք, խցանափայտի հումք, բուրդ, բամբակ։ Այս ամենը հարստացնում է մեր ներքին առևտրի ասորտիմենտը և շատ անգամ ուրույն տեղ գրավում ներքին ապրանքաշրջանառության մեջ։ Այսպես, ցիտրուսների ներմուծման մասը ներքին առևտրում մոտ 85 տոկոս է, թեյինը՝ 1/3, կաշվե կոշիկինը՝ 20 տոկոս և այլն։ Հավանաբար ոչ բոլորը գիտեն, որ մեր հրուշակեղենի գործարանների շոկոլադն ու շոկոլադեղենը պատրաստվում են գլխավորապես Գանայի կակաոյից։

Իմպերիալիստական պետությունները, ֆինանսական կամ տնտեսական օգնություն ցույց տալով զարգացող երկրներին, ձգտում են իրականացնել նեոգաղութատիրական քաղաքականություն և, առաջին հերթին, ելնում են իրենց քաղաքական, տնտեսական ու ստրատեգիական շահերից։ Սովետական Միությունը, ընդհակառակը, աշխատում է իրավահավասար համաձայնություն հաստատել, իր համար առանց որևէ արտոնության։ Սովետական օգնության չափերի մասին կարելի է դատել հետևյալ օրինակից. ՍՍՀՄ օժանդակությամբ զարգացող երկրները կառուցել ու կառուցում են մոտ 500 արդյունաբերական ձեռնարկություն և այլ օբյեկտներ։

Զարգացող երկրների կառույցներից կարևոր են մետալուրգիական արդյունաբերության օբյեկտները։ Ավելի քան 33 մլն տոննա պողպատ են արտադրելու ՍՍՀՄ տեխօգնությամբ արտասահմանում կառուցված կամ կառուցվող ձեռնարկությունները։

Երիտասարդ ազգային պետություններին տրամադրած Սովետական Միության վարկի ընդհանուր գումարը մոտ 3 մլրդ ռուբլի է։ Սովետական վարկերը, որպես կանոն, տրվում են տարեկան ապառիկի 2,5 տոկոսի չափով և մարվում 12 տարում, հիմնականում տրադիցիոն ապրանքներով։ Եթե նկատի առնվի, որ Արևմուտքի երկրները վարկի համար գանձում են տարեկան 4—7 տոկոս, ազատ վալյուտայի հատուցմամբ, ապա սովետական վարկերի առավելությունները զարգացող երկրների համար միանգամայն ակնհայտ են դառնում։

Սովետական վարկերը, մեծ մասամբ, ծախսվում են տնտեսության պետական սեկտորի կարևորագույն ճյուղերի ձեռնարկությունների շինարարության վրա։ Իսկ նեոգաղութատիրական քաղաքականություն վարող կապիտալիստական պետությունները խոչընդոտում են զարգացող երկրներում ծանր արդյունաբերության ստեղծմանը։ Դրա պերճախոս վկայությունն է, օրինակ, զարգացող երկրներին օգնություն ցույց տալու պրոբլեմն ուսումնասիրող հանձնաժողովի զեկույցը ԱՄՆ-ի կոնգրեսին։ Զեկուցման մեջ ուղղակի ասված է. «Ասիական-Աֆրիկյան աղեղի երկրներում, թերևս բացի Ճապոնիայից, խոշոր արդյունաբերական նախագծեր չպետք է իրագործվեն։ ԱՄՆ-ի արդյունաբերական ողջ օգնությունը պետք է սահմանափակվի մանր արդյունաբերությամբ»։

Իմպերիալիստական պետությունների նեոգաղութատիրական քաղաքականության զինանոցում քիչ տեղ չի հատկացվում մաքսային սիստեմին։ ՄԱԿ-ի հաշվումներով ԱՄՆ-ը, Անգլիան, Ճապոնիան, Բելգիան, Հոլանդիան, ԳՖՀ-ն,



Ֆրանսիան և Իտալիան 800—900 միլիոն դոլար եկամուտ են ստանում զարգացող երկրները ներմուծվող ապրանքների մաքսատուրքերից։ Պատահական չէր, որ այդ երկրների ներկայացուցիչները առևտրին ու նրա զարգացմանը նվիրված ՄԱԿ-ի ժնևյան կոնֆերանսում համառորեն պահանջում էին վերացնել այն բոլոր պատնեշները, որոնք արգելակում են նրանց առևտրի զարգացմանը։ Կապիտալիստական պետությունները չհարգեցին այդ պահանջները, որոնք սակայն մեծ աջակցություն գտան սովետական պետության կողմից։

1965 թվականի հունվարի 1-ից ՍՍՀՄ-ը վերացրեց զարգացող երկրներից ներմուծվող ապրանքների մաքսատուրքերը։ Ընթացիկ հնգամյակը, 1966—1970 թվականները, բոլոր զարգացող երկրների հետ Սովետական Միության տնտեսական համագործակցության լայն հեռանկարների ու փոխառևտրի արագ աճի հնգամյակ կլինի։ Սովետական տնտեսագետները հաշվել են, որ զարգացող երկրների հետ ՍՍՀՄ ապրանքաշրջանառությունը մինչև 1970 թվականը կարող է հասնել 3,3 մլրդ ռուբլու։

Սովետական Միությունը, ղեկավարվելով խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքներով, հետևողականորեն հանդես է գալիս որպես համաշխարհային առևտրի զարգացման ջատագով նաև կապիտալիստական երկրների հետ, իսկապես իրավահավասար և փոխադարձ ձեռնտու հիմունքներով։

Վերջին հինգ տարիների ընթացքում կրկնապատկվել է ՍՍՀՄ առևտրի ծավալը զարգացած արդյունաբերություն ունեցող կապիտալիստական երկրների հետ և 1963 թվականին կազմել 2,4 մլրդ ռուբլի, իսկ դրա տեսակարար կշիռը երկրի արտաքին առևտրի շրջանառության մեջ այդ ժամանակամիջոցում աճել է 19 տոկոսով։

ՍՍՀՄ-ը առևտրական մեծ կապերի մեջ է Ֆինլանդիայի, Անգլիայի, Ճապոնիայի, ԳՖՀ-ի, Իտալիայի, Ֆրանսիայի, Շվեդիայի և Ավստրիայի հետ։ Բոլոր այս երկրների հետ առևտուր է արվում երկարատև համաձայնությունների հիմունքներով։ Տնտեսական համագործակցության զարգացման անցյալ տարիների փորձը ցույց է տվել, որ տարբեր սոցիալ-տնտեսական սիստեմներ ունեցող երկրների միջև երկարատև համաձայնության բազայի վրա հիմնված առևտուրը ոչ միայն հնարավոր է, այլև նպաստում է ավելի կայուն ու ամուր տնտեսական կապերի հաստատմանը։ Զարգացած կապիտալիստական երկրների հետ տնտեսական կապեր հաստատելիս առևտրական միավորումների միջև երկարատև պայման կապելու պրակտիկան ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում։ Նման համագործակցության շնորհիվ մի կողմից՝ ֆիրմաներն ապահովվում են երկարաժամկետ պատվերներով, կայուն հեռանկարներ է ստեղծվում դրանց ապրանքների սպառման համար, մյուս կողմից՝ առևտրական կազմակերպությունները ապահովվում են պլանավորված ներմուծվող ապրանքներով։

Սովետական Միությունը գործարանների սարքավորումների և արդյունաբերության բազմաթիվ ճյուղերի մեխանիզմների խոշոր գնորդ է։ Ինդուստրիալ կապիտալիստական երկրներից ներմուծվող մեքենաների ու սարքավորումների տեսակարար կշիռը 1958 թվականի 29,5 տոկոսից 1963 թվականին հասավ 41,4 տոկոսի։ Այսպես, յոթնամյակի հինգ տարում մեր երկիրն են ներմուծվել շաքարի 47 գործարան, տարեկան 3,3 մլն տոննա ընդհանուր հզորությամբ։ Համեմատության համար կարելի է նշել, որ ՍՍՀՄ շաքարի ողջ արտադրությունը դեռևս 10 տարի առաջ մոտավորապես այդքան էր։ Կամ մի այսպիսի

փաստ։ Վերջին հինգ տարիներին մեր երկրի ժողտնտեսությունը ստացել է մոտ 600 նավ-տանկեր, ձկնորսական, բեռնատար նավեր։

Այս ամենի հետ մեկտեղ, Սովետական Միությունը անսպառ բնական հարստություններ ունի և համաշխարհային շուկայում թանկարժեք հում նյութերի մատակարար է, որոնք մեր գնումների վճարման համար անհրաժեշտ վալյուտայի աղբյուր են։ Մեր երկիրը արտահանում է մեծ քանակությամբ փայտեղեն, նավթ ու նավթամթերք, քարածուխ, ասբեստ, հացահատիկ և այլն։ Ապրանքների այս խումբը մեր արտահանման արժեքի կեսից ավելին է։

Արդեն մի քանի տարի է, ինչ ՍՍՀՄ արտաքին առևտրի շրջանառության մեջ զարգացած արդյունաբերություն ունեցող կապիտալիստական երկրներից Ֆինլանդիան առաջին տեղն է գրավում։ Տասնհինգ տարի է Սովետական Միությունը երկարաժամկետ համաձայնագրի հիմունքներով է առևտուր անում Ֆինլանդիայի հետ, որն ապահովում է փոխառևտրի խսկական աճ։ Անցյալ տարի 1966—1970 թթ. ժամանակաշրջանների համար Ֆինլանդիայի հետ արդեն չորրորդ առևտրական պայմանագիրը կնքվեց։ Դրա համաձայն հնգամյակի ընթացքում արտաքին առևտրի շրջապտույտը 2 մլրդ ռուբլի է կազմելու։

Սովետական արտահանման կարևորագույն պարագաներ են՝ պինդ և հեղուկ վառելիքը, սև մետաղների գլանվածքը, գունավոր մետաղները, մետաղամշակման հաստոցները, բեռնատար և մարդատար ավտոմեքենաները, անտառանյութը։

Սովետական Միությունը գրեթե լրիվին բավարարում է Ֆինլանդիայի այնպիսի ապրանքների ներմուծման պահանջները, ինչպիսիք են՝ հացահատիկը, շաքարը, իսկ մի շարք այլ ապրանքների հետ միասին նավթի և նավթամթերքների, մետաղների խոշոր մատակարար է։

Սովետական Միությունը, իր հերթին, Ֆինլանդիայի նավաշինական, մեքենաշինական և կաբելի արդյունաբերության արտադրանքի հիմնական գնորդն է։ Ընթացիկ տարում սովետական սպառողը Ֆինլանդիայից կստանա ավելի քան 20 նավ, բարձրորակ լարեր արտադրող Բայկալի կոմբինատի երկրորդ հերթի կոմպլեկտային սարքավորում, սարքավորումներ ու մեքենաներ՝ ցելյուլոզ-թղթի արդյունաբերական ձեռնարկությունների համար։ Զգալիորեն կմեծանա ժողսպառման ապրանքների՝ գործվածքեղենի, կաթնամթերքի գնումը և այլն։

Ֆինլանդիայի հարևանների՝ Սկանդինավյան երկրների հետ նույնպես Սովետական Միությունը առևտրական կապերի մեջ է։ 1964 թվականի փետրվարին, Մոսկվայում ապրանքափոխանակության երկարաժամկետ համաձայնագիր ստորագրվեց (1965—1970 թթ.) Շվեդիայի հետ։ Այդ համաձայնագիրը ընթացիկ հնգամյակի փոխառևտրի հիմքը դրեց։ Այժմ շվեդական մեքենաներն ու սարքավորումները օգտագործվում են ՍՍՀՄ մի շարք խոշոր ձեռնարկությունների կառույցներում (օրինակ, Բրատսկի անտառարդյունաբերական կոմպլեքսի շինարարությունում)։ Շվեդական ֆիրմաները ՍՍՀՄ-ին են մատակարարում նավեր, որակյալ պողպատ, ցելյուլոզ։ Այս տարի կավելանա կոշկի, գործվածքների և ժողսպառման այլ ապրանքների ներմուծումը։

Մեր առևտրական հարաբերությունները զարգանում են նաև սկանդինավյան մյուս երկրների հետ։ 1965 թվականին Նորվեգիայի հետ երեք տարվա համաձայնություն է կնքվել, որը նախորդ ժամանակաշրջանների համեմատու-



թյամբ առևտրի 60 տոկոսի աճ է նախատեսում։ 1963 թվականի նոյեմբերին փոխմատակարարումների վեց տարվա համաձայնություն կնքվեց։

Վերջին տարիներին ՍՍՀՄ արտաքին առևտրի մեջ առաջին տեղերից մեկը գրավում է Անգլիան։ Պատմության մեջ առաջին անգամ 1959 թվականին ՍՍՀՄ-ի և Անգլիայի միջև կնքված ապրանքափոխանակության համաձայնագիրը բարերար ներգործություն ունեցավ երկու երկրների միջև առևտրի զարգացման վրա։ 1963 թվականին փոխադարձ ապրանքաշրջանառությունը հասավ 310 մլն ռուբլու։ Անգլիա արտահանվող սովետական ապրանքների ավելի քան 50 տոկոսը անտառանյութ է, ցելյուլոզի թղթի ապրանքներ ու մորթեղեն։ Կարևոր տեղ են գրավում նաև գունավոր մետաղները, պահածոները, գորգեղենը, ժամացույցներն ու ֆոտոապարատները։ Սովետական Միությունը Անգլիայից ներմուծում է մեծ մասամբ մեքենաներ ու սարքավորումներ։ Այդ ամենի հետ մեկտեղ մեր երկիրը Անգլիայից ներմուծում է զգալի չափով սև մետաղներ, քիմիական, ինչպես նաև ժողսպառման արդյունաբերական ապրանքներ։

Մեքենաշինական արդյունաբերության բեռնվածությունն ապահովելու նպատակով Ֆրանսիան հետևեց Անգլիայի օրինակին և երկարատև վարկ տրամադրեց մատակարարվող սարքավորումների վճարման համար։ 1965 թվականի փետրվարին պայմանագիր ստորագրվեց, որի համաձայն Իտալիան ես ՍՍՀՄ-ին բանկային երկարատև վարկ տրամադրեց։

Բավարար չափով են զարգանում առևտրական հարաբերությունները Ֆրանսիայի ու Իտալիայի հետ։ Անցյալ տարվա հոկտեմբերին համաձայնագիր ստորագրվեց Սովետական Միության և Ֆրանսիայի միջև՝ 1965—70 թթ. ընթացքում ապրանքների փոխադարձ մատակարարումների վերաբերյալ։ Հընգամյա այս առաջին համաձայնությունը ապրանքաշրջանառության զգալի աճ է նախատեսում (հինգ տարվա մեջ մոտ 70 տոկոս)։ Զգալի չափով մեծացել են ապրանքների փոխմատակարարումները, ընդ որում, սովետական կողմից այնպիսի ապրանքներինը, ինչպես նավթն ու նավթամթերքն է, պատրաստի ապրանքները, մեքենաներն ու սարքավորումները։ Ֆրանսիան պետք է մատակարարի արդյունաբերական սարքավորումներ, որոնք անհրաժեշտ են քիմիական, թեթև ու սննդի արդյունաբերության զարգացման նախատեսված ծրագրի արագ կատարման համար։

Իտալիա արտահանվող հիմնական ապրանքներից են նավթն ու նավթամթերքները, ածուխը։ Դրանք արտահանման ծավալի գրեթե $^3/_5$-ն են կազմում։ Իտալիա են արտահանվում նաև պողպատ, սև մետաղների գլանվածք, աղացված փայտեղեն, բամբակ և ուրիշ ապրանքներ։ Իտալիայից ներմուծումների $^3/_5$-ը մեքենաներ ու սարքավորումներ են։ Իտալիայից գնվում է նաև տեքստիլ հումք, ցիտրուսներ, բրդե գործվածքներ, կոշիկ և այլն։

Սովետական Միության և զարգացած արդյունաբերություն ունեցող կապիտալիստական երկրների միջև առևտրի ներկա մակարդակը, անշուշտ, չի սպառում եղած հնարավորությունները։

Սովետական Միության և մյուս սոցիալիստական երկրների հետ Միացյալ Նահանգների ռեակցիոն շրջանների և արևմտա-եվրոպական մի շարք երկրների վարած առևտրի դիսկրիմինացիոն քաղաքականությունը բացասաբար է անդրադառնում արտաքին առևտրի շրջանառության վրա և չի նպաստում տնտեսական կապերի բարելավմանը։

Վերջերս, առևտրա-քաղաքական պայմանների վատթարացման հետևանքով, Սովետական Միության արտաքին առևտրի շրջանառությունը Գերմանական Ֆեդերատիվ Հանրապետության հետ կրճատվել է 17 տոկոսով: Սովետական Միության արտաքին առևտրի շրջանառությունը ԱՄՆ-ի հետ 1963 թվականին կազմել է ընդամենը 47,4 մլն ռուբլի: Ընդ որում, ներմուծվող ապրանքների կեսից ավելին նավթային կոքս է, կաշվե հումք և այլն: Այնպիսի կարևորագույն հոդված, ինչպիսին մեքենաների ու սարքավորումների ներմուծումն է ԱՄՆ-ից, փաստորեն, բացառվում է:

Մինչդեռ, հայտնի է, որ Սովետական Միությունը համաշխարհային շուկայում մեքենաների ու սարքավորումների խոշոր գնորդ է: Չնայած Միացյալ Նահանգների ռեակցիոն շրջանների վարած դիսկրիմինացիային, Սովետական Միության հետ առևտրի ընդլայնման տենդենցը լայն ուղի է բացում: ԱՄՆ-ի գործարար շրջանները ևս շահագրգռված են դրանում:

1963 թվականի վերջերին, երբ Սովետական Միություն ժամանեց ամերիկյան բիզնեսմենների խումբը, «Ջեներալ Ֆուդզ կորպորեյշեն»-ի պրեզիդենտ Չոնսե Ու. Կուկը, հանրագումարի բերելով ամերիկյան բոլոր բիզնեսմենների գործարար վճռականությունը՝ հայտարարեց. «Ես գտնում եմ, որ Ռուսաստանի հետ կարելի է լավ առևտուր անել և երկու կողմերն էլ պետք է ավելի շատ հավատ ընծայեն միմյանց: Անհրաժեշտ է ծավալել ապրանքափոխանակությունը. ՍՍՀՄ ու ԱՄՆ-ը միայն կօգտվեն դրանից: Մենք Ձեզ հետ կարող ենք առևտրական մեծ գործեր վարել: Եթե հարցնեք ամերիկացիներին՝ ուզո՞ւմ են նրանք այդ, ապա պատասխանը կլինի՝ այո՛»:

Արտաքին առևտրի կապերի զարգացումը խաղաղ գոյակցության և բոլոր երկրների հետ գործարար համագործակցության հուսալի հիմք է: Սովետական մարդիկ և ողջ առաջավոր մարդկությունը հետևողականորեն պաշտպանում են խաղաղության սուրբ գործը և անկեղծորեն ցանկանում, որ առևտրի բարոմետրը միշտ պարզ ցուցումներ տա:





Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ

# ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ԿԱՌՈՒՑՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Սոցիալիզմի կառուցումը մեր երկրում ընթացել է ընդհանուր օրինաչափություններով, իսկ առանձին ազգային հանրապետություններում դրսևորել է նաև իր առանձնահատկությունները, որոնք հետևանք էին տարբեր ազգերի ու ժողովուրդների պատմական զարգացման ու տեղական պայմանների յուրահատկությունների:

Կյանքը ցույց տվեց, որ շահագործող դասակարգերի տիրապետության կործանումն ու հասարակական կարգերի արմատական վերափոխումը անհնարին են առանց իսկական հեղափոխական, մարքսիստական կուսակցության առկայության, առանց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ապահովման, առանց սոցիալիստական հեղափոխության իրականացման ու պրոլետարիատի դիկտատուրայի ստեղծման:

Պրոլետարիատի դիկտատուրան և կոմունիստական կուսակցությունն այն հզոր գործոններն էին, առանց որոնց անհնար էր նոր կյանքի կերտումը, սոցիալիզմի հաղթանակը:

Այս առումով կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ սոցիալիստական հեղափոխության հաղթանակը և սովետական իշխանության, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը Հայաստանում սոցիալիզմի կառուցման ընդհանուր և պարտադիր օրինաչափությունների կոնկրետ դրսևորումն էին: Սակայն, պետք է նշել այն առանձնահատկությունը, որ Հայաստանի աշխատավորությունը հին կարգերը տապալեց ոչ թե միայնակ, այլ ռուս մեծ ժողովրդի, Ռուսաստանում արդեն գոյություն ունեցող և ամրապնդվող սովետական իշխանության օգնությամբ:

Այնուհետև, Հայաստանում սովետական կարգերի հաստատման առաջին շրջանում անմիջապես չստեղծվեցին բանվորական, գյուղացիական ու զինվորական դեպուտատների սովետներ, ինչպես այդ տեղի ունեցավ Ռուսաստանում: Այստեղ ընտրովի սովետների փոխարեն ստեղծվեցին հեղափոխական կոմիտեներ՝ վերից-վար: Հանրապետության հեղափոխական կոմիտեն (Հայաստանի հեղկոմ) նշանակովի օրգան էր, որը ստեղծվեց զինված ապստամբության առաջին օրերին: Հեղկոմը Հայաստանը հռչակեց սովետական (1920 թ. նոյեմբերի 29-ի դեկլարացիայով) և ստանձնեց հանրապետության պետական բարձրագույն իշխանության ֆունկցիաները: Հայաստանի հեղկոմի անմիջա-

կան գլխավորությամբ կարճ ժամանակում վերացվեց հին իշխանության պետական ապարատը և ձևավորվեց նոր իշխանության՝ պրոլետարիատի դիկտատուրայի պետական մեքենան։

Հայաստանի Հեղկոմը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Սովետական Ռուսաստանի օրինակով, ստեղծեց ժողովրդական կոմիսարիատներ, նշանակեց կոմիսարներ, կազմեց գավառային, քաղաքային ու գյուղական հեղափոխական կոմիտեներ և նրանց տվեց իշխանության ֆունկցիաներ։ Ազգայնացվեցին արդյունաբերությունը, տրանսպորտը, հողը, նրա ընդերքը, անտառները, կուլտուր-լուսավորական հաստատությունները, եկեղեցին անջատվեց պետությունից, դպրոցը՝ եկեղեցուց և այլն։ Դրանք սովետական իշխանության առաջին քայլերն էին, սոցիալիզմի կառուցման սկիզբը Հայաստանում։

Ստեղծված իրադրությունը և այնուհետև դաշնակների 1921 թվականի փետրվարյան ավանտյուրան հնարավորություն չէին ընձեռում նորմալ շարունակելու սոցիալիստական շինարարությունը, հեղկոմներից անցում կատարելու իշխանության ընտրովի օրգանների սիստեմին։ Այդ անցումը կատարվեց միայն 1922 թվականի սկզբներին, երբ կայացան սովետների տեղական, շրջանային և հանրապետական համագումարները։



Սոցիալիստական շինարարությունը Հայաստանում սկսվեց ներքին ու արտաքին բարդ իրադրության պայմաններում։ Իշխանությունը վերցնելուց հետո, մի շարք հայտնի պատճառներով, հնարավոր չէր անմիջապես վերացնել տնտեսական այն ահավոր քայքայվածությունը, որ ժառանգություն էր մնացել անցյալից, մանավանդ դաշնակների անփառունակ տիրապետության շրջանից։ Քայքայված ժողովրդական տնտեսություն, հարյուր հազարավոր գաղթականներ, տասնյակ հազարավոր որբեր, շարունակվող պարենային ճգնաժամ, տեղ-տեղ բռնկվող համաճարակներ...

Բացի այդ, դաշնակները դեռ շարունակում էին իշխել Զանգեզուրում, մենշևիկները՝ Լոռիում, իսկ Ալեքսանդրապոլն ու նրա գավառը հեծում էին թուրքական օկուպանտների լծի տակ։ Ստեղծված բարդ իրադրության պատճառով բանակի, բանվորների, արդյունաբերության, ինչպես նաև այլ կարիքների բավարարման համար Հայաստանի կոմկուսակցությունն ու սովետական կառավարությունը ստիպված անցան ռազմական կոմունիզմի քաղաքականության (1920 թ. դեկտեմբերի սկզբներից մինչև 1921 թ. կեսերը)։

Սակայն, 1921 թվականի փետրվարին իրենց արևմտյան տերերի հրահրմամբ դաշնակներն ավանտյուրա սկսեցին։ Նորից հայ ժողովուրդը կանգնեց ֆիզիկական բնաջնջման անդունդի եզրին։

Այդ ժամանակ Սովետական Ռուսաստանը կրկին եղբայրական ձեռք մեկնեց աշխատավորական Հայաստանին։ Եղբայրական ռուս ժողովրդի և սովետական մյուս ժողովուրդների օգնությունը Հայաստանի աշխատավորության կենսական էր, տևական և հարաճուն։ Առանց այդ օգնության հնարավոր չէին սովետական իշխանության հաղթանակն ու ամրապնդումը, ժողովրդական տնտեսության վերականգնումն ու սոցիալիստական շինարարության ծավալումը Հայաստանում ու ամբողջ երկրամասում։



Հայտնի է, որ իմպերիալիստական և քաղաքացիական պատերազմների, ինչպես նաև բուրժուա-նացիոնալիստական մարիոնետային կառավարությունների վարած հակաժողովրդական քաղաքականության հետևանքով, սովետական իշխանության հաստատման մոմենտին Անդրկովկասում առանց այն էլ հետամնաց ժողովրդական տնտեսությունը ծայրաստիճան քայքայված էր, բանվոր դասակարգի մի մասը ապադասակարգայնանում և գյուղ էր գնում։ Նախկինում, ցարական գաղութային քաղաքականության հետևանքով, երկրամասի, ինչպես և Հայաստանի արդյունաբերությունը թույլ էր զարգացած, ժողտնտեսության մեջ գերակշռում էր գյուղատնտեսությունը՝ խիստ հետամնաց տեխնիկայով։

Ահա թե ինչու, Վ. Ի. Լենինը 1921 թվականի ապրիլի 14-ին Կովկասի կոմունիստներին ուղղած իր հայտնի նամակում որոշակիորեն ընդգծում էր, որ «Կովկասյան հանրապետություններն է՛լ ավելի գյուղացիական երկրներ են, քան Ռուսաստանը» (Полное собрание сочинение, т. 43, стр. 198—199)։

Ելնելով վերոհիշյալից, Լենինը Կովկասի կոմունիստներին խորհուրդ էր տալիս՝ ի տարբերություն Ռուսաստանի, ավելի մեղմություն, զգուշություն ու զիջողականություն ցուցաբերել մանր բուրժուազիայի, ինտելիգենցիայի և, հատկապես, գյուղացիության նկատմամբ, ավելի դանդաղ, ավելի զգույշ և ավելի սիստեմատիկ անցում կատարել դեպի սոցիալիզմ։

Լենինի այդ խորհուրդները Կովկասի ու Հայաստանի կոմունիստներն ստացան այն ժամանակ, երբ Սովետական Ռուսաստանում, կուսակցության X համագումարի որոշումների հիման վրա, ռազմական կոմունիզմից անցում էր տեղի ունեցել նոր տնտեսական քաղաքականության, իսկ Անդրկովկասում այն դեռևս չէր սկսվել։ Երկրամասի դասակարգային ուժերի փոխհարաբերության և դրա սոցիալ-տնտեսական վերոհիշյալ առանձնահատկության ճշգրիտ հաշվառման հիման վրա, կոմունիստները մեծ ուշադրություն էին նվիրում հատկապես գյուղացիության շահերի պաշտպանությանը։

Փետրվարյան ավանտյուրայի ջախջախումից երեք ամիս անց, բարեփոխվեց գյուղացիների դրությունը. մտցվեց ազատ առևտուր, արգելվեցին հացահատիկի սերմացուի, պարենամթերքների բռնագրավումները, ապա նաև՝ ամեն կարգի բռնագրավումները։ Այս բոլորը, միաժամանակ, հող նախապատրաստեց ռազմական կոմունիզմից նոր տնտեսական քաղաքականությանը՝ նէպին անցնելու համար, որն օրենքի ուժ ստացավ պարենհարկի մասին Հայաստանի Հեղկոմի 1921 թվականի հունիսի 24-ի դեկրետով։ Ըստ դեկրետի, բոլոր չքավորական տնտեսություններն ազատվում էին պարենհարկից, իսկ միջակ տնտեսություններին՝ արտոնություններ էին տրվում, խրախուսվում էր նրանց տնտեսական նախաձեռնությունը։ Այդ ամենի նպատակը նյութական շահագրգռվածության խթանումն էր, գյուղատնտեսության, քաղաքի և գյուղի միջև վերսկսված առևտրի ու ապրանքաշրջանառության աշխուժացումը, արդյունաբերության ու տրանսպորտի վերականգնման համար համապատասխան պայմաններ ստեղծելը։ Այստեղ էլ ժողտնտեսության զարգացումն սկսվեց գյուղատնտեսության վերականգնումից, մի բան, որ օրինաչափ էր ամբողջ սովետական երկրի համար։

Սակայն Հայաստանում ինչպես ռազմական կոմունիզմի, այնպես էլ նոր

տնտեսական քաղաքականության կիրառումն ունեցավ իր յուրահատկություն-
ները: Ռազմական կոմունիզմի քաղաքականությունը Հայաստանում համե-
մատաբար կարճ տևեց: Ռուսաստանում ստեղծվել էին չքավորական խմբակներ
(комбеды), իսկ այստեղ դրանց անհրաժեշտությունը չկար, որովհետև մի
կողմից առկա էր Կարմիր բանակի և ռուս ու մյուս եղբայրական ժողովուրդ-
ների ուղղակի և անուղղակի օգնությունը, մյուս կողմից՝ կարճ տևեցին քաղա-
քացիական կռիվները:

Ինչ վերաբերում է Հայաստանում նոր տնտեսական քաղաքականությանն
անցնելու և նրա կիրառման յուրահատկություններին, ապա պետք է ասել, որ
ռազմական կոմունիզմից նոր տնտեսական քաղաքականության անցնելն ա-
վելի դանդաղ ընթացավ, քան Ռուսաստանում: Ինչպես հայտնի է, Ռուսաստա-
նում նէպը օրենքի ուժ ստացավ X համագումարից հետո, իսկ Հայաստանում
դրան խանգարեց նախ փետրվարյան ավանտյուրան, ապա դրա հետևանքով
երկրում ստեղծված ծանր տնտեսական իրադրությունը: Ավելի քան չորս ամիս
տևեց անցման այդ պրոցեսը:

Վ. Ի. Լենինը գտնում էր, որ կոնցեսիաների քաղաքականության միջոցով
անհրաժեշտ է տնտեսապես օգտագործել կապիտալիստական Արևմուտքը: Սա-
կայն Հայաստանում մերժվեցին բոլոր մոնոպոլիստական ընկերությունների
կոնցեսիոն անընդունելի պայմանները և այդպիսի ձեռնարկություններ չստ-
տեղծվեցին: Այդ պատճառով էլ այստեղ գործում էր ո՛չ թե հինգ տնտեսական
կացութաձև, ինչպես Ռուսաստանում, այլ չորս: Սա նոր տնտեսական քաղա-
քականության, սոցիալիստական շինարարության որոշակի առանձնահատկու-
թյունն էր Սովետական Հայաստանում:

Դեռևս 1921 թվականին Անդրկովկասում ստեղծվեցին առևտրի, երկաթու-
ղային տրանսպորտի և տնտեսական այլ ճյուղերի կառավարման համատեղ
օրգաններ: Երկրամասի ժողովուրդների տնտեսական ջանքերի միավորմանը
զուգընթաց սկսվեց նրանց քաղաքական միավորումը: 1922 թվականին ձևա-
վորվեց Անդրկովկասյան ֆեդերացիան, ապա ծավալվեց ՍՍՀՄ ստեղծելու հա-
մաժողովրդական շարժումը:

Անդրֆեդերացիայի և ՍՍՀՄ ստեղծումը խոշոր նշանակություն ունեցան
ողջ երկրի, այդ թվում և Հայաստանի ժողտնտեսության արագ վերականգնը-
ման, սոցիալիստական շինարարության ու անցման շրջանի խնդիրների հաջող
լուծման համար:

ՍՍՀՄ ստեղծմամբ բոլոր ժողովուրդները լայն ու ռեալ հնարավորություն-
ներ ստացան համատեղ ջանքերով ծավալելու սոցիալիզմի կառուցման գործը:
Այդպիսի պայմաններում Հայաստանի կոմունիստական կուսակցությունը
աչալրջորեն հաշվի էր առնում դասակարգերի և սոցիալական խավերի ուժերի
հարաբերակցությունը, հմտորեն լուծում սոցիալիզմի կառուցման լենինյան
պլանից բխող գործնական խնդիրները: Ռուս մեծ ժողովրդի օգնությամբ, հաղ-
թահարելով պարենային ճգնաժամը, ֆինանսական քաոսն ու տնտեսական մի
շարք դժվարություններ, Հայաստանի աշխատավորությունն ամբողջովին
նվիրվել էր խաղաղ տնտեսական շինարարությանը: Վերացել էր բանվորների
ապադասակարգայնացումը, աստիճանաբար ամրանում էր հանրապետության
փոքրաթիվ, բայց զորացող բանվոր դասակարգը, արագորեն բարելավվում էր
գյուղի աշխատավորական խավերի տնտեսական դրությունը: Մյուս կողմից՝
որոշ չափով աշխուժանում էին գյուղի և քաղաքի կապիտալիստական-նեպմա-



նական, կուլակային տարրերը: Կուսակցության VIII—X համագումարների
որոշումների հիման վրա հաջողությամբ կիրառվում էր գյուղացիության վերա-
բերյալ լենինյան լոզունգը՝ ամուր դաշինք միջակի հետ, հենվելով չքավորու-
թյան վրա՝ ընդդեմ կուլակի:

Կուսակցության քաղաքականության ճիշտ կենսագործման շնորհիվ,
վերականգնման շրջանի վերջերին, Հայաստանում ևս տեղի ունեցան տնտեսա-
կան ու քաղաքական խոշոր տեղաշարժեր: Արագորեն վերականգնվում էր ժո-
ղովրդական տնտեսությունը, աճում բանվոր դասակարգի ու գյուղացիության
քաղաքական ակտիվությունն ու տնտեսական ձեռներեցությունը, ստեղծվում
էր դասակարգային ուժերի նոր հարաբերակցություն: Բանվոր դասակարգի
քանակական ու որակական աճին զուգընթաց չքավոր գյուղացիության քանա-
կական կրճատման հաշվին գյուղը միջականում էր: Ի տարբերություն կապի-
տալիստական գյուղի, չքավորությունը ո՛չ թե գնում էր մասսայական աղքա-
տացման, այլ, սովետական պետության ուղղակի օգնության շնորհիվ, տըն-
տեսապես զորանում և անցնում էր միջակի շարքերը: Իհարկե, միջակ գյու-
ղացիության որոշ մասն էլ ուռճանում, կիրառում էր վարձու աշխատանք և
որոշ դեպքերում լրացնում կուլակության շարքերը: Չնայած դրան, ամրա-
պնդվում էին տնտեսության սոցիալիստական սեկտորի դիրքերը, «ով—ում»-ի
պրոբլեմը լուծվում էր հօգուտ սոցիալիստական տարրերի: Այս երևույթները
ընդհանուր օրինաչափություններ էին ամբողջ սովետական երկրի, այդ թվում
և Հայաստանի համար:

Ժողովրդական տնտեսության վերականգնման տեմպերը Հայաստանում
համեմատաբար բարձր էին, հակառակ դեպքում, հնարավոր չէր լինի արա-
գորեն դուրս գալ քայքայված վիճակից և սովետական մյուս հանրապետու-
թյուններին համընթաց ավարտել վերականգնման պրոցեսը:

***

Երկրի ինդուստրացմանը անցնելուց հետո սոցիալիստական շինարարու-
թյան տեմպերը մեզ մոտ ավելի ուժեղացան: Ինդուստրացման կուրսը՝ սովե-
տական բոլոր հանրապետություններում արդյունաբերական հզոր օջախներ
ստեղծելու միջոցով, պետք է նպաստեր ազգերի՝ անցյալից ժառանգած կուլ-
տուրական ու տնտեսական փաստական անհավասարության վերացմանը:
Անդրկովկասում և Հայաստանում երկրի ինդուստրացումը դիտվում էր
իբրև համընդհանուր, համամիութենական խնդիր և ամեն ինչ արվում էր եղած
սեփական հնարավորությունները ռեալ իրականություն դարձնելու համար:
Այդ տեսակետից բնորոշ են Հայկոմկուսի Կենտկոմի 1926 թվականի հունվար-
յան ընդլայնված պլենումի որոշումները, որտեղ ուղղակի ասված էր, թե Հա-
յաստանը երկրի ինդուստրացման պրոբլեմի լուծմանը կարող է և պետք է
մասնակցի պղնձի արդյունաբերության զարգացման, շինանյութերի ու էժան
էլեկտրաէներգիայի արդյունաբերության ստեղծման միջոցով:

Եվ իրոք, Անդրկովկասում բացի գունավոր մետալուրգիայի, մանգանի,
ածխի ու նավթարդյունաբերության ձեռնարկություններից, չկային քիչ թե շատ
հզոր մեքենաշինական գործարաններ: Ամբողջ երկրամասում թեթև և սննդի
արդյունաբերությունից ստացված արտադրանքն զգալիորեն գերակշռում էր
խոշոր արդյունաբերության արտադրանքից: Չնայած ծանր արդյունաբերու-

թյան զարգացման նպատակով կատարվող խոշոր կապիտալ ներդրումներին, ինդուստրացման առաջին տարիներին թեթև արդյունաբերությունն ավելի արագ էր զարգանում։ Ի տարբերություն Ռուսաստանի, որտեղ արդյունաբերության վերականգնմանը զուգընթաց վերակառուցվում էին մեքենաշինական հին գործարանները և կառուցվում նորերը, Անդրկովկասում, կապիտալ ներդրումները գերազանցապես ծախսվում էին նոր ինդուստրիալ օջախներ ստեղծելու համար։ Ընդ որում, այդ ներդրումների առյուծի բաժինը տրվում էր սննդի, թեթև արդյունաբերության այլ ճյուղերի ձեռնարկություններին[1]։ Սրանք Անդրկովկասում (նաև Հայաստանում) սոցիալիզմի կառուցման տվյալ շրջանի առանձնահատուկ և բնորոշ կողմերն էին։

Ինդուստրացման առաջին տարիներին հիմնականում ավարտվեցին Ալավերդու և Ղափանի լեռնահանքային և պղնձի արդյունաբերության վերականգնման աշխատանքները։ Առաջին և երկրորդ հնգամյակներին Հայաստանը հետամնաց, ագրարային երկրից վերածվեց ինդուստրիալ-ագրարային երկրի, իսկ հետպատերազմյան հնգամյակներին դարձավ սոցիալիստական ինդուստրիալ երկիր։

Հայաստանում սոցիալիզմի կառուցման առանձնահատկություններից մեկն էլ այն էր, որ ինդուստրացման պրոցեսն սկսվեց հետամնաց արդյունաբերության և խիստ ցածր մակարդակի պայմաններում. երկրի ինդուստրացմանը հանրապետությունը մասնակցեց մի կողմից՝ շարունակելով վերականգնել արդյունաբերությունը, մյուս կողմից՝ արդյունաբերական նոր ձեռնարկություններ կառուցելով։ Արդյունավետ զարգացնելով թեթև, սննդի, շինանյութերի, գունավոր մետալուրգիայի, քիմիական, մեքենաշինության և արդյունաբերության այլ ճյուղեր, Հայաստանը եղբայրական սովետական հանրապետությունների օգնությամբ ստեղծեց իր ծանր արդյունաբերությունը, որի միջուկը արտադրամիջոցներ արտադրող ձեռնարկություններն էին։

Նէպի երկրորդ փուլում Հայաստանում (ինչպես և ամբողջ երկրում) սուր դրվեց գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման խնդիրը։ Անհրաժեշտ էր արագ զարգացնել գյուղատնտեսությունը, վերացնել նրա ետ մնալը արդյունաբերությունից։ Այդ նպատակով վճռական քայլեր կատարվեցին տնտեսության սոցիալիստական սեկտորի դիրքերն ամրապնդելու ուղղությամբ։ Ստեղծվեցին բազմաթիվ նոր սովխոզներ ու կոլտնտեսություններ. խրախուսվեց հանրային արտադրությունը։

1929 թվականի վերջերին բեկում սկսվեց կոլտնտեսային շինարարության մեջ։ Կուսակցությունը կուլակության սահմանափակման և արտամղման քաղաքականությունից անցավ նրա՝ որպես դասակարգի, լիկվիդացման քաղաքականությանը։ Սակայն Հայաստանում (ինչպես և մյուս հանրապետություններում) կոլտնտեսային շինարարության բնագավառում թույլ տրվեցին սխալներ ու կոպիտ աղավաղումներ։ Խախտելով կամավորության լենինյան սկզբունքները, հաճախ գյուղատնտեսության արտելից թռիչք կատարելով դեպի կոմունա, Հայաստանում 2—3 ամսվա ընթացքում կոլեկտիվացվեց գյուղացիական տնտեսությունների 60 տոկոսը, լիկվիդացվեց կուլակությունը. ընդ որում, երբեմն միջակ գյուղացիությանը շփոթում էին կուլակի հետ, իսկ կոլ-

---

1 Տե՛ս Անդրկովկասի կոմունիստական կազմակերպությունների հինգերորդ համագումարը, Թիֆլիս, 1928, էջ 27—28։



տնտեսությունների զգալի մասը թույլ էր ու անկազմակերպ։ Սակայն հետագայում շտկվեցին թույլ տրված սխալները և գյուղի կոլեկտիվ տնտեսությունների կյանքն ընթացավ իր նորմալ հունով։

Ղեկավարվելով Վ. Ի. Լենինի 1921 թվականի ապրիլի 14-ի նամակի և կոոպերացիայի մասին դրույթներով, Հայաստանի կոմունիստական կուսակցությունը մինչև համատարած կոլեկտիվացումը կիրառում էր կամավորության սկզբունքը, հաշվի առնում աշխատավոր գյուղացիության կարիքները, հանրապետության տեղական պայմանների յուրօրինակությունները։ Սակայն համատարած կոլեկտիվացման շրջանում մի պահ մոռացվեցին տեղական առանձնահատկությունները, նրա տնտեսական ու կուլտուրական ցածր մակարդակը (երկրի կենտրոնական շրջանների համեմատությամբ)։ Այստեղ նույնիսկ հաշվի չառնվեցին հանրապետության առանձին շրջանների յուրահատկությունները և միատեսակ պահանջներ ներկայացվեցին քաղաքներին, շրջկենտրոններին, երկաթուղային ու խճուղային տրանսպորտին մոտիկ գտնվող առաջավոր և հեռավոր, խուլ անկյուններում գտնվող գյուղերի նկատմամբ։ Արարատյան դաշտի գյուղերը տնտեսական ու կուլտուրական տեսակետից ավելի լավ էին նախապատրաստված կոլեկտիվացմանը, քան լեռնային ու նախալեռնային շրջաններինը։ Եթե առաջիններում կուտակված էր կոոպերացման բավականաչափ փորձ, կար բավարար նյութատեխնիկական բազա, բարձր էր կուլտուրական մակարդակը, կային պատրաստի կադրեր, ապա լեռնային ու նախալեռնային գյուղերում ընդհակառակը, դրությունը միանգամայն այլ էր. նրանք պատրաստ չէին մասսայական կոլտնտեսային շարժմանը։

1930 թվականի երկրորդ կեսից Հայաստանում նոր էտապ սկսվեց. այս կամքով էր կոլտնտեսություն մտնում։ անգամ արդեն գյուղացին սեփական ամրապնդվում էին տնտեսապես և Կոլտնտեսություններն աստիճանաբար կատարված էր հանրապետության կազմակերպորեն։ Այդ ժամանակ արդեն կոլեկտիվացման առաջին հնգամյա պլանը, իսկ երկրորգյուղատնտեսության կարգը լրիվին հաղթանակեց Հայաստանի գյուղդի վերջերին կոլտնտեսային կազմակերպական-տնտեսական ամրապնդումը րում։ Կոլտնտեսությունների կենտրոնական շրջաններում։ տեղի ունեցավ նույն կարգով, ինչ երկրի

Այսպիսով, Հայաստանում գյուղի սոցիալիստական վերակառուցումը տեղական առանձնահատկություններով հանդերձ, ընթացավ նույն օրինաչափություններով, ինչ ողջ Միության մեջ։

Հայաստանում ժողովրդական տնտեսության տեխնիկական վերակառուցման պրոցեսն ավելի դանդաղ ընթացավ, քան գյուղատնտեսության սոցիալիստական վերափոխումը։ Չնայած դրան, կոլտնտեսությունների համար անհրաժեշտ կադրերը, որ ստեղծվել էին գերազանցապես համատարած կոլեկտիվացման շրջանում, երկար ժամանակ չէին բավարարում գյուղի աճող պահանջները. շատ կոլտնտեսություններ ապահովված չէին բարձրորակ ղեկավար աշխատողներով։

Հայաստանում և ողջ ՍՍՀՄ-ում կոլտնտեսային շինարարությունը ծավալվեց կուլակության դեմ մղվող դասակարգային պայքարի պայմաններում, որն ամեն կերպ դիմադրում էր կոլտնտեսային կարգերի ամրացմանը, երբեմն նրան հաջողվում էր թափանցել կոլտնտեսություն և ներսից պայթեցնել այն։

Ահա թե ինչու կուսակցությունն իրականացրեց համատարած կոլեկտիվացման հիման վրա կուլակությունը որպես դասակարգ վերացնելու քաղաքականությունը:



Սոցիալիզմի կառուցման ընդհանուր օրինաչափություններից մեկն էլ կուլտուրական հեղափոխության իրագործումն էր: Կուլտուրական հեղափոխության պրոբլեմը սոցիալիզմի կառուցման լենինյան պլանի բաղկացուցիչ մասերից է և նրա լուծումը՝ այդ պլանի իրականացման պարտադիր պայմանը:

Հայաստանում կուլտուրական հեղափոխությունն սկսվեց հանրապետության տնտեսական ու կուլտուրական հետամնացության պայմաններում: Բավական է ասել, որ եթե 1922—23 թթ. Ռուսաստանում անգրագետների թիվը կազմում էր բնակչության մոտ մեկ քառորդը, ապա Հայաստանում այն հասնում էր մոտ չորս հինգերորդի: Բնակչության ազգային կազմի բազմազանությունը, դպրոցական ու կուլտուր-լուսավորական հաստատությունների փոքրաքանակ լինելն ու դրանց նյութական թույլ բազան, համապատասխան ազգային կադրերի պակասը և այլն լրացուցիչ դժվարություններ էին ստեղծում կուլտուրական հեղափոխությունը իրականացնելու գործում: Սովետական կարգերի հաստատումից հետո դպրոցական ու կուլտուր-լուսավորական գործը պետությունը վերցրեց իր ձեռքը և միջոցներ կիրառեց դպրոցական ցանցի, ուսումնական նորանոր հաստատությունների ստեղծման, անգրագիտության վերացման կայանների, ինչպես նաև միջնակարգ ու բարձրագույն կրթության սիստեմի ստեղծման ու ընդարձակման միջոցով ծավալելու կուլտուրական հեղափոխությունը: 1930-ական թվականների կեսերին Հայաստանում հիմնականում լիկվիդացվեց անգրագիտությունը. ստեղծվեց տարրական, միջնակարգ ու բարձրագույն հաստատությունների գիտահետազոտական ինստիտուտների լայն ցանց, առաջացան կուլտուրայի, գիտության, արվեստի ու գրականության նոր օջախներ, ուր պատրաստվում էին ժողովրդական տնտեսության համար անհրաժեշտ կադրեր: Ստեղծվել ու ձևավորվել էր նոր, սովետական, բավականաչափ ստվար ինտելիգենցիա: Տեղի ունեցող կուլտուրական հեղափոխությունը Հայաստանում օգնում էր երկրի ինդուստրացման ու գյուղատնտեսության սոցիալիստական վերակառուցման պրոբլեմների լուծմանը:

Ձեռք բերված խոշոր նվաճումների շնորհիվ Հայաստանը դարձավ հզոր ինդուստրիա և հանրային արդիական գյուղատնտեսություն ունեցող առաջավոր սոցիալիստական հանրապետություն, որն այժմ մեր մեծ երկրի կոմունիստական հաղթական շինարարության ակտիվ մասնակիցներից է:

Սոցիալիզմի կառուցումը ՍՍՀՄ-ում մեր անծայրածիր հայրենիքի ժողովուրդների մեծագույն նվաճումն է, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հաղթանակի մարմնացումը, սովետական մարդկանց ու կոմունիստական կուսակցության՝ աշխարհի աշխատավոր մարդկության հանդեպ ունեցած ինտերնացիոնալ պարտքի կատարման պայծառ օրինակը:

Կ. ՈՒԴՈՒՄՅԱՆ

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՕԳՆՈՒԹՅՈՒՆԸ ԶԱՐԳԱՑՈՂ ԵՐԿՐՆԵՐԻՆ

Գաղութային և կիսագաղութային լուծը թոթափած ժողովուրդների հետ կնքած եղբայրական դաշինքը, ասված է ՍՄԿԿ ծրագրում, սովետական ժողովուրդը դիտում է որպես իր միջազգային քաղաքականության անկյունաքարերից մեկը: Այդ դաշինքը հիմնված է սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման կենսական շահերի ընդհանրության վրա:

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս պետությունները, հավատարիմ պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարներին, բազմակողմանի և անշահախնդիր օգնություն են ցույց տալիս ազգային անկախության, ազատության ու առաջադիմության համար պայքարող ժողովուրդներին:

Դա արտահայտվում է, ամենից առաջ, այն բանում, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հիմնովին թուլացրել է իմպերիալիզմի դիրքերը և միջազգային բարենպաստ պայմաններ ստեղծել ազգային-ազատագրական շարժումների համար: Երկրորդ, սոցիալիստական պետությունները մեծ հաստատակամությամբ աջակցել են գաղութային լուծը թոթափած այն երկրներին, որոնց անկախությանը սպառնացել է իմպերիալիզմը. երրորդ, սոցիալիստական երկրները տնտեսական ու գիտատեխնիկական վիթխարի օգնություն են ցույց տալիս տնտեսապես թույլ զարգացած երկրներին՝ ժամանակակից ինքնուրույն էկոնոմիկա ստեղծելու, գաղութակալական շահագործման հետևանքներն արմատապես վերացնելու համար:

Ազգային պետություն ստեղծած ժողովուրդների համար պայքարը հանուն տնտեսական ինքնուրույնության և քաղաքական անկախության մղվում է առաջին պլանի վրա: Տնտեսական հետամնացության հաղթահարումը և կապիտալիստական տարրերից անկախ էկոնոմիկայի ստեղծումը ո՛չ միայն տնտեսական, այլև քաղաքական կարևոր հարց է, քանի որ այն վերաբերում է ազգային-ազատագրական շարժման համաշխարհային զարգացման բովանդակությանը: Ազգային-ազատագրական պայքարը սուր ծայրով արդեն ուղղված է ո՛չ միայն գաղութակալական կառավարող ռեժիմի, այլև կապիտալի բուն էության՝ միջազգային շահագործման տնտեսական հիմքերի դեմ: Գաղութակալության լուծը թոթափած երկրների պայքարը տնտեսական անկախության համար, որը քաղաքական անկախության գրավականն է, տեղի է ունենում դժվարին պայմաններում: Հարյուրամյակների գաղութային տիրապետության հետևանքով, այդ երկրները, ազգային անկախություն նվաճելու պահին, զուրկ

ջին արտադրության ժամանակակից անհրաժեշտ միջոցներից և բարձրորակ գիտատեխնիկական սեփական կադրերից:

Իմպերիալիզմի սպասարկուները զարգացող երկրների այդ վիճակից դուրս գալու ելքը տեսնում են մասնավոր կապիտալի ներմուծման մեջ: Բայց դա այլ բան չէ, եթե ոչ նեոգաղութատիրություն: Միակ ճիշտ և հաստատուն ճանապարհը սեփական, ինդուստրիալ բազային ապավինած էկոնոմիկայի ստեղծումն է: Այդ նպատակն է հետապնդում և Սովետական Միության ու սոցիալիստական մյուս երկրների օգնությունն ազգային անկախություն նվաճած, բայց տնտեսապես թույլ երկրներին:

Սոցիալիստական լագերի տնտեսական կապերը և համագործակցությունն ազատագրված երկրների հետ սկզբունքորեն նոր տիպի հարաբերություններ են, որոնք հիմնված են բարեկամության, ազգային անկախությունը և արժանապատվությունը հարգելու, ներքին գործերին չմիջամտելու, իրավահավասարության, անշահախնդրության վրա: ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս պետությունների կողմից զարգացող երկրներին ցույց տրվող օգնությունը սահմանափակում է իմպերիալիստներին որոշ զիջումներ անել նրանց, նեղացնում է թելադրանքի և ազատագրված երկրների ներքին գործերին միջամտելու իմպերիալիստական քաղաքականության ներգործության շրջանակները:

Սոցիալիստական երկրների տնտեսական օգնությունը ուղղված է, ամենից առաջ, ազատագրված երկրների ինդուստրացմանը, արտադրաուժերի զարգացմանը, ամրապնդում է պետական սեկտորը, տնտեսական շինարարության մեջ հիմք է դնում պլանավորման սկզբունքներին, ուժեղացնում ոչ-կապիտալիստական զարգացման տենդենցները, հնարավորություն է ընձեռում կատարելու սոցիալ-տնտեսական առաջադիմական վերափոխումներ:

Սոցիալիստական լագերի և ազատագրված երկրների միջև տնտեսական կապերի զարգացումը մեծ նշանակություն ունի արդիականության երկու հակաիմպերիալիստական հեղափոխական ուժերի՝ սոցիալիզմի և ազգային-ազատագրական շարժման միասնության ամրապնդման, նրանց քաղաքական ու տնտեսական շահերի ընդհանրության ուժեղացման գործում:

Հայաստանը, որը մինչև սովետական իշխանության հաղթանակը գտնվում էր գաղութային խղճուկ վիճակում և ներմուծում էր նույնիսկ ասեղն ու մատնոցը, թելն ու կոճակը, ներկայումս ՍՍՀՄ մյուս ժողովուրդների հետ մեկտեղ բարեկամաբար օգնում է զարգացման ինքնուրույն ուղի թևակոխած երկրներին՝ ստեղծելու ազգային էկոնոմիկա, պատրաստելու գիտատեխնիկական սեփական, բարձրորակ կադրեր: Ասիայի և Աֆրիկայի երկրների հետ Սովետական Միության կնքած համաձայնագրերին համապատասխան, 1965 թվականին Սովետական Հայաստանը այդ մայր ցամաքների 27 երկրներն (Հնդկաստան, Ինդոնեզիա, Պակիստան, Աֆղանստան, Իրաք, Կամբոջա, Նեպալ, Միատան, Ինդոնեզիա, Պակիստան, Աֆղանստան, Իրաք, Կամբոջա, Նեպալ, Միացյալ Արաբական հանրապետություն, Ալժիր, Թունիս, Սոմալի, Գանա, Հաբեշստան, Կոնգո (Բրազավիլ), Մալի) է արտահանել շարժական էլեկտրակայաններ, ուժային տրանսֆորմատորներ, սինխրոնային գեներատորներ, հիդրոպոմպեր, զանազան մարկաների հաստոցներ, էլեկտրաչափիչ գործիքներ և այլն: Սակայն զարգացող երկրներին Սովետական Միության ցույց տված օգնությանը Սովետական Հայաստանի մասնակցությունը չի սահմանափակվում միայն արտաքին մատակարարումներով: Սովետական իշխանության տարիներին արդյունաբերության, տեխնիկայի, գիտության բնագավառներում



ձեռք բերված նվաճումները հնարավորություն են ընձեռում, արտաքին զուտ առևտրական կապերից բացի, գաղութակալության լուծը թոթափած առանձին երկրների աջակցել արդյունաբերական նոր ձեռնարկությունների, էլեկտրակայանների ու զանազան կառույցների շինարարության գործում: Ազգային ազատագրության ուղին բռնած երկրներին ՍՍՀՄ անշահախնդիր եղբայրական օգնության կենդանի օրինակ է Ասուանի հիդրոէներգետիկ կոմպլեքսի շինարարությունը, որը եգիպտական ժողովրդի երազների իրականացումն է:

Այդ շինարարությանն իր մասնակցությունն ունի նաև Սովետական Հայաստանը: 1960 թվականից սկսած հանրապետության 20 ձեռնարկություն կառույցի համար առաքել են 28 անուն արտադրանք: 1961—1965 թվականներին Ասուանի կառույցի մատակարարումների ծավալը եռապատկվել է:

Միայն Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանը 1963 թվականին ուղարկել է 13 հազար կիլովատ-ամպեր ընդհանուր կարողություն ունեցող ուժային տրանսֆորմատորներ:

Հանրապետության արդյունաբերական ձեռնարկությունները Ասուանի բոլոր պատվերները կատարում են ժամկետից շուտ: 1965 թվականին Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանի կոնստրուկտորներն արտահանման համար նախագծեցին նոր տիպի հզոր տրանսֆորմատորներ, որոնք կտեղադրվեն Ասուան—Կահիրե նոր կառուցվող էլեկտրահաղորդման գծում: Ասուանում հիմնականում տեղադրված են Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական, սարքաշինական, էլեկտրաշարժիչների և էլեկտրաճշգրիտ սարքերի գործարանների արտադրած սինխրոնային գեներատորները, ուժային տրանսֆորմատորները, էլեկտրաշարժիչները և այլ պարագաներ: Գրեթե բոլոր սովետական հանրապետություններից, այդ թվում և Հայաստանից, կառույց մեկնեցին լավագույն մասնագետներ:

1960 թվականների վերջերին Գանայի և սովետական կառավարության միջև կնքված տնտեսական ու տեխնիկական համագործակցության պայմանագրի համաձայն Սովետական Միությունը հանձն առավ Սև Վոլտա գետի վրա կառուցել հիդրոէլեկտրակայան:

1962 թվականի վերջերին «Հայհիդրոնախագիծ» ինստիտուտն առաջադրանք ստացավ նախագծելու այդ հիդրոէլեկտրակայանը, որը պետք է ունենա ավելի քան 250 հազար կիլովատ հզորություն (այնքան, որքան Գյումուշգէսը) և տարեկան տա մոտ մեկ միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա: Ավելի քան 100 մետր բարձրությամբ ամբարտակի շնորհիվ կստեղծվի 14,5 միլիարդ խորանարդ մետր ծավալի ջրամբար (Սևանա լճի մեկ քառորդի չափ), որը հնարավորություն կընձեռի կարգավորելու գետի ընթացքը, զարգացնելու ձկնաբուծությունը, փոխելու միկրոկլիման և, որ գլխավորն է, ոռոգման նպատակով ջրի պաշարներ կուտակելու: Սև Վոլտա գետի վրա նախագծվող հիդրոէլեկտրակայանը ուներ ուրույն բնակլիմայական պայմաններ և հայ հիդրոնախագծողներից պահանջվում էր ստեղծագործական որոնումներ, կառուցվածքների համարձակ ու տնտեսապես շահավետ տեղադրումներ:

Նախագծի գլխավոր ինժեներ, «Հայհիդրոնախագիծ» ինստիտուտի աշխատակից Գուրգեն Ղազարյանը 1962 թվականին երկու և կես ամիս եղավ տեղում, կատարեց անհրաժեշտ ինժեներա-հետախուզական աշխատանքներ: 1963 թվականին ավելի երկար ժամանակով նրա ղեկավարությամբ Գանա մեկնեցին մի խումբ մասնագետներ: Նրանք կատարեցին տեղագրական, հիդ-

բոլոգիական և երկրաբանական մի շարք հետազոտություններ։ Այնտեղ են աշ-
խատել նաև «Հայհիդրոնախագիծ» ինստիտուտի մասնագետները։

Գանացիների համար սովետական ինժեներները տեխնիկական կոնսուլ-
տացիաներ, գործնական ու տեսական պարապմունքներ էին կազմակերպում։
Ձեռք բերած գիտելիքները գանացի մասնագետներին կօգնեն ինքնուրույն հե-
տախուզական աշխատանքներ կատարելու ուրիշ կառույցների համար։ 1964
թվականի մայիսին Երևան եկան գանացի երկու ինժեներ։ Նրանք «Հայհիդրո-
նախագիծ» ինստիտուտում չորս ամիս շարունակ պրակտիկա անցկացրին, ծա-
նոթացան հիդրոհանգույցի նախագծման սկզբունքներին, մասնագետների օգ-
նությամբ ուսումնասիրեցին սովետական հիդրոկայանների նախագծման եղա-
նակները, ձեռք բերեցին անհրաժեշտ փորձ ու գիտելիքներ։

Սահմանված ժամկետում, 1964 թվականի օգոստոսի 15-ին, Բուիի հիդ-
րոէլեկտրակայանի նախագիծը հիմնականում պատրաստ էր։ Այն Գանայի
կառավարության քննարկմանը ներկայացնելու համար սովետական մի խումբ
մասնագետներ, «Հայհիդրոնախագիծ» ինստիտուտի գլխավոր ինժեներ Ա. Տեր-
Հովհաննիսյանի գլխավորությամբ, մեկնեցին Գանա։ Գանայի կառավարու-
թյունը բարձր գնահատեց նախագիծը և սովետահայ մասնագետներին շնոր-
հակալություն հայտնեց՝ աշխատանքը բարձրորակ կատարելու համար։

Բուիի հիդրոհանգույցի և հիդրոէլեկտրակայանի կառուցումը կարևոր դեր
կխաղա Գանայի ազգային էկոնոմիկայի ամրապնդման, երկրի հյուսիսային
շրջանի արտադրաուժերի զարգացման գործում։ Այն սովետա-աֆրիկյան բա-
րեկամության մի կենդանի վկայություն է, ուղենիշ՝ գաղութատիրության ծանր
հետևանքները վերացնելու ճանապարհին։

Հաշվի առնելով Հայկական ՍՍՀ-ում էլեկտրատեխնիկական արդյունա-
բերության բուռն զարգացումը, բարձր մակարդակը և բարձրորակ կադրերի
առկայությունը, ՍՍՀՄ Մինիստրների սովետը հանրապետության վրա դրեց
Իրաքում (Բաղդադի մոտ) կառուցվող էլեկտրատեխնիկական գործարանի
գլխավոր մատակարարի պարտականությունը։

Հայաստանը պետք է Իրաքի համար պատրաստեր գործարանի կառուց-
ման նախագծային-տեխնիկական փաստաթղթերը, մատակարարեր մոտ 2000
անուն սարքավորում, մեքենաներ, սարքեր ու նյութեր. տեխնիկական օգնու-
թյուն ցույց տալու համար Իրաք ուղարկեր մասնագետներ, Հայաստանում
կազմակերպեր իրաքցի մասնագետների ու բանվորների արտադրատեխնիկա-
կան ուսուցումը։

Բաղդադի մոտ կառուցվող գործարանը Իրաքի մեքենաշինական արդյու-
նաբերության առաջնեկն է և էլեկտրամեքենաշինական առաջին խոշոր գոր-
ծարանը՝ Մերձավոր ու Միջին Արևելքում։

Կարճ ժամանակում պատրաստվեցին գործարանի կառուցման ու թողարկ-
վելիք արտադրանքի նախագծային-տեխնիկական փաստաթղթերը և 1962
թվականից Բաղդադում սկսվեց ձեռնարկության կառուցումը։ Արդեն 1965
թվականի օգոստոսին Իրաք էր ուղարկված 1.870 անուն սարքավորում, մե-
քենաներ ու նյութեր և իրաքցիներին էր հանձնված 73 տիպի ոչ-ստանդարտ
սարքավորումների արտադրության բանվորական գծագրեր։ Հենց առաջին օրե-
րից Իրաք գործուղվեցին սովետական մասնագետներ։ Կառույցի գլխավոր ին-
ժեներ նշանակվեց արտադրության փորձառու հրամանատար, Երևանի հիդրո-
պոմպերի գործարանի նախկին դիրեկտոր Ս. Սամարչյանը. «քինգ մեխանիկ»



(«արքա-մեխանիկ»)—այսպես են անվանում իրաքցիները Լուսավանի գոր-
ծիքաշինական գործարանի նախկին մեխանիկ Ս. Սնխչյանին, որին հանձնա-
րարել են կառույցի գլխավոր մեխանիկի պարտականությունները։

Բաղդադի էլեկտրատեխնիկական գործարանի համար ստանդարտ սար-
քավորումները պատրաստվում են միութենական գրեթե բոլոր հանրապետու-
թյուններում, իսկ ոչ-ստանդարտները՝ հիմնականում Վ. Ի. Լենինի անվան
էլեկտրամեքենաշինական գործարանում, որը կառույցի մոնտաժմանը և գոր-
ծարկմանը աջակցող գլխավոր ձեռնարկությունն է։ Դեռ 1965 թվականին
Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանն Իրաք էր առաքել ավելի քան 150
միավոր ոչ-ստանդարտ սարքավորումներ, որոնք իրենց հատկությունների
շնորհիվ կարող են օգտագործվել որպես տեխնիկական նմուշներ այդ երկրի
արդյունաբերության մի շարք ճյուղերի զարգացման համար։

Սովետական Միության տնտեսական ու տեխնիկական աջակցությամբ
Աֆղանստանում կառուցվում է Նագլուի՝ երկրի ամենախոշոր հիդրոէլեկտրա-
կայանը։ Այս կառույցում ևս, սովետական մասնագետների ընտանիքում աշ-
խատում են հայ ժողովրդի զավակները, որոնք Սևան—Հրազդան կասկադի
հիդրոկայանների շինարարությունում կուտակած իրենց փորձը հաղորդում
են աֆղանցիներին։ Որպես Միավորված Ազգերի Կազմակերպության էքս-
պերտ «Հայհիդրոէներգոշինի» պետի տեղակալ Ա. Խոջա-Էյնաթովը վեց ամիս
Աֆղանստանում մասնակցել է այդ երկրի հողային ու ջրային ռեսուրսների
օգտագործման սխեմաները կազմելու աշխատանքներին։ Սովետական մյուս
հանրապետությունների հետ միասին Հայաստանը տեխնիկա-տնտեսական օգ-
նություն է ցույց տալիս Սոմալիում ռադիոկայաններ, հոսպիտալներ, դպրոց-
ներ և այլ օբյեկտներ կառուցելու գործում։

Սեփական գիտատեխնիկական կադրերի պատրաստումը ազատագրված
երկրների առաջ ծառացած կարևոր և բարդ խնդիրներից է։

Ազատություն և անկախություն նվաճած երկրներում ազգային կադրերի
պատրաստման գործում իր ներդրումն է կատարում և Սովետական Հայաս-
տանը։ Հետաքրքրական է հիշատակել, որ երբ 1912 թվականին Երևանում
պետք էր կառուցել մի փոքրիկ ջրմուղ, հարկ եղավ մասնագետ հրավիրել Գեր-
մանիայից։ Իսկ այսօր Սովետական Հայաստանի բարձրագույն ուսումնական
հաստատությունները սովորելու են գալիս Ասիայի, Աֆրիկայի և Լատինական
Ամերիկայի մի շարք երկրների երիտասարդներ։ Նրա գիտնականները ազա-
տագրված երկրներում կարդում են դասախոսություններ, կատարում գիտա-
հետազոտական աշխատանքներ։ Հանրապետության արդյունաբերական ձեռ-
նարկություններում մասնագիտանում են Ասիայի և Աֆրիկայի երկրների ժո-
ղովուրդների ներկայացուցիչներ։ Հնդկաստանի Ռաջաստանի նահանգի Կարա
քաղաքում Սովետական Միության տնտեսա-տեխնիկական օգնությամբ կա-
ռուցվում է սարքաշինական գործարան։ Գործարանը հագեցված կլինի ժամա-
նակակից ու բարձր սարքավորումներով և կարտադրի զանազան տեսակի չա-
փիչ սարքեր ու գործիքներ։ Դրանց արտադրության տեխնոլոգիայի հետ տե-
ղում ծանոթանալու համար Հնդկաստանից (1964 թվականից սկսած) Հայաս-
տան են ժամանել մասնագետների մի քանի խումբ, որոնք իրենց տեխնիկա-
կան ուսուցումն անցնում են Երևանի սարքաշինական և Կիրովականի ավտո-
մատիկա գործարաններում։ Երևանի սարքաշինական գործարանում հնդիկ
մասնագետների տեսական ու պրակտիկ ուսուցման համար բարձրորակ ինժե-

ներա-տեխնիկական աշխատողներից առանձնացվել է 19 հոգուց կազմված խումբ, ստեղծվել են բոլոր պայմանները ուսուցումն արդյունավետ անցկացնելու համար։ Հաշվի առնելով յուրաքանչյուր խմբի կազմը, մշակվել են արտադրա-տեխնիկական ուսուցման համապատասխան ծրագրեր, ինչպես նաև ուսուցման անհատական ծրագրեր։ Հնդիկ մասնագետները ծանոթացել են գործարանի արտադրապրոցեսի կազմակերպմանը, ուսումնասիրել անվտանգության տեխնիկայի, մասերի արտադրության տեխնոլոգիայի, էլեկտրաչափիչ գործիքների նախագծման ու հավաքման հիմունքները, ՍՍՀՄ նախագծային տնտեսության սիստեմը, կոնստրուկտորական հիմնական նորմաները, մերձարևադարձային պայմաններում սարքերի արտադրության առանձնահատկությունները, գործնական պարապմունքներ են անցկացրել գործարանի հավաքման արտադրամասում ու լաբորատորիաներում։

Իրաքում Սովետական Միության օգնությամբ կառուցվող էլեկտրատեխնիկական գործարանի համար ազգային կադրերի պատրաստման գործում իր մասնակցությունն ունի Հայկական ՍՍՀ-ը։ Ի դեպ, նախատեսված էր Իրաքի այդ ձեռնարկության համար մասնագետներ պատրաստել ԱՄՆ-ում։ Սակայն կառուցում աշխատող հայ մասնագետների տեխնիկական գիտելիքներն ու հմտությունները այնքան ակնառու էին, որ շատ իրաքցիներ խնդրեցին իրենց արտադրատեխնիկական ուսուցման ուղարկել Հայաստան։ 1965 թվականի սեպտեմբերին իրաքցի մասնագետների առաջին խումբը, թվով 30 հոգի, ժամանեց Հայաստան։ Նրանք Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում տասն ամիս ուսումնասիրեցին արտադրության կազմակերպման հիմունքները, գործարանի թողարկած արտադրանքի տեխնոլոգիան։ Ազգային ինքնուրույն զարգացման ուղին թևակոխած երկրների մասնագետները հանրապետության ձեռնարկություններում շրջապատվում են ուշադրությամբ և հոգատարությամբ։ Գործարանների լավագույն ինժեներներն ու բանվորները նրանց սիրով են հաղորդում իրենց գիտելիքներն ու փորձը։

Ֆրանսիական գաղութարարների լուծը թոթափելուց հետո Ալժիրում առողջապահության ասպարեզում ծանր կացություն ստեղծվեց։ Ֆրանսիայի շատ բժիշկներ լքեցին բուժհիմնարկները, իսկ ազգային կադրերն այնքան քիչ էին, որ անկարող էին բավարարել բնակչության նվազագույն պահանջներն անգամ։ Ալժիրի Ժողովրդական Հանրապետության կառավարությունը դիմեց Սովետական Միությանը, խնդրելով բժիշկներ ուղարկել։ Խնդիրքը բավարարվեց։ Սովետական 100 բժիշկների հետ Ալժիր մեկնեցին վեց հայ բժիշկ. նրանք այնտեղ աշխատեցին մեկ տարի երեք ամիս։

Ալժիրում սովետական բժիշկները մշակեցին և անցկացրին բնակչության առողջության պահպանման նպատակին ուղղված պրոֆիլակտիկ միջոցառումներ։ Նրանք ոչ միայն բուժօգնություն էին ցույց տալիս բնակչությանը, այլև օգնում տեղացի մասնագետներին, նրանց հաղորդում իրենց փորձը, սովետական բժշկության նվաճումները։

Գաղութակալության լուծը թոթափած և ազգային անկախ զարգացման ուղին բռնած ժողովուրդներին Սովետական Միության և սոցիալիստական մյուս երկրների ցույց տված նյութական ու բարոյա-քաղաքական աջակցությունն ուժեղացնում է համաշխարհային հեղափոխական պրոցեսը, թուլացնում իմպերիալիզմի և հզորացնում խաղաղության, դեմոկրատիայի դիրքերը։ Այդ գործում իր զգալի ներդրումն ունի նաև Սովետական Հայաստանը։

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԻ ՃԵՄԻՆ

Ս. ԱՎԱՆՅԱՆ

Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանի դիրեկտոր

ՍՍՀՄ հաստոցաշինական և գործիքաշինական արդյունաբերության մինիստրության մի շարք ձեռնարկություններ, այդ թվում և Լուսավանի ներտաշ հաստոցների գործարանը, այս տարվա հուլիսի մեկից անցնելու են պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի։ Մեր գործարանի անցումը պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին, իրականացվելու է գիտականորեն մշակված ծրագրի հիման վրա, հաշվի առնելով Մոսկվայի կոորդինատային ներտաշ հաստոցների և Մինսկի Հոկտեմբերյան հեղափոխության անվան գործարանների փորձը։

Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմին անցնելու համար մենք ունենք բոլոր հնարավորություններն ու պայմանները։ Այսպես. մինչև 1964 թվականը գործարանը վնասով էր աշխատում, իսկ այժմ այն եկամտաբեր գործարաններից է և գերակատարում է նախատեսված շահույթի պլանը։ Այդ ձեռք է բերվել կոլեկտիվի քրտնաջան աշխատանքի, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսների արմատավորման, աշխատատար պրոցեսների մեքենայացման, մի շարք կոնստրուկտիվ միջոցառումների վերանայման, նույնիսկ թողարկվող հաստոցների մոդելների փոփոխման շնորհիվ։

Աշխատողների նյութական շահագրգռվածությունը բարձրացնելու և արտադրանքի որակը բարելավելու նպատակով, տնտեսական նոր ռեֆորմը նախատեսում է խրախուսման ֆոնդերին լրացուցիչ հատկացումներ կատարել շահույթի այն մասից, որն ստացվում է արտադրանքի որակի բարելավման շնորհիվ գոյացված գնի հավելումից։ Այս հնարավորությունը լիովին օգտագործելու համար գործարանում լուրջ քայլեր են արվում թողարկվող հաստոցների երկարակեցությունն ու հուսալիությունն ապահովելու ուղղությամբ։

Տնտեսական կառավարման նոր սիստեմին անցնելը, որակական ցուցանիշների բարձրացման հետ միաժամանակ, նախատեսում է մեծացնել նաև քանակական ցուցանիշները։ Այն թելադրում է փնտրել, գտնել ու խելացի օգտագործել այն բոլոր ռեզերվները, որոնք գտնվում են արտադրության ներսում։ Այսպես, տնտեսական խոր վերլուծությունից հետո հնարավոր դարձավ ստանձնել նոր պարտավորություն—արտադրության տեխնոլոգիայի հետագա բարելավման և տեխնիկապես հիմնավորված արտադրական նորմաների արմատավորման հաշվին 1967 թ. 50 հազար ռուբլով իջեցնել ինքնարժեքը։

Ինչպես հայտնի է, մինչև ռեֆորմը ձեռնարկության շահութաբերության

մակարդակը որոշվում էր շահույթի գումարը հարաբերելով իրացված արտադրանքի լրիվ ինքնարժեքին։ Շահութաբերության մակարդակի հաշվարկման այս եղանակը լրիվ չէր արտացոլում ձեռնարկության գործունեության իրական պատկերը, որովհետև դրանից չէր երևում, թե շահույթի տվյալ գումարը արտադրական ֆոնդերի ինչ ծավալի պայմաններում է ստացվել։

Նոր տնտեսական ռեֆորմը առաջադրում է շահութաբերության մակարդակի որոշման նոր եղանակ, ըստ որի, այն որոշվում է շահույթի գումարն առադրելով հիմնական արտադրական ֆոնդերի միջին տարեկան ծավալի և նորմավորող շրջանառու միջոցների գումարին։

Բարձր շահութաբերություն ապահովելու գործում կարևոր նշանակություն ունի նաև թողարկվող արտադրանքի նկատմամբ սպառողների պահանջարկի մշտական ուսումնասիրությունը։ Սպառողների աճող պահանջմունքները բավարարելու համար ընդլայնվել է թողարկվող հաստոցների նոմենկլատուրան։ Այժմ թողարկվող 2—Լ—614 և 2615 տիպերից բացի, նախագծվում է 1967 թվականին թողարկել իլիկի 65 միլիմետր տրամագիծ ունեցող երկու տիպի հորիզոնական-ներտաշ հաստոցների առաջին նմուշները։ Բացի դրանից, նախատեսվում է պայմաններ ստեղծել, որպեսզի 1968—1969 թվականներին ընդլայնվի նաև հատուկ հաստոցների թողարկման նոմենկլատուրան։

Սարքավորումների օգտագործման վերլուծությունը ցույց տվեց, որ մեր գործարանում մանր դետալներ կտրող չորս ավտոմատները օգտագործվում են որպես սովորական խառատային հաստոցներ։ Եթե այդ ավտոմատներն օգտագործվեն ըստ կոչման, ապա տարեկան կստացվի առնվազն 15 հազար ռուբլու խնայողություն։

Գաղտնիք չէ, որ պլանավորման հին սիստեմի պայմաններում գործարանը, ռեզերվներ որոնելու և շրջանառու միջոցները կրճատելու փոխարեն, ձըգտում էր պետությունից ստանալ որքան կարելի է շատ շրջանառու միջոցներ, որովհետև դրանց կրճատումը ոչնչով չէր խթանվում։ Այժմ կոլեկտիվը շահագրգռված է հիմնական ֆոնդերն ու շրջանառու միջոցները որքան կարելի է կրճատել։

Եվ քանի որ խրախուսման ֆոնդերի մեծությունը կախված է հիմնական ֆոնդերի օգտագործման մակարդակից, ապա ձեռնարկության կոլեկտիվը խնդիր է դրել հնարավորին չափ բեռնավորել հիմնական ֆոնդերը։ Գործարանի տնտեսագետները հաշվել են, որ եթե ձեռնարկությունում մեծացվի հիմնական ֆոնդերի ակտիվ մասի (սարքավորումներ ու մեքենաներ) ֆոնդահատկացումը մեկ տոկոսի չափով, ապա կարելի կլինի լրացուցիչ ստանալ ավելի քան 45,0 հազար ռուբլու արտադրանք։

Սա վատ ցուցանիշ չէ, եթե նկատի ունենանք (ամբողջությամբ վերցրած), որ մեքենաշինական արդյունաբերության մեջ հիմնական ֆոնդերի ակտիվ մասը 50 տոկոս էլ չի կազմում։ Բնական է, որ աշխատանքի նոր սիստեմին անցնելուց հետո մարդիկ կձգտեն ավելի արդյունավետ օգտագործել ամեն մի սարքավորում, հնացած, ցածր արտադրողական մեքենաները կփոխարինվեն նորերով։

Գործարանի գլխավոր մեխանիկի բաժինը այս տարվա սկզբից զբաղված է չտեղակայված սարքավորումների մնացորդների կրճատմամբ, ավելորդ հաստոցների, սարքերի և այլ մեքենաների իրացմամբ։ Առաջներում չտեղակայված սարքավորման համար գործարանները կրում էին միայն բարոյական



պատասխանատվություն, իսկ այժմ, վերահսկողություն է սահմանվում նաև ռուբլով։

Ելնելով տեղական պայմաններից, գործարանի կոլեկտիվն ընտրել է սարքավորումների արդյունավետությունը բարձրացնելու հետևյալ ուղիները. առաջին. հաստոցների կորպուսամասեր մշակելիս կիրառել բարձր արտադրողական տեխնոլոգիական հարմարանքներ. եթե առաջ, առաջին կարգի ճշգրիտ ատամնանիվները մշակվում էին Մոսկվայի հղկիչ հաստոցների գործարանում թողարկված 5831 մոդելի ատամնահղկիչ հաստոցների վրա (յուրաքանչյուրն արժե 8670 ռուբլի), ապա 1966 թվականի կեսերից այդ աշխատանքը կատարվում է բարձր արտադրողական ճշգրիտ ատամնահղկիչ մեկ հաստոցով, իսկ 5831 մոդելի ազատված երեք հաստոցները պետք է տրվեն այլ ձեռնարկությունների։

Երկրորդ, բարձրացնել սարքավորումների հերթափոխայնության գործակիցը, որ Լուսավանի պայմաններում բացառիկ դժվարին խնդիր է։ Ներկայումս մեր գործարանում պակասում են որակյալ խառատներ, հղկող, ներտաշող բանվորներ, գործիքագործ փականագործներ և այլն։ Նախատեսում ենք աշխատուժի այդ պակասը մասամբ լրացնել, նոր տնտեսական ռեֆորմի հնարավորություններն օգտագործելով (արհմիութենական կազմակերպությունների համաձայնությամբ) կատարել որոշ հարակից պրոֆեսիաների համատեղում՝ տարիֆային դրույքները բարձրացնել 30 տոկոսով։ Բայց որակյալ կադրերով ձեռնարկությունն ապահովելու խնդիրը դրանով չի լուծվում։

Լուսավանի պայմաններում ո՛չ միայն մեր, այլև մյուս արդյունաբերական ձեռնարկությունները կարիք ունեն որակյալ ինժեներա-տեխնիկական կադրերի։ Հայտնի է, որ Լուսավանում արդեն գործում են ներտաշ հաստոցների, գործիքաշինական, «Ցենտրոլիտ» երկաթբետոնե շինվածքների գործարանները. նախատեսված է կառուցել նաև այլ ձեռնարկություններ։ Այս պայմաններում գործնականորեն հնարավոր չէ արդյունաբերության պահանջները բավարարել դրսից մասնագետներ ու ղեկավար ինժեներա-տեխնիկական աշխատողներ հրավիրելու միջոցով։ Մեր կարծիքով, այս խնդիրը կարելի է լուծել տեղական ինտելիգենցիա ստեղծելու, Լուսավանում միջնակարգ տեխնիկական ու բարձրագույն ուսումնական հաստատությունների ֆիլիալներ կազմակերպելու միջոցով։

Նոր կանոնադրությամբ նախատեսվում է շարունակ կատարելագործել արտադրության կառավարման կառուցվածքը, ըստ ամենայնի պարզեցնել կառավարչական ապարատը՝ կիրառելով առավել առաջադիմական կառուցվածք։ Այս ուղղությամբ գործարանում զգալի աշխատանք է կատարվել. վարչակառավարչական անձնակազմը 1965 թվականին բանվոր-ծառայողների ընդհանուր թվի 9,1 տոկոսն էր, իսկ 1966 թվականին այն կրճատվեց, հասնելով 8,4 տոկոսի։

Արտահանվող հաստոցների արտադրամասի առկայությունը դժվարացնում է ներքին շուկայի համար պատրաստվող հաստոցների որակի բարձրացման խնդիրը, բարդացնում արտադրական ապարատի աշխատանքը, երկատում նախապատրաստուկների ու մեխանիկական արտադրամասերի աշխատանքը և, որ գլխավորն է, թանկացնում արտադրության կառավարումը։ Այս բանը ավելի պարզ են արտահայտում թվական տվյալները։ Գործարանի հավաքման արտադրամասը տալիս էր ձեռնարկության ամբողջ արտադրանքի 80

տոկոսը և կատարում տարեկան 40 հազար ռուբլու կառավարչական ծախսեր,
իսկ արտահանման համար արտադրանք տվող արտադրամասը, որը թողար-
կում էր ձեռնարկության ամբողջ արտադրանքի միայն 15—20 տոկոսը, կա-
տարում էր նույնքան ծախսեր։ Ուստի, որոշվեց այս տարվա հունվարից ար-
տահանման համար հաստոցներ թողարկող արտադրամասը միացնել հավաք-
ման արտադրամասին, իսկ որակյալ բանվորներին բաժանել բոլոր տեղամա-
սերի վրա։ Այս միջոցառումը թույլ կտա հավաքման, ինչպես նաև արտահան-
վող հաստոցներ թողարկող արտադրամասերի կառավարչական ծախսերը
կրճատել 35—40 տոկոսով, բարձրացնել հավաքման աշխատանքների որակը,
պարզեցնել արտադրության կառավարումը։ Կառավարչական ծախսերի կր-
ճատման, ապարատի պարզեցման գործում ձեռնարկությանը պետք է օգնի
հաշվողական տեխնիկան, բայց դրանով մենք մտադիր ենք զբաղվել պլանա-
վորման և նյութական խրախուսման նոր սիստեմին անցնելուց հետո։

Տնտեսական ռեֆորմի իրականացումից հետո խիստ կարևոր նշանակու-
թյուն կստանան գործարանային և ներգործարանային տնտհաշվարկը, ձեռնար-
կության տնտեսավարական առավել արդյունավետ աշխատանքի կազմակեր-
պումը։ Նոր տնտեսական ռեֆորմում ամենակարևորը, **թերևս, կոլեկտիվի ան-**
դամների մոտ ձեռնարկության տերը լինելու զգացումի պատվաստումն է։ Մեր
գործարանում, ինչպես և ուրիշ շատ ձեռնարկություններում, տնտհաշվարկը
արտադրամասերում ու տեղամասերում վաղուց է արմատավորված։ Սակայն,
պլանավորման հին մեթոդների պայմաններում իրականացվող և ռեֆորմից
հետո կիրառվող տնտհաշվարկը միանգամայն տարբեր բովանդակություն
կունենա։ Պլանավորման հին սիստեմի պայմաններում արտադրամասերը ա-
մեն ամիս միայն համախառն և ապրանքային արտադրանքի թողարկման, աշ-
խատանքի արտադրողականության բարձրացման, աշխատավարձի ֆոնդի
ծախսման առաջադրանքներ էին ստանում։ Արտադրամասերը հաշվետու չէին
էլեկտրաէներգիայի, ջրի, շոգու և այլ ծախսումների համար։

Այժմ այս կարգը վերանայվում է, գործարանի տնտեսագետները ծախ-
սումների նախահաշիվներ են կազմում՝ յուրաքանչյուր արտադրամասի ու տե-
ղամասի համար։ Դրանցում նախատեսվում են բոլոր ծախսերը, ներառյալ
արտադրամասերի փոխադարձ ծառայությունները։ Հաշվարկվում են նաև ար-
տադրամասերի արտադրական կարողությունները, բացահայտվում նեղ տե-
ղերը և միջոցներ են ձեռնարկվում դրանց վերացման համար։ Հաշվարկները
ցույց են տվել, որ հաստոցների կորպուսամասերի (հենոցների, կանգնակների
սահուղիների, սեղանների) մշակումը ետ է մնում գործարանի զարգացման ընդ-
հանուր տեմպերից։ Այդ թերությունը վերացնելու համար որոշվեց կորպուսի
պատրաստման տեղամասի աշխատանքը դարձնել երկհերթ, իսկ տաշիչ հաս-
տոցներինը՝ եռհերթ։ Միաժամանակ, տեխնոլոգիական ծառայությունները
միջոցներ մշակեցին տաշիչ հաստոցները բեռնաթափելու ուղղությամբ, այս-
ինքն՝ կորպուսի մի շարք դետալներ այսուհետև մշակվելու են ուրիշ, սակավ
բեռնավորված հաստոցների վրա։

Սակայն կարևոր չէ նաև գործարանային վարչության ծառայությունների,
առաջին հերթին, նյութատեխնիկական մատակարարման ու կոմպլեկտավոր-
ման բաժինների գործունեության գնահատման չափանիշների սահմանումը։
Սակայն ափսոսանքով պետք է ասել, որ մինչև այժմ չկան այդ ծառայություն-
ների համար ընդունելի, գիտականորեն հիմնավորված մեթոդներ ու առա-



ջարկներ. հաճախ այդ ծառայություններում նկատվում են թերություններ,
բայց դրանք հնարավոր չէ վերացնել ռուբլով վերահսկողություն սահմանելու
միջոցով։ Արտադրության յուրաքանչյուր աշխատող գիտե, որ եթե մատակա-
րարման բաժինը ժամանակին հումք և նյութեր չհասցնի, ապա անպայման
կխախտվեն արտադրանքի թողարկման գրաֆիկները։ Միևնույն ժամանակ,
տնտեսական նոր ռեֆորմի պայմաններում, սահմանված չափերից ավելի
նյութական արժեքների առկայությունը կարող է բացասաբար անդրադառնալ՝
նվազեցնել խրախուսման ֆոնդերի չափը։

Պարգևատրման մշակվող նոր սիստեմը պետք է ռուբլով խիստ վերա-
հսկողություն նախատեսի նյութատեխնիկական մատակարարման ու կոմպ-
լեկտավորման ծառայությունների համար։ Յուրաքանչյուր գործարան, ելնելով
իր կոնկրետ պայմաններից, այդ ծառայությունների աշխատանքների գնա-
հատման համար մշակում է առանձնահատուկ ցուցանիշներ. մենք մտադիր
ենք կիրառել 1966 թվականի հունվարի մեկից պլանավորման ու տնտեսական
խթանման նոր սիստեմին անցած մոսկովյան գործարաններից մեկի փորձը։
Այնտեղ մատակարարման ու կոմպլեկտավորման բաժնի աշխատողների գոր-
ծունեությունը գնահատվում է երեք չափանիշով. ա) հայթայթված նյութերի
չափերի ու որակի խիստ պահպանմամբ. բ) անհրաժեշտ նյութերով արտա-
դրամասերը ժամանակին ապահովելով. գ) նյութերի, շրջանառու միջոցների
նորմատիվների խիստ պահպանմամբ։

Մեր կարծիքով պլանավորման ու տնտեսական խթանման նոր պայման-
ներում աշխատանքի գնահատման չափանիշներ պետք է սահմանվեն նաև
գործարանի տեխնիկական ծառայությունների՝ գլխավոր կոնստրուկտորի ու
տեխնոլոգի բաժինների համար։ Նրանց աշխատանքի գնահատականը կարելի
է տալ նախագծային ու տեխնիկական փաստաթղթերի ժամանակին հանձն-
մամբ, նախագծերի ու արտադրության նախապատրաստման որակով և այլն։
Տնտհաշվարկային հարաբերություններ պետք է ստեղծվեն նաև հարակից ար-
տադրամասերի միջև։ Միայն այդ եղանակով կարելի է գործարանում արմա-
տավորել հստակ, կազմակերպված բարձրորակ աշխատանք։

Հատկապես կարևոր նշանակություն ունի գնահատման ճիշտ ցուցանիշ-
ներ սահմանելը՝ օժանդակ արտադրամասերի համար. նայած ապրանքային
արտադրանքի թողարկմանը անուղղակիորեն են մասնակցում դրանք, բայց
բավական մեծ տեսակարար կշիռ ունեն (աշխատողների թվի և արտադրական
ֆոնդերի տեսակետից)։ Լուսավանի հաստոցաշինական գործարանում օժան-
դակ արտադրամասերի (գործիքաշինական նորոգման, էներգետիկ, տրանս-
պորտի և այլն) ֆոնդերը ձեռնարկության արտադրական բոլոր ֆոնդերի մոտ
16,5 տոկոսն են կազմում։

Պլանավորման նոր սիստեմին անցած գործարանները հիմնական և օժան-
դակ արտադրությունների տնտհաշվարկային փոխհարաբերությունների որոշ
փորձ են կուտակել։ Մենք մտադիր ենք օժանդակ արտադրամասերը կազմա-
կերպել այնպես, որ դրանք դուրս չմնան նոր ռեֆորմի ոլորտից։ Դրա հա-
մար (սկզբնական շրջանում) օժանդակ արտադրամասերի աշխատանքի ցու-
ցանիշ ենք համարելու նաև հիմնական արտադրամասերի և ամբողջ ձեռնար-
կության շահույթի պլանի կատարումը։ Ընդ որում, օժանդակ արտադրամա-
սերի համար կսահմանվեն նաև ինքնարժեքի, ծառայությունների և հիմնական
արտադրամասերի անխափան ապահովման ցուցանիշներ։ Տնտեսավարման

նոր ձևերը առաջին պլանի վրա են մղում միմյանց հետ կապված բազմաթիվ հարցեր, հարկադրում որոնել ձեռնարկության առևտրական գործունեության առավել առաջադիմական ու ձեռնտու ձևեր։

Պրակտիկան ցույց է տալիս, որ գործարանի ֆինանսական լավ վիճակը կախված է արտադրանքի կայուն իրացումից։ Լուսավանի հաստոցաշինական գործարանի արտադրանքն իրացման դժվարություններ չի ունեցել, բայց, մեր կարծիքով, նոր պայմաններում պետք է արմատապես վերանայվի ձեռնարկության ֆինանսական աշխատանքի կազմակերպումը։ Այժմ, երբ արմատավորվում է գործուն տնտհաշվարկը և ստեղծվում են դրամով արտահայտվող բարդ փոխհարաբերություններ, երբ ոմանց պետք է խրախուսել, մյուսներին ոչ, նորմատիվներ սահմանել, ֆոնդեր ստեղծել, ֆինանսական աշխատանքի դերն ու նշանակությունը անչափ մեծանում է։ Նոր պայմաններում գործարանի նորմալ աշխատանքը մեծ չափով կախված կլինի նրանից, թե ֆինանսական ծառայությունը որքանով ճիշտ կիրականացնի ձեռնարկության ու նրա աշխատողների, ձեռնարկության ու ստորաբաժանումների (արտադրամասերի ու ծառայությունների, ձեռնարկությունների՝ մատակարարողի ու պատվիրատուի), ձեռնարկության ու պետական բյուջեի և, վերջապես, ձեռնարկության ու պետական բանկի հարաբերությունները։ Աշխատանքի նոր պայմաններում ֆինանսական ծառայությունը գործարանում պետք է ստեղծի և խիստ վերահսկի հետևյալ ֆոնդերը. ա) աշխատավարձի, բ) ամորտիզացիոն (որից պետք է վճարվեն կապիտալ նորոգման ծախսերը, կազմվեն արտադրության զարգացման ֆոնդեր ու կատարվի նոր շինարարություն), գ) շրջանառու միջոցների, դ) տնտեսական խթանման, արտադրության զարգացման, նյութական խրախուսման, սոցիալ-կուլտուրական միջոցառումների և բնակարանային շինարարության, ե) բյուջեին կատարվող հատկացումների (վճարումներ, հիմնական ֆոնդերի և շրջանառու միջոցների դիմաց, զ) ընդլայնված վերարտադրության (նոր շինարարություն, պաշարների ավելացում)։

Այս ֆոնդերի ստեղծումը, դրանց վարումն ու օգտագործումը ֆինանսական աշխատանքի հիմնական խնդիրն է նոր պայմաններում։ Բացի դրանից, մենք նախատեսում ենք ֆինանսական բաժնի միջոցով կայուն, ուղղակի կապեր ստեղծել պատվիրատուների հետ։

Գործարանը պետք է շրջանառու միջոցների դիմաց վճարի այնպես, ինչպես հիմնական ֆոնդերի։ Հետևաբար այն շահագրգռված է նվազագույնի հասցնել (հաշվարկային նորմատիվների սահմաններում) հիմնական և օժանդակ նյութերի պաշարները, անավարտ արտադրությունը, պատրաստի արտադրանքը, կրճատել հումքի և նյութերի շրջանառության ծախսերը։

Մեր գործարանը նյութեր և կոմպլեկտավորող արտադրանք է ստանում երկրի ավելի քան 100 ձեռնարկություններից։ Անցած տարիների փորձից մենք գիտենք, թե որ ձեռնարկությունը ժամանակին չի կատարում իր պարտավորությունները։ Այդ ձեռնարկություններից է ցավոք, Երևանի էլեկտրապարատների գործարանը, որը միայն 1966 թվականի երրորդ եռամսյակում իր պարտավորությունը կոմպլեկտավորող արտադրանքի գծով թերակատարեց 33 հազար ռուբլով։ Ձեռնարկության աշխատանքի վրա խիստ բացասաբար է անդրադառնում նաև Լուսավանի «Ցենտրոլիտ» գործարանի ձուլվածքների ցածր որակը։ Այդ գործարանը մինչև այժմ ձուլում է միայն մեկ մարկայի չուգուն, ձուլվածքների որակը մեծ մասամբ չի համապատասխանում տեխնիկական



պահանջներին։ Հարկ է լինում մի շարք ձուլվածքներ նախքան մշակելը լրացուցիչ ջերմամշակման ենթարկել, որը թանկացնում է արտադրանքի ինքնարժեքը։ Ձուլվածքի փչուկները, մեծ մասամբ, հայտնաբերվում են մշակման վերջին գործողությունների ժամանակ, որը նյութական ու բարոյական մեծ վնաս է հասցնում մեր կոլեկտիվին։ Միայն 1966 թվականին, տասնմեկ ամսում, «Ցենտրոլիտի» վատ արտադրանքի հետևանքով, գործարանը 22 հազար ռուբլու վնաս է ստացել։

Ինքնըստինքյան հասկանալի է, որ արդի պայմաններում հումքի և նյութերի խնայողաբար ծախսումը դեռ բոլորը չէ. սակավ կարևոր նշանակություն չունի նաև կենդանի աշխատանքի ծախսումը։ Ուստի, մատակարարողները պետք է ամենայն խստությամբ պատասխանատվություն կրեն նաև սպառող ձեռնարկությանը հասցված բարոյական վնասի համար։

Պլանավորման և նյութական խրախուսման նոր պայմաններին անցնելուց հետո տնտեսագիտական աշխատանքի մակարդակի բարձրացումը ենթադրում է աշխատանքի սոցիալիստական կարգապահության ըստ ամենայնի ամրապնդում։ Որքան բարձր լինի յուրաքանչյուր աշխատողի գիտակցությունը, այնքան ավելի հաջող կլուծվեն առաջադրված խնդիրները։ Նոր կանոնադրությունը իրավունք է վերապահում բաժնի, արտադրամասի, ծառայության ղեկավարին (արհմիութենական համապատասխան կազմակերպության հետ համաձայնեցնելով) աշխատանքի կարգապահությունը խախտողների դեմ պայքարել ոչ միայն վարչական միջոցներով, այլև առանձին աշխատողների կամ աշխատողների խմբերի զրկել պարգև-հավելումից կամ իջեցնել դրա չափը և, ընդհակառակը, լավագույն ցուցանիշների համար ավելացնել պարգևի չափը։ Բացի այդ, գործարանը տարեկան լավ ցուցանիշների համար կարող է աշխատողներին խրախուսել նաև միանվագ։

Խրախուսման ֆոնդերի հաշվարկները ցույց տվեցին, որ մեր գործարանը տարվա վերջին կկարողանա ամբողջ կոլեկտիվին տալ երկու շաբաթվա աշխատավարձի չափով պարգև-հավելում։

Հետաքրքրական են գործարանի արտադրական տնտեսական գործունեության պլանավորման և կոլեկտիվ ու առանձին աշխատողների նյութական խըթանման հիմնական դրույթները։ Եթե առաջ վերադաս օրգանները ցանկացած ժամանակ վերանայում էին ձեռնարկության առաջադրանքները, ապա այժմ պլանը կարելի է միայն բացառիկ դեպքերում փոխել, այն էլ ձեռնարկության ղեկավարության հետ դրանք նախապես քննարկելուց հետո։

Բացի դրանից, գործարանը կարող է ընդունել արտադրանքի թողարկման և իրացման լրացուցիչ առաջադրանքներ, իրացնել ֆոնդային ծանուցումներով չիրացված իր արտադրանքը, ժամկետից շուտ մատակարարել արտադրանքը, փոփոխել ասորտիմենտը, ժամկետները և մատակարարման մյուս պայմանները։

Մեր գործարանը տեխնիկա-տնտեսական բոլոր ցուցանիշներով կատարել է իր պարտավորությունները. 1966 թվականի երրորդ եռամսյակում նվաճել է ՍՍՀՄ հաստոցաշինության ու գործիքաշինական արդյունաբերության մինիստրության և մեքենաշինության աշխատողների արհմիության կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշը և նախապատրաստվում է անցնել պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՇԱՀՈՒԹԱԲԵՐՈՒԹՅՈՒՆԸ

Գ. ԴԱՎԹՅԱՆ

*Մեր ժամանակներում խիստ մեծացել են արտադրանքի որակին ներկայացվող հասարակական պահանջները։ Այդ իմաստով էլ արտադրանքի և աշխատանքի որակի բարելավումը ժողովրդա-տնտեսական կարևոր պրոբլեմ է դարձել։ Սովետական ժողովրդի և սոցիալիստական արդյունաբերության շահերը հրամայաբար պահանջում են արմատապես բարելավել գյուղատնտեսական մթերքների և հումքի որակը, որը, միաժամանակ, կոլտնտեսությունների ու սովխոզների էկոնոմիկայի հետագա զարգացման, արտադրության շահութաբերության բարձրացման կարևորագույն ռեզերվ է։*

*Հայտնի է, որ ծխախոտագործությունը մեր հանրապետության գյուղատնտեսության կարևոր և եկամտաբեր ճյուղերից մեկն է։ Այն վճռական դեր ունի բազմաթիվ տնտեսությունների էկոնոմիկայում։ Լեռնային և նախալեռնային գոտիների շատ տնտեսություններում ծխախոտագործությունից ստացվում է ընդհանուր դրամական մուտքի 65—70, իսկ բուսաբուծությունից ստացված դրամական մուտքերի ավելի քան 90 տոկոսը։ 19 շրջանների 208 կոլտնտեսություն և 66 սովխոզ 1965 թվականին պետությանը հանձնած ծխախոտի հումքի դիմաց ստացան 24,3 միլիոն ռուբլի։*

*Ծխախոտագործության զարգացման համար լուրջ խթան հանդիսացավ ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1962 թվականի օգոստոսի 21-ի որոշումը, որի համաձայն ծխախոտի հումքի գները բարձրացվեցին 26,5 տոկոսով։ Հանրապետության կոլտնտեսություններն ու սովխոզները առավել ուշադրություն նվիրելով այդ արժեքավոր կուլտուրայի մշակությանը, հասան զգալի հաջողությունների։ Եթե 1940 թվականին արտադրվել և պետությանն է հանձնվել 3252 տոննա ծխախոտի հումք, ապա 1965 թվականին այն կազմեց ավելի քան 14 հազար տոննա։ Այժմ մեր հանրապետությունը տալիս է ՍՍՀՄ-ում արտադրվող ծխախոտի 10—11 տոկոսը։*

*Ծխախոտի հումքի արտադրությունն ավելացել է գլխավորապես բերքատվության բարձրացման շնորհիվ։ Այսպես, եթե մեկ հեկտարի միջին բերքատվությունը 1940 թվականին կազմել է 6,5 ցենտներ, ապա 1965 թվականին այն կազմեց 18 ցենտներ։ Առանձին շրջաններ բերքատվության բարձրացման ուղղությամբ հասել են նշանակալի հաջողությունների։ Այսպես, 1965 թվականին «Սամսուն» խմբին պատկանող սորտեր մշակող Աբովյանի շրջանի տնտեսությունները հեկտարից ստացել են 20,2 ցենտներ միջին բերք, Աշտարակինը՝ 24,4, Հրազդանինը՝ 24,5, «Օստրոլիստի» խմբին պատկանող սորտեր մշա-*



*կող Վեդիի շրջանը՝ 27,0, իսկ Շամշադինի շրջանի տնտեսությունները՝ 32,8 ցենտներ։*

*Ծխախոտագործությամբ զբաղվող տնտեսությունների էկոնոմիկայի համար բերքատվության բարձրացման հետ միասին չափազանց կարևոր է նաև հանձնվող հումքի որակը։ Չէ՞ որ ծխախոտի հումքի հանձնման գները պայմանավորված են գլխավորապես որակով։ 1964 թվականին պետությանը վաճառվեց ընդամենը 3,4 տոննա առաջին տեսակի ծխախոտ, պլանով սահմանված 65 տոննայի դիմաց, որի հետևանքով գյուղատնտեսական ձեռնարկությունները մոտ 290 հազար ռուբլի պակաս ստացան, քան կարող էին ստանալ այդ տեսակի ծխախոտի արտադրության ու վաճառքի պլանը կատարելիս։ Երկրորդ տեսակի ծխախոտի արտադրության պլանը 1964 թվականին կատարվել է 15,4, իսկ 1965-ին՝ 38,6 տոկոսով, երրորդ տեսակինը՝ համապատասխանաբար 77,0 և 87,2 տոկոսով։*

*Ծխախոտի բերքատվության ավելացման և ինքնարժեքի իջեցման հետ միասին հումքի որակի բարձրացումը մեծ չափով նպաստում է արտադրության շահութաբերության բարձրացմանը։ Ահա համապատասխան տվյալներ։*

Հայկական ՍՍՀ մի խումբ շրջանների կոլտնտեսությունների ծխախոտի հումքի որակի ազդեցությունը շահութաբերության վրա *(1965 թ.)*

| Ցուցանիշներ | Շրջաններ | | | |
|---|---|---|---|---|
| | Թալին | Աբովյան | Եղեգնաձոր | Ղափան |
| 1. Ցանքատարածությունը (հեկտ.) | 246,2 | 276 | 260 | 118 |
| 2. 1 հեկ. միջին բերքատվությունը (ցենտ.) | 10,1 | 21,5 | 14,3 | 7,3 |
| 3. Պետությանը վաճառված 1 կգ հումքի միջին գինը (ռուբ.) | 2,13 | 2,38 | 2,26 | 2,18 |
| 4. Հումքի իրացումից ստացված դրամական միջոցները՝ | | | | |
| ա) 1 հեկտարի հաշվով (ռուբ.) | 2153 | 5117 | 3228 | 1593 |
| 5. Արտադրության ծախքերը՝ | | | | |
| ա) 1 հեկտարի հաշվով (ռուբ.) | 1553 | 3121 | 2017 | 1222 |
| բ) 1 ցենտների հաշվով (ռուբ.) | 153,8 | 145,3 | 140,8 | 167,4 |
| 6. Զուտ եկամուտ՝ | | | | |
| ա) 1 հեկտարի հաշվով (ռուբ.) | 598 | 1998 | 1227 | 371 |
| բ) 1 ցենտների հաշվով (ռուբ.) | 59,2 | 92,7 | 85,8 | 50,8 |
| 7. Շահութաբերության մակարդակը (տոկոսներով) | 38,4 | 64,0 | 61,3 | 30,3 |

*Աղյուսակի տվյալները ցույց են տալիս, որ մեկ կիլոգրամ հումքի վաճառքի միջին գինը Աբովյանի շրջանի կոլտնտեսություններում, Թալինի շրջանի կոլտնտեսությունների համեմատությամբ, բարձր է 89, իսկ Ղափանի շրջանինը՝ մոտ 92 տոկոսով։ Աբովյանի շրջանի կոլտնտեսություններում ծխախոտի արտադրության շահութաբերության մակարդակը Թալինի շրջանի կոլտնտեսությունների համեմատությամբ բարձր է 25,6, իսկ Ղափանինը՝ 33,7 տոկոսով։ Ղափանի և Թալինի շրջանների կոլտնտեսություններում ծխախոտի արտադրության շահութաբերության համեմատաբար ցածր մակարդակը բացատրվում է նրանով, որ համախառն արտադրանքի մեջ փոքր տոկոս են կազմում բարձր ապրանքային տեսակները։ Այսպես, Թալինի շրջանի տնտեսություններում 1965 թվականի պլանով նախատեսվում էր արտադրել և պետու-*

թյանը վաճառել 2 տոննա առաջին տեսակի ծխախոտ, սակայն ոչ մի կիլո- գրամ չի արտադրվել, իսկ երկրորդ տեսակից, 35 տոննայի դիմաց, պետու- թյանը վաճառվել է 12,7 տոննա։ Միայն առաջին և երկրորդ տեսակի ծխախո- տի արտադրության պլանը չկատարելու հետևանքով Թալինի շրջանի կոլտըն- տեսությունները ու սովխոզներն ավելի քան 102 հազար ռուբլի պակաս եկա- մուտ ստացան։

Ծխախոտի հումքի ցածրորակությունը հետևանք է այն բանի, որ շատ տնտեսություններ հաճախ չեն կիրառում այդ կուլտուրայի մշակության ագրո- տեխնիկական կանոնները, խախտում են դրանց ժամկետները, անհրաժեշտ ուշադրություն չեն նվիրում բերքահավաքի և տերևի տեսակավորմանն ու նախնական մշակմանը։ Ծխախոտի բարձր և որակով բերք ստանալու համար կարևոր նշանակություն ունի սածիլների ժամանակին աճեցումը։ Մի շարք տնտեսություններում այդ գործը ժամանակին չի կազմակերպվում, որի հե- տևանքով ուշացվում է սածիլումը, որը բացասաբար է անդրադառնում տերև- ների հասունացման ու բերքահավաքի վրա։ Ծխախոտը շատ ջուր է պահան- ջում, ուստի նրա ոռոգման ճիշտ կազմակերպումը զգալիորեն նպաստում է հումքի որակի բարձրացմանը։ Ջրի պակասության պատճառով բույսը վատ է աճում, ուշ ծաղկում, տերևները լինում են մանր, տամկացումը դանդաղում է, չորանալուց մուգ գույն են ստանում։ Ավելին, հողի տևական չորությունից տերևներն անժամանակ հասունանում են ու չորանում։ Ծխախոտը որոշակի պահանջ ունի հողի սննդանյութերի ու հողային լուծույթում դրանց փոխհարա- բերությունների նկատմամբ։ Որոշ տնտեսություններ երբեմն աչքաթող են անում կալիումային պարարտանյութերի օգտագործումը, մոռանալով, որ դրանց դե- րը հատկապես մեծ է ծխախոտի որակի բարձրացման գործում։ Հաճախ ցածր- որակ հումք է ստացվում բույսերի ծաղկատումը և բջատումը ժամանակին չկազմակերպելու, ինչպես նաև վնասատուների ու հիվանդությունների դեմ անբավարար պայքարելու հետևանքով։

Շատ տնտեսություններում աններելի ձգձգվում են նաև տերևաքաղը, հում- քի տեսակավորումն ու հակավորումը, որոնք նույնպես բացասական ազդեցու- թյուն են թողնում որակի վրա։

Հանրապետության շատ տնտեսությունների էկոնոմիկայում կարևոր նշա- նակություն ունի շաքարի ճակնդեղը։ Այս արժեքավոր կուլտուրայի մշակու- թյան գործում զգալի հաջողություններ են ձեռք բերված։

Այժմ անհրաժեշտ է պատշաճ ուշադրություն նվիրել ճակնդեղի որակի՝ շաքարայնության բարձրացման վրա, որը մեծ ռեզերվ է։ Սակայն որոշ տըն- տեսություններում շաքարայնությունը իջնում է սերմնաբուծության արատ- ների և ճակնդեղամշակության ագրոտեխնիկայի ու բերքահավաքի ժամկետ- ների խախտման հետևանքով։ Շաքարի ճակնդեղի որակը չի բարելավվում նաև այն պատճառով, որ գնագոյացման պրակտիկայում անտեսվում է ճակնդեղի օգտակարությունը և, բացի այդ, բարձրորակ ճակնդեղ արտադրող տնտեսու- թյունները չեն խրախուսվում։ Մեր կարծիքով, սխալ է, երբ շաքարի ճակնդեղի մթերման ժամանակ գործարանները հաշվի չեն առնում շաքարի պարունա- կության արմատում։ Ճիշտ չէ և այն, որ Սովետական Միության մասշտա- բով շաքարի ճակնդեղի մթերման միասնական գներ են սահմանվում։

Ճակնդեղի արմատում շաքարի տոկոսի հաշվի չառնելը և հանձնման- գնման գների դիֆերենցման բացակայությունը չի խրախուսում շաքարայնու-



թյան տոկոսի բարձրացման գործում աշխատողների նյութական շահագրգռ- վածությունը։ Ներկայումս շաքարի բարձր տոկոս պարունակող ճակնդեղի մեկ ցենտներն ունի նույն գինը, ինչ ցածր տոկոս պարունակողը։ Գների այժմյան սիստեմը չի խթանում կոլտնտեսություններում ու սովխոզներում ճակնդեղի որակի բարձրացմանը։ Փաստորեն որակի բարձրացման հետ կապված լրա- ցուցիչ ծախսերը չեն փոխհատուցվում և հասարակության համար շահավետ արտադրանքն իրենց համար դառնում է ոչ արդյունավետ։

Երկրի տարբեր տնտեսական գոտիներում մթերման միասնական գները շաքարի ճակնդեղի արտադրության մեջ շահութաբեր չեն։ Այսպես, Ուկրաինա- կան հանրապետության տնտեսություններում շաքարի ճակնդեղի մեկ ցենտ- ների ինքնարժեքը չի գերազանցում 1,5 ռուբլուց, իսկ մեր հանրապետության կոլտնտեսություններում այն չի իջնում 2,87 ռուբլուց։ Բնական է, որ ինքնար- ժեքի այսպիսի տարբերությունը և մթերման հավասար գինը շաքարի ճակըն- դեղի արտադրության համար ստեղծում է անհավասար պայմաններ։ Մեր հանրապետության կոլտնտեսությունները 1965 թվականին վատ բերք չեն ա- ճեցրել (հեկտարից 302,5 ցենտներ), սակայն մեկ ցենտների գնման գինը (2,70 ռ.) չի փոխհատուցել արտադրության ծախսերը, հետևապես հանրապե- տության կոլտնտեսություններում այն արտադրվել է վնասով։

Մեր կարծիքով անհրաժեշտ է գնման ու հանձնման գները հիմնովին զատորոշել (ըստ գյուղատնտեսական գոտիների), հիմք ընդունելով ինքնարժե- քի միջին մակարդակը և շաքարայնության տոկոսը։ Ճակնդեղի մեջ շաքարի տոկոսի համեմատ գնման գների սահմանումը կոլտնտեսություններին ու սով- խոզներին կխթանի բարձրացնելու շաքարի ճակնդեղի որակը։ Դրանով ռեալ պայմաններ կստեղծվեն այդ արժեքավոր արտադրանքի շահութաբերության բարձրացման համար։

Կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրության շահութաբերու- թյան բարձրացման համար կարևոր նշանակություն ունի նաև անասնաբուծա- կան մթերքների, մասնավորապես՝ մսի, կաթի օգուտով արտադրելը։ Սակայն այդ մթերքները շատ կոլտնտեսություններ ու սովխոզներ դեռևս արտադրում են վնասով։ Մսի շահութաբեր արտադրությանը նպաստում են արտադրական մի շարք գործոններ՝ ինքնարժեքի իջեցումը, հանձնման ու գնման գների մա- կարդակը, որակը, արտադրության ճիշտ կազմակերպումը, դրա իրացման պայմանները և այլն։ Կարևոր նշանակություն ունի նաև արտադրված մսի որակը։ Չէ՛ որ մսի գնման գները շերտավորվում և ուղղակի կախման մեջ են դրվում որակից։ Այսպես, հանրապետության կոլտնտեսություններում բարձր գիրության խոշոր եղջերավոր անասունների մսի մեկ ցենտների գնման գինը 19,6 տոկոսով բարձր է, քան միջակինը, իսկ միջակինը՝ 32,8 տոկոսով բարձր է, քան միջակից ցածրինը։ Ցածր կոնդիցիայի (ոչ ստանդարտ) խոշոր եղջե- րավոր անասունների միսը միջակից ծանր գիրության անասունների համար սահմանված գնից 20 տոկոս զեղչով է վաճառվում։ Ուրեմն, մսի ցածրորակու- թյան պատճառով խիստ իջնում է իրացման գինը, որն, իր հերթին, բացասա- բար է անդրադառնում այդ արժեքավոր մթերքի արտադրության շահութաբե- րության վրա։

Ուսումնասիրությունից պարզվում է, որ մեր հանրապետության կոլտնտե- սություններում դեռևս ցածր է արտադրվող մսի որակը։ Այդ են ցույց տալիս ստորև զետեղված աղյուսակում բերված փաստերը։

Խոշոր եղջերավոր անասունների մսի արտադրության և իրացման տնտեսական ցուցանիշները հանրապետության կոլտնտեսություններում

| Ցուցանիշներ | Տարիներ | |
|---|---|---|
| | 1961 | 1965 |
| Պետությանը վաճառված մսի գիրությունը (տոկոսներով ընդհանուրի նկատմամբ) | | |
| ա) բարձր | 5,0 | 6,8 |
| բ) միջակ | 54,3 | 54,2 |
| գ) միջակից ցածր | 40,7 | 33,7 |
| դ) նիհար | — | 5,3 |
| Տավարի մսի 1 ցենտ. ինքնարժեքը (ռուբ.) | 108,5 | 128,1 |
| Իրացված մսի 1 ցենտ. միջին գինը (ռուբ.) | 52,8 | 124,3 |
| Շահութաբերության մակարդակը (տոկոսներով) | —51,3 | - 3,0 |

Հանրապետության կոլտնտեսություններում վերջին 5 տարում խոշոր եղջերավոր անասունների միսն արտադրվում է վնասով, այսինքն՝ ինքնարժեքը բավական բարձր է, որը և հանգեցնում է արտադրության անշահավետության։ 1965 թվականին, 1964-ի համեմատությամբ, տավարի մսի ինքնարժեքը բարձրացել է 16,5, իսկ 1963-ի համեմատությամբ՝ 25,8 տոկոսով։

Խոշոր եղջերավոր անասունների մսի մեկ ցենտների ինքնարժեքը վերլուծելիս պարզվում է, որ դրա մեջ աշխատանքի վարձատրությունը 1963 թվականին կազմում էր 44,3 տոկոս, կերինը՝ 40,6, տրանսպորտի և այլ ծախսերը՝ 12,7, ընդհանուր արտադրականն ու տնտեսական ծախսերը՝ 2,4 տոկոս, իսկ 1965 թվականին՝ համապատասխանաբար 48,0, 39,1, 10,9 և 2,0 տոկոս։

Ինչպես տեսնում ենք, եթե որոշ չափով իջել են տրանսպորտի և ընդհանուր արտադրական ու տնտեսական ծախսերը, ապա կերի ծախսումները գրեթե նույնն են։ Հետևապես, մսի ինքնարժեքի իջեցման հիմնական աղբյուրներից մեկը կերի էժանացումն է։ Չափազանց ցածր է կերահայթայթման աշխատանքների մեքենայացումը, որի հետևանքով կերի ինքնարժեքը բարձր է։

Մսի և անասնապահական մյուս մթերքների ինքնարժեքի իջեցման մեծ աղբյուր է նաև արտադրանքի վրա ծախսվող կերամիավորների կրճատումը։ Գաղտնիք չէ, որ մեր տնտեսություններում կերի ոչ ճիշտ հաշվառման, շռայլման և այլ պատճառներով արտադրանքի միավորի վրա 1,5—2 անգամ ավելի կերամիավոր է ծախսվում, քան թույլատրվում է գիտականորեն հիմնավորված նորմաներով։ Միայն կերամիավորի ծախսումը նորմային հասցնելու դեպքում մսի մեկ ցենտների ինքնարժեքը կարելի է իջեցնել 15—20 տոկոսով։

Աղյուսակի տվյալները միաժամանակ վկայում են, որ կոլտնտեսությունները պատշաճ ուշադրություն չեն նվիրում արտադրված մսի որակի բարձրացմանը։ 1965 թվականին, 1961 թվականի համեմատությամբ, բարձր գիրության միսը ավելացել է 1,8 տոկոսով, իսկ միջակինը՝ մնացել է նույնը։

Առաջավոր շրջանների կոլտնտեսությունների նյութերի ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ մսի որակով է պայմանավորված շահույթի մեծությունը։ Այսպես, Սիսիանի շրջանի կոլտնտեսությունների վերջին 5 տարվա տվյալների վերլուծությունից երևում է, որ տարեցտարի բարձրանում է պետությանը հանձնված մսի որակը։ 1965 թվականին վաճառված մսի ավելի քան 85 տոկոսը եղել է բարձր և միջակ գիրության։ Այդ է պատճառը, որ մեկ



ցենտների իրացման միջին գինը, հանրապետության կոլտնտեսությունների միջինի համեմատությամբ, բարձր էր 12 տոկոսով։ Արտադրված մսի մեկ ցենտների իրացման միջին գինը գերազանցել է ինքնարժեքի մակարդակը։

Խոշոր եղջերավոր անասունների միսը օգուտով են արտադրում Ստեփանավանի և Կալինինոյի շրջանի կոլտնտեսությունները։ 1965 թվականին Ստեփանավանի շրջանի կոլտնտեսությունները ապահովել են 20, իսկ Կալինինոյինը՝ 12 տոկոս շահութաբերություն։ Այստեղ ևս բավարար է արտադրված մսի որակը։

Հանրապետության կոլտնտեսություններում խոշոր եղջերավոր անասունների մսի անշահութաբեր արտադրության պատճառներից մեկն էլ այն է, որ պետությանը վաճառված անասունների զգալի մասը եղել է ցածր քաշի մատղաշ։ 1961—1965 թվականներին կոլտնտեսությունների կողմից պետությանը վաճառված անասունների ընդհանուր գլխաքանակից 25—29 հազարը եղել է մատղաշ։ 1965 թվականին պետությանը վաճառել են մոտ 28 հազար գլուխ մատղաշ, յուրաքանչյուրը միջին հաշվով 186 կգ քաշով։ Եթե այդ 28 հազար գլուխ մատղաշը գիրացվեր և հետո վաճառվեր, ապա լրացուցիչ կստացվեր 10—11 հազար ցենտներ միս (կենդանի քաշով)։ Բացի այդ, մսացու մատղաշի ինտենսիվ աճեցումը տնտեսապես նպատակահարմար է, որովհետև նրա մեկ կգ քաշաճի համար պահանջվում է ավելի քիչ կերամիավոր։

Հանրապետության կոլտնտեսությունների տարեկան հաշվետվությունների վերլուծությունը ցույց է տալիս, որ մթերումների հիմնական շրջանում (երրորդ եռամսյակում), երբ պետությանը հանձնում են տարեկան մթերումների կեսից ավելին, պակասում է անասունների քաշը (կորցնում են կենդանի քաշի 22—23 տոկոսը)։ Այդ նկատի ունենալով, անհրաժեշտ է կատարելագործել անասունների մթերումների ու մթերման գների սիստեմը։

Ներկայումս գործող գներն ունեն 2 առանձնահատկություն.

1. սեզոնային են. 2. պայմանավորված չեն կշռային ստանդարտով, այլ դիֆերենցված են միայն ըստ անասունների գիրության։ Ըստ էության, սեզոնային գներն ուղղված են մսի արտադրության ավելացմանն ու որակի բարձրացմանը։ Սակայն դրանք երբեմն խանգարում են անասունների ինտենսիվ բտմանը։ Այսպես, հանրապետության կոլտնտեսությունները հունիս—հուլիս—օգոստոս ամիսներին խոշոր եղջերավոր անասունների մեկ տոննա միսը (կենդանի քաշով) պետությանը վաճառում են 1313,4 ռուբլով, իսկ հունվար—փետրվար—մարտ—ապրիլ ամիսներին՝ 890,4-ով։ Այդ է պատճառը, որ կոլտնտեսություններն ամառվա ամիսներին վաճառում են ցածր կոնդիցիայի, թեթև քաշի անասուններ։ Նպատակահարմար է մթերման գները շերտավորել ոչ թե ըստ սեզոնների, այլ անասունների կշռային և հասակային ստանդարտի ու գիրության։ Սա մեծապես կնպաստի տնտեսություններում թեթև քաշի ու հյուծված անասունների բտման կազմակերպմանը, հետևապես և մսի արտադրության ավելացմանն ու որակի բարձրացմանը։

Անասնաբուծական առավել արժեքավոր մթերքներից է կաթը։ Կաթի արտադրության և սպառման անընդհատ աճող պահանջների պայմաններում ավելի սրությամբ է դրվում դրա որակի բարձրացման հարցը։ Կենդանական յուղը մարդու սննդի առավել արժեքավոր տարրերից մեկն է, որն ունի բարձր սննդարարություն և լավ է յուրացվում օրգանիզմի կողմից։ Յուղի տոկոսի բարձրացման հետ միասին աճում են կաթի հաշվառքային քաշն ու գինը, իսկ վերա-

մշակման ժամանակ զգալիորեն ավելանում է կաթնամթերքի ելքը։ Տնտեսական հաշվարկները ցույց են տալիս, որ եթե կոլտնտեսություններն ու սովխոզները կաթի յուղայնությունը բարձրացնեն 0,1 տոկոսով, ապա տարեկան լրացուցիչ կստանան մոտ 36 հազար տոննա կենդանական յուղ։

Առաջավոր կոլտնտեսություններում (Մոսկվայի, Մինսկի և այլ մարզերի) կթվորները վարձատրվում են կթած կաթի քանակով՝ վերածած բազիսային յուղայնության։ Վարձատրության այդ կարգը բարձրացրեց աշխատողների շահագրգռվածությունն ու պատասխանատվությունը։ Նշված տնտեսություններում կաթի յուղայնությունը կազմում է 4—4,5 տոկոս։ Սակայն կոլտնտեսությունների գերակշռող մասում, հատկապես մեր հանրապետությունում, ներկայումս կթվորներին վարձատրելիս հաշվի չի առնվում կաթի յուղայնությունը։ Մեր կարծիքով, կթվորների ու ֆերմայի մյուս աշխատողների շահագրգռվածությունը բարձրացնելու և կաթի որակը բարելավելու համար անհրաժեշտ է նրանց աշխատանքը վարձատրել ո՛չ միայն ըստ կթած կաթի քանակի, այլև ըստ որակի, այսինքն ըստ յուղի տոկոսի մեծության։

Աշխատանքի վարձատրությունը (կապված արտադրանքի որակի հետ) ավելի վատ է բուսաբուծության մեջ։ Այսպես, հացահատիկի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի, խաղողի, պտուղների, բանջարեղենի և կերային կուլտուրաների արտադրության մեջ արտադրանքի որակի և կոլտնտեսականների ու բանվորների աշխատանքի վարձատրության մակարդակի միջև ուղղակի կապ չկա. աշխատանքը, լավագույն դեպքում, վարձատրվում է արտադրված արտադրանքի քանակով, այսինքն՝ առանձին մթերքներ արտադրող աշխատողների վարձատրությունը կատարվում է քանակական ցուցանիշների հիման վրա, անհրաժեշտ չափով հաշվի չեն առնվում որակական ցուցանիշները։

Արտադրանքի որակի համար մղվող պայքարն անիմաստ է պատկերացնել՝ առանց ըստ աշխատանքի բաշխման օրենքի հետ որակի ունեցած կապի։ Բաշխումը պետք է կատարել ո՛չ միայն ըստ քանակի, այլև ըստ արտադրված արտադրանքի որակի, որը կխթանի նրա բարելավմանը։

Աշխատանքի ճիշտ կազմակերպումն ու վարձատրումը, ինչպես նաև գնման-հանձնման գների սիստեմի կատարելագործումը միաժամանակ պայմաններ կստեղծեն, որպեսզի տնտեսությունների տրամադրության տակ եղած նյութատեխնիկական միջոցները օգտագործվեն առավելագույն արդյունավետությամբ։ Անհրաժեշտ է որոնել գյուղատնտեսական մթերքների որակի բարձրացման ուղիներ, ապահովել շահութաբերության բարձր մակարդակ։ Գյուղատնտեսական մթերքների որակը պետք է դառնա կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական գործունեությունը բնութագրող կարևորագույն ցուցանիշներից մեկը։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

## ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՀՈԳՍԸ

Մեր շրջանի աշխատավորները, սովետական ժողովրդի հետ միասին, մեծ Հոկտեմբերի պանծալի 50-ամյակն են դիմավորում տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառներում ձեռք բերած լուրջ նվաճումներով։ Դրանք ցուցադրելու համար սովորաբար դիմում են թվական համեմատությունների։ Սակայն այս անգամ շրջանցենք այդ։

Մինչև հեղափոխությունը Ապարանը Հայաստանի ամենահետամնաց շրջաններից մեկն էր, ուր աչքի էին զարնում մասսայական չքավորությունն ու աղքատությունը։ Ապարանցիները դրանցից ազատվեցին և սկսեցին մարդավայել ապրել միայն Հայաստանում սովետական կարգերի հաստատումից հետո։ Անցած տասնամյակների ընթացքում հիմնովին փոխվել է շրջանի դեմքը։ Ստեղծվել են հարուստ կոլտնտեսություններ, ծնունդ առել արդյունաբերական ձեռնարկություններ։ Տնտեսական ընդհանուր հաջողությունների ֆոնի վրա բարձրացել է աշխատավորների նյութական բարեկեցության մակարդակը, բարելավվել են նրանց կուլտուր-կենցաղային պայմանները։

Կենսագործելով կուսակցության և կառավարության ցուցումները, շրջանի կուսակցական ու սովետական կազմակերպություններն առանձնապես վերջին տարիներին զգալի գործ են արել շրջկենտրոնի և գյուղերի բարեկարգման ուղղությամբ։ Պետական միջոցներով, նրա օգնությամբ ու աշխատավորների սեփական միջոցներով 1964—66 թվականներին շրջանում կառուցվել ու շահագործման են հանձնվել 2000-ից ավելի բնակելի տուն, 7 դպրոց և այլ շենքեր։ Շրջկենտրոնում բարեկարգվել և ձևավորվել են 3 փողոց, անցկացվել են կոյուղի և ջրմուղ, բոլոր թաղամասերում կան ջրի ծորակներ, տնկվել է 55 հազար պտղատու ծառ։ Ապարանից գրեթե բոլոր գյուղերն են գնում երթային ավտոբուսներ։ Գյուղերն ապահովված են էլեկտրաէներգիայով, իսկ շատ տնտեսություններ էլեկտրաէներգիան օգտագործում են նաև արտադրության մեջ։ Համարյա բոլոր գյուղերում անցկացվել են հեռախոս և ռադիո, նրանք ունեն նաև ակումբ, գրադարան, դպրոց և կուլտուր-կենցաղային սպասարկման օբյեկտներ։ Վաղուց վերացված է անգրագիտությունը, իսկ այժմ երեք բնակչից մեկը սովորում է հանրակրթական դպրոցում։ Ամբողջ բնակչությունն ստանում է 10,5 հազար օրինակ թերթ և ամսագիր։

Շրջանի ազգաբնակչության կենցաղի բարելավման բնագավառում խոշոր առաջընթաց քայլ է 20 գյուղի գազիֆիկացումը։ Դա մեծ չափով բարելավել է գյուղի աշխատավորների կենցաղը, նպաստել նրանց կուլտուրական կյանքի ծաղկմանը։

Կուսակցական կազմակերպությունների օգնությամբ սպառկոոպերացիայի աշխատողներն ավելի ուշադիր են դարձել բնակչության պահանջների հաշվառման ու կատարման նկատմամբ, որը տալիս է իր դրական արդյունքը և մեծ չափով նպաստում ապրանքաշրջանառության ավելացմանը։ Ապրանքաշրջանառության տարեցտարի ընդլայնման մասին են խոսում հետևյալ փաստերը. 1958 թվականին շրջանի բնակչությանը վաճառվել է 2 միլիոն 597 հազար ռուբլու արդյունաբերական ապրանքներ, 1966 թվականին՝ 5 միլիոն 401 հազար։ Անցած հինգ տարում միայն շրջսպառկոոպմիությունը վաճառել է 904 հեռուստացույց, 385 լվացքի մեքենա, 502 սառնարան, 50 դաշնամուր, 500 հազար ռուբլու կահույք և այլ իրեր։

Հարկ է նշել, որ 1964—66 թվականներին շրջանում շահագործման է հանձնվել 20 առևտրական օբյեկտ (շրջկենտրոնում՝ ռեստորանը, ունիվերմագը, մթերային խանութը, իսկ Ջարջարիս, Ղոնդաղսազ, Բուջակ, Վարդենուտ գյուղերում՝ նոր խանութներ և այլն)։ Սակայն, այս ամենի հետ մեկտեղ, դեռևս շատ անելիքներ կան։ 1967 թվականին պետք է ավարտվի շրջկենտրոնի բանջարեղենի, գրքի և կահույքի խանութների, սառնարանի և հացի գործարանների շինարարությունը։ Պետք է ավարտել նաև Արայի, Զորագլուխ, Ջամուշլու, Չոբանմազ գյուղերի խանութների շինարարությունը։

Աշխատավորների կուլտսպասարկման գործում, իհարկե, մեծ անելիքներ ունեն կուլտուրայի տները, ակումբները, գրադարանները։ Սրանք կոչված են կազմակերպելու աշխատավորության կուլտուրական հանգիստը, արտադրության առաջավորների փորձի փոխանակումը, դաստիարակելու մեր աշխատավորների գեղագիտական ճաշակը։ Շրջանի կուլտլուս հիմնարկները այդ առումով որոշակի գործ կատարում են։ Բավական է նշել, որ նրանք գեղարվեստական ինքնագործ խմբերի միջոցով անցած տարի տվել են 300 ներկայացում և բնակչության տարբեր խավերի համար կազմակերպել են 1100 դասախոսություն։

Շրջանի կուսակցական, սովետական և տնտեսական օրգանները մշտապես զբաղվում են աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման հարցով։ Այդ հարցը պարբերաբար քննարկվում է կուսշրջկոմի բյուրոյի նիստերում, պլենումներում և սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում։ Վերջերս այն հանգամանորեն քննարկեց կուսշրջկոմի հերթական պլենումը, որին մասնակցում էին նաև Հայկական ՍՍՀ բնակչության կենցաղ-սպասարկման մինիստր Գ. Ալեքյանը, կոմունալ տնտեսության մինիստր Հ. Թուխիկյանը և Հայկոոպի վարչության նախագահ Ս. Չարչօղլյանը։ Հանրագումարի բերելով բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ուղղությամբ կատարված աշխատանքը, պլենումը միաժամանակ բացահայտեց թերությունները և կուսկազմակերպությունների ուշադրությունը բևեռեց այն բանի վրա, որպեսզի նրանք սիստեմատիկաբար զբաղվեն բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկման հարցերով և իրական օգնություն ցույց տան համապատասխան օրգաններին՝ այդ կարևոր գործն իր արժանի բարձրության վրա դնելու համար։

Բնակչության կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման ուղղությամբ կոնկրետ և նպատակասլաց գործունեություն են ծավալում կոլտնտեսությունների վարչություններն ու կուսկազմակերպությունները, գյուղական սովետները։ Զորագլխում և Մելիքգյուղում արդեն շահագործման են հանձնը-



վել նորակառույց ակումբները։ Հոբելյանական տարում կավարտվի Վարդենուտ գյուղի ակումբի երկհարկանի շենքի կառուցումը. նախատեսված է այդպիսի ակումբ կառուցել նաև Երնջատափում։ Շենավանի, Թթուջրի և մի շարք այլ կոլտնտեսություններում նորոգվում ու վերակառուցվում են ակումբները։ Նախատեսված է կինոթատրոնների շենքեր կառուցել Ապարան, Արագած, Շենավան և Քուչակ գյուղերում։

Չնայած այս ամենին, կենցաղ սպասարկման մի շարք էական հարցեր մեզ մոտ դրեթե բարձիթողի են։ Բավական է ասել, որ շրջանի 34 գյուղերից միայն երկուսում կա բաղնիք, շատ գյուղերում չկան կուլտուր-կենցաղային իրերի վերանորոգման արհեստանոցներ և այլն։

Շրջանային կազմակերպությունները ջանում են առաջիկայում վերացնել այդ թերությունը և վճռական բեկում մտցնել աշխատավորների կուլտուր-կենցաղային սպասարկման գործում։ Այս տարի, օրինակ, շահագործման կըհանձնվի շրջկենտրոնի նոր բաղնիքը, կարագացվի Շենավանի և Զորագլխի բաղնիքների շինարարությունը, նոր բաղնիքներ կկառուցեն Վարդենուտի և Մելիքգյուղի կոլտնտեսությունները։ Բացի այդ, կշարունակվի շրջկենտրոնի տաղավարի շինարարությունը, որի շնորհիվ կընդարձակվեն կենցաղային սպասարկման արտադրամասերը և կստեղծվեն նորերը։ Քուչակ, Ալագյազ, Արագած և մի շարք այլ գյուղերում նույնպես կստեղծվեն կենցաղ-սպասարկման նոր տաղավարներ։

Հաշվի առնելով գյուղական աղգաբնակչության օրավուր աճող պահանջմունքները և նրանց կուլտկենցաղային սպասարկման կարևորությունը, շրջանի տնտեսապես ուժեղ կոլտնտեսություններն իրենց հերթին իրոք աչքի ընկնող գործ են կատարում կոմունալ և կուլտլուս օբյեկտների կառուցման ուղղությամբ։ Հենց առաջիկա տարիներին շրջանում կոլտնտեսությունների միջոցներով կկառուցվեն 5 դպրոց, 9 ակումբ, 13 բաղնիք, 3 հացի փուռ, 3 մանկապարտեզ, 5 բուժկետ, 9 կենցաղային տաղավար, 4 գյուղում կանցկացվի ջրմուղ և այլն։

Այս միջոցառումների իրականացումը զգալիորեն կբարելավի գյուղական բնակչության կուլտուր-կենցաղային սպասարկումը։

Կենցաղի, կուլտուրայի հարցերը մեծ են ու բարդ։ Այդ հարցերի լուծման գործում էական նշանակություն ունի աշխատավորների մոբիլիզացումը, նրանց ուժերի ու ստեղծագործական նախաձեռնությունների օգտագործումը։ Առանց դրա չի կարելի լուրջ քայլեր կատարել և սպասել, որ ամեն ինչ կատարվի միայն պետական օրգանների կողմից։ Սեփական միջոցների և, հատկապես, բնակչության ուժերի օգտագործման նպատակով մեր կուսկազմակերպությունները մասսայական-քաղաքական լայն աշխատանք են ծավալում, նոր մեթոդներ ու միջոցառումներ գործադրում, փորձի փոխանակում կատարում և այլն, որոնք շոշափելի արդյունք են տալիս։

Այդ տեսակետից հետաքրքրական էր Ապարանի և Երևան քաղաքի Օրջոնիկիձեի շրջանի աշխատավորների վերջերս կայացած հանդիպման երեկոն՝ նվիրված Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակին։ Երեկոյի մասնակիցները զեկուցումներ լսեցին երկու շրջանների աշխատավորների կյանքի և գործերի մասին, կիսեցին իրենց նվիրական իղձերն ու ստեղծագործական մտահղացումները։ Ողջույնի խոսքով հանդես եկան մայրաքաղաքի գրողներն ու կուլտուրայի գործիչները, Ապարանի շըր-

ջանի կուլտուրայի տան երգի-պարի ինքնագործ խմբերը, մենակատարները։

Գյուղի աշխատավորության կուլտուր-կենցաղային պայմանների հիմնովին բարելավումը համապետական մեծ գործ է, որը, ինչ խոսք, հնարավոր չէ իրականացնել միայն տեղական կազմակերպությունների ուժերով։ Գյուղին մեծ օգնություն պետք է ցույց տան քաղաքը, հանրապետության համապատասխան կազմակերպությունները։

Ա. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ
ՀԿԿ Ապարանի կուսշրջկոմի քարտուղար

## ԿՈՒԼՏՈՒՐԱԿԱՆ ԱՌԵՎՏՐԻ ՀԱՄԱՐ

Սովետական առևտրի աշխատողը պետական-հասարակական մեծ գործ է կատարում, եթե ազնիվ, բարեխղճորեն է վերաբերվում իր պարտականություններին։ Առևտրի ցանցի հստակ աշխատանքը, բնակչությանը ժամանակին անհրաժեշտ ապրանքներով ապահովելը օգնում է հասարակական կյանքի կազմակերպմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության պլանների կատարմանը, բարձրացնում մարդկանց տրամադրությունը։

Ինքնին հասկանալի է, որ առևտրական կազմակերպությունների ու ձեռնարկությունների հաջող գործունեությունը կախված է կուսակցական կազմակերպությունից, այն բանից, թե նրանք ինչպես են զբաղվում կադրերի ընտրության ու դաստիարակության, աշխատանքային կարգապահության ամրապնդման հարցերով և այլն։

Այդ տեսակետից ուսանելի է Աշտարակի շրջսպառկոոպմիության ըսկզբնական կուսկազմակերպության աշխատանքի փորձը։ Կուսկազմակերպությունը և նրա բյուրոն անցած մեկ տարում բազմաթիվ հարցեր են քննարկել՝ կապված առևտրի կուլտուրան բարձրացնելու և բնակչության սպասարկումը բարելավելու հետ։ Նրանք քննարկել են նաև կադրերի ընտրության, դաստիարակության, կոմունիստների քաղաքական ուսուցման և այլ կարևոր հարցեր։

Շրջսպառկոոպմիության կուսկազմակերպությանը կից գործում են կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրման սեմինարը և մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցը, որոնք քաղաքական անհրաժեշտ գիտելիքներ են տալիս կոմունիստներին և անկուսակցական ակտիվիստներին։ Լավ արդյունքներ են տալիս նաև տարբեր թեմաներով պարբերաբար կազմակերպվող դասախոսություններն ու զրույցները։

Առևտրի ցանցի աշխատողների շրջանում քաղմասսայական և կուլտուրլուսավորական աշխատանքներն ավելի լայնորեն ծավալելու նպատակով, կուսկազմակերպությունն ամենօրյա օգնություն է ցույց տալիս կոմերիտական, արհմիութենական և հասարակական մյուս կազմակերպություններին, նրանց ակտիվ մասնակից դարձնում կուլտուրական առևտրի կազմակերպման, գնորդների պահանջարկի ուսումնասիրման և մյուս պրակտիկ հարցերի լուծմանը։

Հասարակական կազմակերպությունների մասին խոսելիս չի կարելի շրջանցել շրջսպառկոոպմիությունում ըստեղծված երիտասարդ մասնագետների խորհուրդը։ Այն զբաղվում է վերջիններիս որակավորման, նրանց տեսական և պրակտիկ գիտելիքների հարստացմամբ, սովորեցնում կուլտուրական սպասարկման մեթոդներն ու ձևերը։

Կուսկազմակերպությունն աջակցում և պրակտիկ օգնություն է ցույց տալիս աշխատողների նաև մասնագիտական ուսուցմանը։ Ներկայումս շրջսպառկոոպմիության սիստեմի 446 աշխատողից 63-ն ունեն բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն, 33-ը միամյա մասնագիտական դպրոցի շրջանավարտներ են, 74-ը հեռակա կարգով սովորում են Երևանի կոոպերատիվ տեխնիկումում և Մոսկվայի կոոպերատիվ ինստիտուտի Երևանի ֆիլիալում։ Մյուսներն էլ իրենց մասնագիտական որակավորումը բարձրացնում են շրջկոոպմիության վարչության կազմակերպած տեխնիկումի, աշխատանքի առաջավոր ձևերի ու մեթոդների տարածման զանազան խմբակներում։

Կուսկազմակերպության առջև ծառացած կարևոր հարցերից մեկը եղել և մնում է կադրերի ընտրության, տեղադրման և դաստիարակության հարցը։ Այստեղ լավ է կազմակերպված կոմունիստների և մասնագետների տեղաբաշխումը։ Այնպիսի կարևոր բընագավառներ, ինչպիսիք են՝ առևտրի ու հասարակական սննդի կազմակերպումը, գյուղատնտեսական մթերքների գնումներն ու մթերումները, վստահված են բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող, կազմակերպական ունակություններով օժտված կոմունիստների և առաջավոր անկուսակցական ընկերների։

Կուսկազմակերպությունը հատկապես հոգատարությամբ է զբաղվում երիտասարդ կադրերի հարցով։ Միջնակարգ դպրոցների շրջանավարտներից 1966 թվականին այստեղ աշխատանքի են ընդունվել 39 հոգի, և արդեն բացվել են կոմերիտական-երիտասարդական 7 խանութներ։ Վերջերս Աշտարակ քաղաքում շահագործման հանձնվեց երիտասարդական սրճարան, ուր բոլոր աշխատողները կոմերիտականներ և երիտասարդներ են։

Կադրերի հետ տարվող ամենօրյա աշխատանքը հնարավորություն է ընձեռում շրջսպառկոոպմիության վարչությանը և կուսկազմակերպությանը ժամանակին նկատել և առաջ քաշել ձեռներեց ու ազնիվ մարդկանց։ Կոմունիստ Խաչիկ Մուրադյանը առաջ շարքային հաշվապահ էր, այժմ սնունդ կոմբինատի դիրեկտոր է, պատասխանատու վաճառող Ռոբերտ Մովսիսյանը առաջ է քաշվել որպես ապրանքագետ, պատասխանատու վաճառող Ավետիք Հովհաննիսյանը՝ սովխոզ-բանկոոպի առևտրի բաժնի վարիչ և այլն։

Կուսակցական կազմակերպության համակողմանի դաստիարակչական գործունեության շնորհիվ շրջկոոպմիության ցանցի բազմաթիվ աշխատողներ վայելում են բնակչության սերն ու համակրանքը։ Նրանցից են՝ վաճառասեղանի աշխատող Վերգինե Մանգելյանը, որը վերջերս ՍՍՀՄ Գերագույն սովետի կողմից պարգևատրվեց «Պատվո նշան» շքանշանով, պահեստապետ Ասլան Թորոսյանը, պատ. վաճառող Շուշիկ Թովմասյանը և ուրիշներ։

Կուսկազմակերպության հաջող գործունեության արդյունք պետք է համարել և այն, որ 1966 թվականի ապրանքաշրջանառության պլանը կատարվեց 106, հասարակական սննդի պլանը՝ 104 և գյուղատնտեսական մթերքների մթերումներինը՝ 128 տոկոսով։ Ավելացել է աշխատանքի ծավալը, աճել առևտրական կետերի թիվը։ Ներկայումս շրջանում գործում են 132 մանրածախ առևտրի ձեռնարկություններ, որոնք այլ շրջանների համեմատ առևտրի կուլտուրայում զգալի նվաճումներ ունեն։ Բարձրացել է բնակչության սպասարկման կուլտուրան։

Աշտարակի կոոպերատորները ըղձալի հաջողությունների են հասել սոցիալիստական մրցության շնորհիվ։ Տարիներ շարունակ նրանք մրցման մեջ են Աբովյանի շրջանի կոոպերատորների հետ։ Շրջսպառկոոպմիության մեծ թվով աշխատողներ պայքարում են կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման համար. 9 բրիգադաներ արդեն արժանացել են այդ պատվավոր կոչմանը։

Աշտարակ-Աբովյան մրցությունում առաջնությունը Աշտարակի շրջսպառկոոպմիության կոլեկտիվինն է, որը 1965 թվականի 3-րդ եռամսյակից սկսած իր ձեռքում է պահում Հայկոոպի վարչության և առևտրի աշխատողների պրոֆմիության հանրապետական կոմիտեի փոխանցիկ դրոշը։

Անվիճելի են Աշտարակի շրջսպառկոոպմիության (վարչության նախագահ Գ. Գյուրջյան) կոլեկտիվի հաջողությունները։ Սակայն կուսկազմակերպությունը ձգտում է, որ կոմունիստներն ու կոոպերատորները չբավարարվեն ձեռք բերվածով։

Կուսկազմակերպությունը մշակել է ՍՄԿԿ Կենտկոմի «Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակին նախապատրաստվելու մասին» որոշման կենսագործման միջոցառումները, որոնք մասսայականացվել են։ Այժմ պրոպագանդիստներն ու ագիտատորները անց են կացնում զեկուցումներ և զրույցներ՝ նվիրված մեծ տարելիցին, մարդկանց բացատրում Հոկտեմբերի համաշխարհային-պատմական նշանակությունը, հիսուն տարվա ընթացքում մեր երկրում տեղի ունեցած մեծ վերափոխումների իմաստը։

Ժ. ՍԱՐԳՍՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի հրահանգիչ

## ՍՄԿԿ-ՈՒՄ ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅԱՆ ՓԱՍՏԱԹՂԹԵՐԻ ՁԵՎԱԿԵՐՊՄԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՓՈՓՈԽՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Ինչպես հայտնի է, կուսակցության XXIII համագումարը մասնակի փոփոխություններ մտցրեց ՍՄԿԿ կանոնադրության մեջ։ Անդրադառնալով կուսակցության անդամության հարցին, համագումարը պահանջեց առավել լուրջ ուշադրություն նվիրել կուսակցության շարքերի ընդունելությանը, բարձրացնել ՍՄԿԿ անդամների պատասխանատվությունը։

Մեր հասարակության կյանքում կուսակցության դերի և նշանակության աճին զուգընթաց, մեծանում են պահանջները նրա շարքերն ընդունվողների նկատմամբ։ Այդ վերաբերում է նաև կուսակցության շարքերն ընդունվողների փաստաթղթերի ձևակերպմանը, քանի որ դրանք հիմք են դառնում սկզբնական կուսկազմակերպության, ինչպես և համապատասխան վերադաս կուսակցական օրգանի՝ շրջկոմի, քաղկոմի որոշումների համար։ Այդ նպատակով ՍՄԿԿ Կենտկոմը, ելնելով կուսակցության XXIII համագումարի պահանջներից, անհրաժեշտ գտավ ընդունելության փաստաթղթերի ձևակերպման գործող պրակտիկայի մեջ որոշ փոփոխություններ մտցնել։

Յուրաքանչյուր սովետական քաղաքացի, որի 18 տարին արդեն լրացել է և ցանկանում է ընդունվել ՍՄԿԿ շարքերը, պարտավոր է համապատասխան սկզբնական կուսկազմակերպությանը ներկայացնել իր ձեռքով գրված դիմում, ինքնակենսագրություն, ինչպես նաև երեք երաշխավորություն՝ կուսակցության երեք անդամից, որոնք ունեն ոչ պակաս հինգ տարվա կուսակցական ստաժ ու նրա շարքերն ընդունվողին ճանաչում են ոչ պակաս քան մեկ տարվա համատեղ արտադրական և հասարակական աշխատանքում։ Այն քաղաքացիները, որոնք ՀամԼԿԵՄ անդամ են, պետք է մեկ երաշխավորություն ներկայացնեն ՀամԼԿԵՄ քաղկոմից կամ շրջկոմից, որը հավասարեցվում է կուսակցության մեկ անդամի երաշխավորությանը։

Մինչև 23 տարեկան հասակ ունեցող երիտասարդները, համաձայն նոր կանոնադրության, ՍՄԿԿ շարքերը կարող են ընդունվել միայն ՀամԼԿԵՄ միջոցով և պահանջվող երեք երաշխավորագրերից մեկը պետք է ներկայացնեն համապատասխան ՀամԼԿԵՄ քաղկոմից, շրջկոմից։

Մինչև ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը ՀամԼԿԵՄ քաղկոմները, շրջկոմները կուսակցական կազմակերպություններին կոնկրետ որոշումներ են ներկայացրել այս կամ այն կոմերիտականին ՍՄԿԿ շարքերն անդամ կամ անդամության թեկնածու երաշխավորելու վերաբերյալ։ Հասկանալի է, որ այդ փաստաթղթերով դժվար էր դատել երաշխավորվողի գործնական, բարոյական, քաղաքական արժանիքների մասին։ Այսուհետև ՍՄԿԿ շարքերը անդամ և անդամության թեկնածու ընդունվելու համար ՀամԼԿԵՄ քաղկոմների, շրջկոմների երաշխավորագրերը պետք է բովանդակեն կուսակցության շարքերը երաշխավորվող կոմերիտականի գործնական, բարոյական, քաղաքական հատկանիշների ընդարձակ բնութագրերը, խստորեն համապատասխանեն ՍՄԿԿ կանոնադրության այն պահանջներին, որոնք ներկայացվում են կուսակցականների երաշխավորագրերին։

ՀամԼԿԵՄ քաղկոմ-շրջկոմների որոշումները կարող են ձևակերպվել մոտավորապես այսպես.

1. Ընկեր . . . . . . (անունազգանուն, հայրանուն):

19 . . թվականից ՀամԼԿԵՄ անդամ, ծնված 19 . . . թ.

երաշխավորել ՍՄԿԿ անդամ (անդամության թեկնածու):

2. Հաստատել երաշխավորագրի տեքստը, որը կցվում է որոշմանը։

Մյուս փոփոխությունը վերաբերում է ՍՄԿԿ շարքերն ընդունելու վերաբերյալ կոմունիստների ընդհանուր ժողովների արձանագրությունների քաղվածքներին։ Ինչպես հայտնի է, մինչև հիմա սկզբնական կուսկազմակերպությունը ՍՄԿԿ շարքերն ընդունվելու համար տրված դիմումների քննարկման մասին ընդհանուր ժողովների արձանագրությունների քաղվածքները կուսակցության մեջ ընդունվողների փաստաթղթերի հետ քաղկոմ-շրջկոմ չէր ներկայացնում. սկզբնական կուսկազմակերպության որոշումը համառոտ գրանցվում էր ընդունվողի անկետայում։

Այժմ սահմանված է, որ ՍՄԿԿ մեջ ընդունվելու մասին որոշման բովանդակությունը անկետայում գրանցելու հետ միասին, սկզբնական կուսկազմակերպությունը պարտավոր է քաղկոմ-շրջկոմ ներկայացնել կոմունիստների ընդհանուր ժողովի արձանագրության քաղվածքը՝ ՍՄԿԿ շարքերն ընդունված յուրաքանչյուր անդամի, անդամության թեկնածուի վերաբերյալ։

Այդ պատճառով էլ կուսակցության շարքերն ընդունվողի անկետայում եղած «ծանոթությունն» այն մասին, թե այդպիսի քաղվածքը քաղկոմ-շրջկոմ չի ներկայացվում, անկետայից հանված է։ Ուստի, հանրապետության կուսակցական կազմակերպություններում գործածության մեջ գտնվող նման անկե-

տաներն օգտագործելիս չպետք է ուշադրություն դարձնել այդ ծանոթության վրա և սկզբնական կուսկազմակերպությունների ընդհանուր ժողովների արձանագրությունների քաղվածքները 3—4 օրվա ընթացքում, ընդունելության գործի հետ միասին, պետք է ներկայացնել համապատասխան քաղկոմ-շրջկոմ՝ հաստատման համար:

Անհրաժեշտ է, որ քաղվածքներից երևա, թե ինչպես է ընթացել տվյալ ընկերոջ ընդունելությունը կուսակցության մեջ: Այսինքն՝ քաղվածքում պետք է ձևակերպված լինի տվյալ կուսկազմակերպության հաշվառման մեջ գտնվող ու ժողովին մասնակցող կոմունիստների թիվը, ըստ էության արտահայտված կոմունիստների ելույթները, առաջարկությունները, քվեարկության ընթացքը և այն, թե ապահովվե՞լ է, արդյոք, ընդունելության համար պահանջվող ձայների երկու երրորդը, թե ոչ:

Խոշոր կուսկազմակերպություններում, որտեղ կան կոմիտեներ և արտադրամասային կազմակերպություններ, որոնք օգտվում են սկզբնական կազմակերպությունների իրավունքներից, քաղկոմ-շրջկոմ ներկայացվող ՍՄԿԿ շարքերի ընդունելության գործերում պետք է լինի երկու քաղվածք՝ արտադրամասի կոմունիստների ընդհանուր ժողովի և կուսկոմիտեի նիստի արձանագրություններից:

ՍՄԿԿ քաղկոմ-շրջկոմների բյուրոների արձանագրություններում բացի կուսակցության անդամ և անդամության թեկնածու ընդունվողի անուն-ազգանուն-հայրանունից, պետք է նշել նաև ծննդյան թիվը, ազգությունը, կրթությունը, ՀամԼԿԵՄ անդամ է, թե ոչ, որտե՞ղ և որպես ի՞նչ է աշխատում, երաշխավորողների անունը, ազգանունը և հայրանունը, նրանցից յուրաքանչյուրը երբվանի՞ց է ճանաչում երաշխավորվողին: Եթե ՍՄԿԿ անդամ ընդունվողի հարցն է որոշվում, ապա արձանագրության մեջ պետք է նշել նաև, թե ո՞ր կազմակերպությունը (քաղկոմ, շրջկոմ) ո՞ր ամսին ու թվականին է ընդունել ՍՄԿԿ անդամության թեկնածու:

Քաղկոմ-շրջկոմների բյուրոների արձանագրությունների այս տվյալները վերադաս կուսօրգաններին հնարավորություն են ընձեռում հսկելու սահմանված պայմանների ճշգրիտ կիրառմանը կուսկազմակերպություններում:

Դրա համար էլ ՍՄԿԿ ընդունելության գործերում եղած փաստաթղթերում (անկետաներ, երաշխավորագրեր, քաղվածքներ) առանց ջնջումների, ուղղումների, բառերի անթույլատրելի կրճատումների, պահանջվող բոլոր հարցերին պետք է տրվեն ճիշտ, պարզ ու կոնկրետ պատասխաններ: Անհրաժեշտ է, որ անկետայում ընդգրկված հարցերի պատասխանները համընկնեն ինքնակենսագրության, ժողովի արձանագրության և գործում եղած մյուս բոլոր փաստաթղթերին, ինչպես նաև իրենց անձնական քաղաքացիական և մյուս փաստաթղթերում եղած տվյալներին:

Սխալներ թույլ չտալու համար կուսկազմակերպությունները այսուհետև պետք է է՛լ ավելի մեծ ուշադրություն նվիրեն ընդունելության գործերի ձևակերպման բարելավմանը և օբյեկտիվ որոշումներ կայացնեն:

Ա. ԶԱԼԻՆՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի կուսակցական միասնական տոմսի և կուս-վիճակագրական սեկտորի վարիչ

# ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ ամբիոն

Հ. ՄԻՐԶՈՅԱՆ

## Ս. ՋՈՒՂԱՅԵՑՈՒ ԻՄԱՑՈՒԹՅԱՆ ՈՒՍՄՈՒՆՔԸ

1605 թ. Շահ-Աբասի բռնագաղթի ժամանակ պատմական Հին-Ջուղայից Պարսկաստան տարվող հայերի թվում կար նաև 9—10 տարեկան մի մանուկ, որը տարիներ հետո դարձավ նշանավոր փիլիսոփա, լեզվաբան, հմուտ մանկավարժ, հասարակական գործիչ, խոր հետք թողեց հայ և վրաց փիլիսոփայական ու լեզվաբանական մտքի զարգացման վրա: Այդ մանուկը Սիմեոն Ջուղայեցին էր: Հաստատվելով Պարսկաստանի մայրաքաղաք Սպահանի մոտ հիմնադրվող Նոր-Ջուղա գյուղաքաղաքում, Սիմեոնն այնտեղ էլ ստանում է իր սկզբնական կրթությունը, իսկ 1620 թվականին աշակերտում տեղի հոգևոր առաջնորդ Խաչատուր Կեսարացուն:

Սիմեոն Ջուղայեցու գլխավոր աշխատությունը՝ Տրամաբանութիւնը, մոտ քսան տարվա գիտամանկավարժական բեղուն գործունեության արգասիք է, որն աչքի է ընկնում իր պարզ ու մատչելի լեզվով, հարցերի բազմակողմանի ու խոր վերլուծությամբ: Միաժամանակ դա հայ իրականության մեջ փիլիսոփայական մյուս գիտություններից ու քերականությունից տրամաբանությունը զատելու առաջին լուրջ փորձն է:

***

Խոսելով փիլիսոփայական մտքի երկու հիմնական ուղղությունների՝ մատերիալիզմի ու իդեալիզմի պայքարի մասին, Ֆրիդրիխ Էնգելսը գրում է. «Մտածողության և կեցության հարաբերության հարցը ունի դարձյալ և մի ուրիշ կողմ. մեր մտքերը մեզ շրջապատող աշխարհի մասին ինչպե՞ս են վերաբերում այդ իսկ աշխարհին: Արդյոք մեր մտածողությունն ի վիճակի՞ է ճանաչելու իրական աշխարհը, արդյոք մենք կարո՞ղ ենք իրական աշխարհի վերաբերյալ մեր պատկերացումների ու հասկացությունների մեջ կազմել իրականության ճիշտ արտացոլումը: Փիլիսոփայական լեզվով ասած՝ այս հարցը կոչվում է մտածողության և կեցության նույնության հարց: Փիլիսոփաների հսկայական մեծամասնությունը դրականորեն է լուծում այս հարցը: Հեգելի մոտ այս հարցի դրական պատասխանն ըստինքյան հասկանալի է» (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. II, Երևան, 1950, էջ 473—474):

Ինչպես տեսնում ենք, Ֆ. Էնգելսն այն կարծիքին է, թե պարտադիր չէ, որ փիլիսոփայական հիմնական հարցն իդեալիստորեն լուծող ամեն մի մտածող նույնպիսի պատասխան տա նաև իմացաբանական հարցին։ Հնարավոր է, որ մեկը գոյաբանական հարցը լուծի իդեալիստորեն, իսկ ճանաչողական բնույթի հարցին տա ճիշտ պատասխան։ Այդպիսի մտածող է Սիմեոն Ջուղայեցին։

Հայտնի է, որ հայ փիլիսոփայության պատմության մեջ իմացաբանության հարցերն առաջին անգամ խոր քննության առարկա է դարձրել Դավիթ Անհաղթն իր Սահմանք իմաստասիրութեան աշխատասիրության մեջ, ուր ղեկավարվելով արիստոտելյան մեթոդոլոգիայով, գոյի հարցը մանրամասնորեն վերլուծում է չորս տեսանկյունից, առաջադրելով չորս հիմնական հարց՝ «Եթե՞ է, զի՞նչ է, որպիսի՞ ինչ է և վասն է՞ր է»։ Հետագայում այս հարցերն ավանդաբար պահպանվել են բոլոր մտածողների մոտ, ընդհուպ մինչև Տաթևի դպրոցի ներկայացուցիչները։ Իհարկե, վերջիններիս մոտ դրանք չեն դրվում նույնությամբ, բայց և այնպես բոլորն էլ առկա են։ Հայ և այլ ժողովուրդների փիլիսոփայությանը գիտակ Սիմեոն Ջուղայեցուն ևս հայտնի են այդ հարցերը, բայց սորկամտորեն չկրկնելով իր նախորդների ասածները, ինչպես շատ անգամ, այնպես էլ այստեղ, նա ցուցաբերում է ստեղծագործական ինքնուրույն մոտեցում, քննության առնելով միայն երկրորդ և երրորդ հարցերը, մի կողմ թողնելով առաջինն ու վերջինը։

«Եթե՞ է»-ն, նա քննության չի առնում այն պարզ պատճառով, որ Դավիթ Անհաղթը դրան հատուկ ուշադրություն էր նվիրել անտիկ սկեպտիցիզմի, մասնավորապես Պիրհոնի, աշխարհի գոյությունը և նրա ուսումնասիրությամբ զբաղվող փիլիսոփայության անհրաժեշտությունը ժխտող սկզբունքների դեմ պայքարելու առնչությամբ։ Իսկ Ջուղայեցու ժամանակ հայ իրականության մեջ դրա կարիքն այլևս չէր զգացվում. անտիկ սկեպտիցիզմը վաղուց վերացել էր, իսկ նոր շրջանի սկեպտիցիզմին նա դեռ ծանոթ չէր։ Ուստի, Ջուղայեցին դրան հատուկ ուշադրություն չի նվիրում՝ մեկ անգամ ևս ապացուցելով այն պարզ ճշմարտությունը, որ փիլիսոփայությունը որպես հասարակական գիտակցության ձև ո՛չ թե սոսկ մեծ մտածողների մտքի ծնունդ է, այլ հասարակական կեցության արտացոլումը մարդկանց գիտակցության մեջ, պատմական կոնկրետ ժամանակաշրջանի ու միջավայրի արդյունք։

Ասացինք, որ Ջուղայեցին չի ուսումնասիրում նաև վերջին՝ «Վասն է՞ր է» հարցը, դրանով իսկ փորձելով ազատվել իրերի ու երևույթների զարգացման ներքին նպատակադրվածության ոչ-գիտական ըմբռնումից՝ թելոլոգիզմից։ Մեր կարծիքով, սա հայ փիլիսոփայական մտքի զարգացմանը Ս. Ջուղայեցու մատուցած ծառայություններից մեկն է, որն արժանի է հատուկ ուշադրության։ Մանավանդ, նա այդ առաջընթաց քայլը կատարում է գիտակցված ու նպատակադրված. «Եւ թէպէտ բազում են տեսակք հարցման, սակայն պիտոյանան մեզ այժմ՝ զինչէն և որպիսի ինչէն. որք ասին զայնցանէ, որոց գոյն խոստովանեալ է։ Քանզի ի հարցանելն զի՞նչ է, կամ որպիսի՞ ինչ է, յայտ առնէ թէ գիտեմ զգոլն, բայց ոչ գիտեմ թէ զի՞նչ է կամ որպիսի՞ ինչ է» (Ս. Ջուղայեցի, Գիրք տրամաբանութեան, Կ. Պոլիս, 1728, էջ 2—3)։

Ավելին, երկրորդ և երրորդ հարցերը իմացաբանական առումով, Ջուղայեցու համար հավասար արժեք ու կարևորություն չունեն, որովհետև առաջին հարցով կարողանում ենք ստանալ միայն նախնական ծանոթություն. իմանում ենք մեկ իրի կամ երևույթի նմանությունը մյուսների հետ, որով



ճանաչողությունը չի կարող բավարարվել, այլ այն պետք է առաջ շարժվի ու բացահայտի նաև տեսակային տարբերությունները. այստեղից էլ անհրաժեշտաբար հանդես է գալիս «որպիսի՞ ինչ է» հարցը։

Ջուղայեցին ճանաչելու կարողությունը վերագրում է միայն հոգուն, բայց ոչ ամեն մի հոգու, այլ նրա բարձրագույն ձևին՝ անձին, որը հատուկ է միայն մարդուն։ Ամեն մի անձ հոգի է, բայց ամեն մի հոգի անձ չէ, ինչպես բույսը, որովհետև «ուր անձն է՝ անդ է և ճանաչողական զորութիւն»։ Քանի որ հոգին Ջուղայեցու ըմբռնմամբ ոչ այլ ինչ է, եթե ոչ մարմնի հատկանիշ, իսկ ճանաչողությունը հատուկ է մարդուն՝ մատերիայի զարգացման բարձրագույն ձևին, հետևաբար ճանաչողությունը մեկընդմիշտ տրված աստվածային պարգև չէ, այլ բնապատմական պրոցեսի արդյունք և հանդես է գալիս մատերիայի զարգացման որոշակի աստիճանում. «ըստ կարգի բնութեան նախ է զգայունն, քան զբանականն»։ Ավելի առաջ տանելով այս հարցադրումը, նա գտնում է, որ ստացական հատկանիշը «է ընդդիմաբաժանեալ բնականին, զի է յետամտական, որգոն, մակացութիւն»։

Պարզ է, որ մարդ կարող է որևէ բան ընկալել ոչ այլ կերպ, քան արտաքին աշխարհի ազդեցության շնորհիվ։ Ջուղայեցին չի կասկածում, որ ճանաչողությունը օբյեկտիվ իրականության ճանաչումն է, որը գոյություն ունի մարդուց առաջ, նրա գիտակցությունից դուրս և անկախ։ Ճանաչողության առարկան կարող է գոյություն ունենալ առանց ճանաչողի։ Այդպես եղել է մինչև մարդու՝ ճանաչողի, առաջացումը, այդպես է և այժմ այնտեղ, ուր դեռ չկա ճանաչող կամ զգացող։ Ճանաչողությունը յուրատեսակ հարաբերություն է ճանաչողի ու ճանաչվողի միջև։ «Իմացօղն և իմացեալն... են որակք, նաև առինչ ևս են, զի իմացեալն իմացմամբն է իմացեալ և իմացումն՝ իմացելոյն է իմացումն»։

Թեև ճանաչողության պրոցեսը նա դիտում է որպես «առինչ» օբյեկտի և սուբյեկտի միջև, իսկ ըստ ընդունված կարծիքի առնչության անդամները գոյություն ունեն միաժամանակ, բայց դա չի խանգարում, որ նա առանց երկմտելու, ճանաչողության օբյեկտը տեսնի ճանաչողից ու ճանաչողությունից առաջ. «Մակացութիւն ընդ մակացելոյն ոչ է համանգամայն, քանզի մակացելին նախկին է քան զմակացութիւն, զի մակացելիք բազումք գոն, զորոց զմակացութիւնսն չև ևս եմք ստացեալ, իսկ մակացելիքն գոն և ասին մակացելիք։ Նմանապէս և զգալիք նախկին են քան զգացումն, որպէս մէջ երկրի է զգալի, բայց զգացումն նորա չև ևս գոյ» (Ս. Ջուղայեցի, Գիրք տրամաբանութեան, Կ. Պոլիս, 1728, էջ 51)։

Այսօր գիտության, մասնավորապես երկրաբանության, զարգացման շնորհիվ, մասամբ զգալի ու ճանաչելի է դարձել նաև երկրի ներսը, բայց դա բոլորովին էլ չի նսեմացնում Ջուղայեցու հարցադրման ընդհանուր կարևորությունը, որը մեզ համար արժեքավոր է ավելի շատ իր տեսական, քան փաստական կողմով։ Իսկ տեսական կողմը միանգամայն ճիշտ ու գիտական է և ընդունելի նույնիսկ այսօր, հենց թեկուզ այն պատճառով, որ սուբյեկտիվ իդեալիզմը, հանձինս Ջորջ Բերկլու և այլոց, հանդես է եկել Ջուղայեցուց հետո և լայն չափով տարածված է նաև այժմյան արևմտյան փիլիսոփայության մեջ։

Ջուղայեցու կարծիքով այն, ինչ օբյեկտի մեջ գոյություն ունի որպես որոշակի հատկանիշ՝ սուբյեկտի մեջ արտացոլվելով այլևս չի մնում նույնը,

բայց և ամբողջությամբ էլ չի տարբերվում։ Վերացնելով սուբյեկտը, մենք ոչ մի վնաս չենք հասցնում օբյեկտին, բացի այն, որ այլևս չի լինի նրա ճանաչողը, որը որևէ նշանակություն չունի օբյեկտի համար որպես այդպիսին։ Ընդհակառակը, վերացնելով օբյեկտը, վերացրած կլինենք նաև սուբյեկտի վրա նրա գործած ազդեցությունը։

Սիմեոն Ջուղայեցին այդպիսով ժխտում է ոչ միայն սուբյեկտիվ իդեալիզմը, այլև ագնոստիցիզմը։ Իրավացիորեն ընդունելով դեռևս չճանաչված իրերի ու երևույթների գոյությունը, ի տարբերություն ագնոստիցիզմի, նա դրանք չի համարում անճանաչելի ու անիմանալի, այլ գտնում է, որ արդեն ճանաչվածների միջոցով կարող ենք ճանաչել չճանաչվածները, որովհետև իրականության մեջ ոչինչ գոյություն չունի մեկուսացված ու առանձնացված, այլ ամեն ինչ գտնվում է փոխադարձ կապի ու պայմանավորվածության մեջ. «Վախճանականն (պատճառը—Հ. Մ.) է գիտ անծանօթից, զի մարդոյ ոչ է ծանօթ ամենայն էակ և ոչ ամենայնն անծանօթ, վասն որոյ եկն ի մէջ առարկութիւն, զի ի ձեռն ծանօթից գտանիցի անծանօթն, զի ամենայն էակք շարախառնեալ են առ միմեանս» (ընդգծումը մերն է— Հ. Մ., նույն տեղը, էջ 128)։ Այն, ինչ դառնում է ճանաչողության առարկա, անպայման ճանաչելի է, այլապես չէր կարող իմացության օբյեկտ հանդիսանալ. «զի է գիտելի, որ է առաջադրեալ դիտողաց»։ Ջուղայեցին ոչ միայն չի կասկածում մարդու ճանաչողական հնարավորությունների վրա, այլև ընդունում է տարբեր մարդկանց մոտ իմացական տարբեր կարողությունների գոյությունը, ճշմարտությանը ձգտելու և հասնելու զանազան եղանակների առկայությունը։

Իսկ ինչպե՞ս, ի՞նչ ճանապարհով է տեղի ունենում օբյեկտիվ իրականության ճանաչումը։ Արդյոք միանգամի՞ց, թե՞ աստիճանաբար, ճանաչողական տարբեր աստիճանների միջոցով։ Ջուղայեցու կարծիքով դա սկսվում է զգայությունից (որը լինում է արտաքին և ներքին) ու գնում դեպի բանականությունը։ Արտաքին և ներքին զգայություններն իրենց հերթին բաժանվում են մի շարք ձևերի, որոնք իրարից տարբերվում են իրենց օբյեկտով, ձևով ու օրգանով։ Ըստ այդմ էլ արտաքին զգայությունները հինգն են՝ տեսողության, լսողության, շոշափելիքի, հոտոտելիքի և ճաշակելիքի։

Իրավացի է Ջուղայեցին, երբ զգայություններից գերապատվությունը տալիս է տեսողությանը, որովհետև մարդը (ըստ երևույթին նաև կենդանիների մեծամասնությունը) իր զգայությունների ճնշող մասն ստանում է տեսողության միջոցով։ Եթե ըստ դասավորության տեղի ու զգայման խորության՝ առավելությունը տալիս է տեսողությանը, ապա ըստ ժամանակի, ընդհակառակը, տալիս է շոշափելիքին, որովհետև զգայություններից պատմականորեն առաջինը երևան է եկել շոշափելիքը և այնտեղ, ուր կան մյուսները, անպայման գոյություն ունի նաև վերջինս. հակառակն ասել չենք կարող և դա միանգամայն ճիշտ է։

Իսկ ի՞նչն է զգայության ենթակա՝ մարմի՞նը, թե՞ մարմնի որակական հատկանիշները, արդյոք զգայությունների ժամանակ մարմնից փոքրիկ մասնիկնե՞ր են թռչում դեպի մեր զգայարանները, մարմինն ի՞նքն է տեղափոխվում մեր գիտակցության մեջ, թե՞ նրա հատկանիշները։ Այս հարցը փիլիսոփայական խնդրո առարկա է դարձել շատ հնուց՝ սկսած հունական անտիկ փիլիսոփայությունից և արծարծվում էր նաև Սիմեոն Ջուղայեցու ժամանակ։ Որպես Արիստոտելի հետևորդ նա արդարացիորեն գտնում է, որ մենք զգա-



յում ու ճանաչում ենք մարմնի որակական հատկանիշները, սակայն, ի տարբերություն ուսուցչի և ուրիշների, նա մարմնի հատկանիշը չի կտրում բուն մարմնից, այլ շեշտում է դրանց անքակտելի կապն ու միասնությունը, բայց ոչ երբեք նույնությունը։ Մարմնից անջատ ոչ մի որակ գոյություն ունենալ չի կարող, դրանք իրարից առանձնացնել կարելի է միայն ու միայն... մտքի։

Արդյոք մի՞շտ և արտաքին աշխարհի ամե՞ն մի ազդեցություն է առաջացնում համապատասխան զգայություններ, թե՞ գոյություն ունի որոշակի կանոն։ Պարզ ու հստակ պատկերացնելով զգայությունների վերին և ներքին շեմքերը, Ջուղայեցին տալիս է հարցի գիտական պատասխանը. արտաքին իրականության մեջ գոյություն ունեցող ամեն ինչ չէ, որ, ազդելով մեր զգայարանների վրա, կարող է առաջացնել համապատասխան գրգիռ ու զգայություն։ Յուրաքանչյուր զգայարանի համար գոյություն ունի որոշակի չափ, որի խախտման դեպքում (լինի դա վեր, թե վար) զգայություն չի առաջանում։ Ավելին. զգայության շեմքը խախտելու դեպքում հաճախ զգայարանը կարող է լուրջ վնասվածք ստանալ։

Ջուղայեցին ընդունում է նաև զգայության օբյեկտների ազդեցության շնորհիվ մեր զգայարանների փոփոխության հնարավորությունը։ Ընդ որում, տարբեր զգայարանները փոփոխվում են տարբեր չափով, բայց բոլորն էլ փոփոխվում են։ Ինչ խոսք, որպես շոշափելիքի հիմնական օրգան, մարդկային ձեռքն ավելի շատ է փոխվել ու կատարելագործվել, քան որևէ այլ զգայարան։

Արտաքին զգայությամբ ճանաչողությունը միայն սկսվում է, բայց չի ավարտվում, որովհետև արտաքին զգայությունները մեզ հաղորդում են առանձին, կցկտուր տվյալներ, որոնք այդ վիճակում շատ ավելի քիչ բան են ասում ճանաչվող օբյեկտի մասին, քան մենք ընդհանրապես կարողանում ենք իմանալ։ Ճանաչողությունն առաջ շարժելու և խորացնելու միսիան կատարում են ներքին զգայարանները, որոնք նախորդներից, ամենից առաջ, տարբերվում են նրանով, որ այլևս պարտադիր չէ զգայության օբյեկտի անմիջական առկայությունը։ Բայց սա նշանակո՞ւմ է, թե ներքին զգայությունը կտրված է արտաքին աշխարհից՝ ճանաչողության օբյեկտից։ Ո՛չ։ Այդ կապն առկա է, բայց ոչ անմիջական, այլ միջնորդավորված, շնորհիվ նախորդ՝ արտաքին զգայությունների։ Անշուշտ, մեկի մոտ ավելի շատ, մյուսի մոտ քիչ, բայց բոլոր դեպքերում այն առկա է։

Ներքին զգայությունները նույնպես հինգն են՝ հասարակ զգայություն (ընկալում), երևակայություն, կարծիք, տրամախոհություն և հիշողություն, որոնցից ամենից կարևորը տրամախոհությունն է. այն կապում ու համեմատում է ոչ միայն ներկան ներկայի, ինչպես կարծիքը, այլև ներկան անցյալի ու ապառնիի հետ։ Այդ ամենի շնորհիվ տրամախոհությունը թեև հիմնականում պատկանում է ճանաչողության զգայական աստիճանին, բայց, մյուս կողմից՝ միացնող օղակ է զգայական և բանական աստիճանների միջև։

Զարգացած բարձրագույն ներվային համակարգ ունեցող կենդանիներից մի մասի մոտ ևս Ջուղայեցին տեսնում է բանախոհական այնպիսի գործողություններ, որոնք նման են մարդկային այդօրինակ գործողություններին, բայց դրանք երբեք չեն նույնանում, որովհետև կենդանիները զուրկ են բանականությունից, որի պատճառով էլ նրանց ամենագեղեցիկ ու լավ գործողությունն անգամ մնում է չգիտակցված ու բնազդային։

Ուշագրավ է, որ հայ փիլիսոփայության պատմության մեջ առաջինը Սի-

մեոն Ջուղայեցին է փորձում գտնել ճանաչողության բնախոսական հիմքը՝ ճանաչողությունը կապում է մարդու գլխուղեղի ներվային համակարգության հետ, որի համար ուղեղը բաժանում է երեք մասի՝ առաջին, միջին և վերջին, որոնցից յուրաքանչյուրն ունի ինքնուրույն գործունեություն։ Ճիշտ է, Ջուղայեցին այս հարցին տալիս է շատ նաիվ ու մեխանիստական բացատրություն, բայց չէ՞ որ բարձրագույն ներվային համակարգության գիտական ուսումնասիրությունը հիմնականում XIX—XX դարերի մենաշնորհն է։ Իսկ Սիմեոնի ժամանակ գիտության համար դա գրեթե անծանոթ աշխարհ էր։ Չնայած այդ հարցադրման պարզությանը, այն ունի մի շատ կարևոր նշանակություն. զգայությունն ու մտածողությունը այլևս չեն համարվում անբացատրելի ու անմեկնելի, այլ դիտվում են մարմնի (իմա մատերիայի) զարգացման բարձրագույն ձևի հատկանիշ։ Այսինքն՝ դեն է գցվում մինչ այդ գոյություն ունեցող մտածողության խորհրդավոր քողը։ Եվ պատահական չէ, որ անգամ այդպիսի մեխանիստական հասարակ բացատրությունը ժամանակին ունեցել է կատաղի հակառակորդներ, որոնց դեմ համառ պայքարել է Ջուղայեցին։

Ճանաչողության վերջին ու բարձրագույն աստիճանը բանական ճանաչողությունն է, որը տեղի է ունենում հասկացությունների, դատողությունների ու մտահանգումների միջոցով։ Վերջինս (բանականությունը) հանդես է գալիս միայն օրգանական աշխարհի ծաղկի՝ մարդու մոտ։ Օժտված լինելով բանականությամբ, մարդը ոչ-գիտակցական գործողություններն անգամ կատարում է գիտակցության առկայության պայմաններում, որի շնորհիվ նրա անգիտակցական գործողություններն այլևս նույնը չեն, ինչ անբանական կենդանիների մոտ։ Թեև տրամախոհականը մարդու մոտ դառնում է բանական, իսկ տրամախոհությունը՝ բան, բայց դրանք բոլորովին էլ նույնը չեն, որովհետև տրամախոհությունը միայն՝ «զմասնականսն և զներկայսն ենթադատէ», իսկ բանականությունը՝ «զընդհանուրսն և զանցեալ և զապառնիսն, հանդերձ մասնականաւ և ներկայիւ»։

Որպես սենսուալիստ մտածող Ջուղայեցին ճանաչողության հիմքն ու աղբյուրը համարում է զգայությունը, բայց իրավամբ գտնում է, որ ճանաչողությունն իր կատարյալ վիճակին է հասնում միայն ռացիոնալ աստիճանում։ Ավելին. նա ոչ միայն մետաֆիզիկորեն այդ երկու աստիճանները չի կտրում իրարից ու բացարձակացնում մեկը կամ մյուսը, այլև անհնարին է համարում դրանցից յուրաքանչյուրի գոյությունն առանց մյուսի՝ շնորհիվ իրենց փոխադարձ կապի ու պայմանավորվածության. «Յայտ է զի իմացական և զգայական զօրութիւնքն ի մարդս առանց միմեանց ոչինչ առնեն, զի ի զգալ զգայութեանցն իսկոյն սկսանի բնտրել իմացականն և ի ձգտիլ իմացականին ի ճանաչումն իմիք իսկոյն ի ձեռն առնու զգայութիւնսն» (ընդգծումը մերն է—Հ. Մ.։ Մաշտոցի անվան Մատենադարան, ձեռ. № 2304, եր. 263ա)։

Լինելով մարդկային ճանաչողության տարբեր աստիճաններ, զգայությունը և բանականությունը ճանաչում են իրականության տարբեր կողմերն ու մոմենտները։ Եթե զգայությամբ մարդը ճանաչում է օբյեկտիվ իրականության մեջ ռեալ գոյություն ունեցող եզակի իրերն ու առարկաները, այլ խոսքով իրականության զգայական կողմը, ապա բանականությամբ իմանում է այդ նույն եզակիներին հատուկ ընդհանուր հատկանիշները, որոնք անմատ-



չելի են զգայությանը, որովհետև այն մի տեսակ ծածկված ու քողարկված է, թեև սերտորեն կապված է զգայականի հետ. «Տեսութիւն ընդհանրին է ծածկեալ, քանզի է իմանալի և ոչ զգալի, բայց ի զգալիսս կապակցեալ, զի յէակացն, այսինքն ցանհատիցն հաղորդեալ է, զի անհատքն յընդհանրիցն ունին զգոյացականս, բայց ընդհանուրն ցանհատիցն յայտնի, զի ոչ ոք գոյացութիւն, ընդ արտաքին զգայութեամբ անկանի, այլ յըմբռնել զգոյացականս անհատին իսկոյն կայանայ ծածկեալ և իմանալի ընդանուրն» (նույն տեղը, 280ա)։ Եվ քանի որ բանականությամբ ձեռք բերածը կապված է զգայականի հետ, դրա համար էլ ընդհանուր հասկացությունները սոսկ մարդկային մտքի ծնունդ չեն, ինչպես կարծում են սուբյեկտիվ իդեալիստները, այլ «միտքն ի համաներգործութեանց մասնաւորացն բաղկացուցանեն զընդհանուրսն՝ և ոչ յինքեանց որպէս թէ յոչնչէ»։

Այսքան պարզ ու մեկին պատասխան քննարկվող հարցի կապակցությամբ միջնադարյան շատ քիչ մտածողների մոտ կարելի է գտնել։ Իմացության հարցի հետ սերտորեն կապվում է նաև այն, թե իրականությունն ուսումնասիրող ու ճանաչող գիտությունները քանի տեսակ են և ինչպես են հարաբերում իրար։ Այստեղից էլ ծագում է գիտությունների դասակարգման խնդիրը, որով զբաղվել են թե՛ անտիկ և թե նոր շրջանի հայ և համաշխարհային շատ անվանի մտածողներ։ Տվյալ դեպքում Սիմեոն Ջուղայեցին հետևում է Դավիթ Անհաղթին, որը գիտությունները բաժանում էր տեսականի և գործնականի, որոնցից տեսականը մարդուն տալիս է միայն գիտելիքներ, իսկ գործնականը՝ նաև կյանքում ղեկավարվելու սկզբունքներ, որոնք պրակտիկ կիրառություն են ստանում տանը և հասարակության մեջ։

Ղեկավարվելով այդ իսկ չափանիշով՝ Սիմեոն Ջուղայեցին բնական գիտությունները համարում է տեսական, իսկ բարոյականը՝ գործնական։ Եվ քանի որ մարդն ունի ճանաչողական երեք հիմնական միջոցներ, դրա համար էլ տեսական գիտություններն իրենց հերթին բաժանվում են բնականի, բանականի և բնազանցականի. բանականը բարոյականի հետ միասին զբաղվում է մարդու և մարդկայինի ուսումնասիրությամբ, իսկ բնականը և բնազանցականը «ուսուցանեն զբնութիւնս իրաց, բայց զանազանապէս», որը և պատճառ է դառնում վերջիններիս դժվար տարբերակման։ Նման փաստի առաջ կանգնում են թե՛ հասարակ մահկանացուները, թե՛ ականավոր փիլիսոփաները։ Գիտություններն ընդհանրապես իրարից մեկուսի ու անջատ չեն, այլ սերտորեն շաղկապված են և փոխադարձ պայմանավորված։

Իսկ ինչո՞ւ։ Որովհետև բոլորն էլ ուսումնասիրում են մեկ միասնական օբյեկտիվ իրականության տարբեր կողմերն ու մոմենտները, տարբեր տեսանկյունով. ուստի, «ի բացայայտիլն պիտոյանան միմեանց, զի ուր և գոն՝ խառն գոն։ Որպէս առարկութիւն, որ է բանական գիտութիւն՝ ի բնականն և ի բարոյականն գտանի և թէ հետազօտես զսոսա առանց միմեանց ոչ գտանես» (Ս. Ջուղայեցի, Գիրք տրամաբանութեան, Կ. Պոլիս, 1728, էջ 162)։ Բայց ինչպիսի՞ն է բնական և բանական, այսինքն՝ բնության և մարդու վերաբերյալ գիտությունների հարաբերությունն ըստ ժամանակի. ո՞րն է նախորդել որին, բնակա՞նը բանականին, թե՞ հակառակը։

Այս հարցին պատասխանելու համար Ջուղայեցու իրավացի կարծիքով, նախ պետք է որոշել, թե դրանցից որ մեկի ուսումնասիրության օբյեկտն է ավելի վաղ գոյություն ունեցել։ Առաջադրելով այս ճիշտ պայմանը, Ջուղա-

յեցին տալիս է նաև ճշմարիտ պատասխանը՝ «բնականն նախ է քան գրանականն, զի բնութիւն, որ է ենթակայ բնականին նախ է, քան զյառաջումն բանին, որ է ենթակայ բանականին»։ Հիրավի, պատմականորեն այդպես է տեղի ունեցել. չէ՛ որ մարդկությունն սկզբում սկսել է ճանաչել բնության օրենքներն ու օրինաչափությունները և նոր միայն զբաղվել ինքնաճանաչողությամբ։ Այդ է ապացուցում ճանաչողության վարգացման պատմության ուսումնասիրությունը։

Եթե փիլիսոփան, վստահելով մարդու ճանաչողական կարողություններին, ընդունում է իրականության ճանաչողության հնարավորությունը, ապա, բնականաբար, նրա առաջ պետք է ծառանա նաև ճշմարտության հարցը. ո՞ր դեպքում է մեր դատողությունը ճշմարիտ։ Ջուղայեցու խորին համոզմամբ միայն այն դեպքում, երբ այն համընկնում է ռեալ իրականությանը. «Ճշմարտութիւն է՝ յորում երևի էն է, և ոչ էն ոչ է, ստութիւն է՝ յորում երևի էն ոչ է, և ոչ էն է»։ Եթե այդպես է, ապա ճշմարտության համար ոչ մի նշանակություն չունի, թե քանի հոգի է տվյալ փաստն ընդունում որպես ճշմարտություն, որովհետև շատ թվով մարդկանց կողմից ընդունվելիս ճշմարտության արժեքը ոչնչով չի բարձրանում, իսկ քիչ թվով մարդկանց ընդունմամբ էլ այն չի արժեզրկվում կամ դառնում նվազ ճշմարտություն։ Ուստի, թեև շատ քչերն են ընդունում, որ «արեգակն մեծ է քան զերկիրս բազմապատիկ, ահա այս է հարկաւոր, բայց ոչ է հաւատալի բազմաց» կամ թե՝ «ի խաղալ լուսնին առ մէջ մեր և արեգականն՝ արեգակն խաւարի։ Ահա այս է հարկաւոր, զի արեգակն յայսմ պատճառէ խաւարի, բայց ոչ է հաւատալի բազմաց» (նույն տեղը, էջ 169)։

Ս. Ջուղայեցու այս մտքերը խիստ այժմեական են։ Չմոռանանք, որ XX դարի արշալույսին մախիստները, այդ թվում և ռուս մախիստ Բոգդանովը, ճշմարտության հիմնական չափանիշ էին համարում հանրության կողմից ընդունվելը։ Իսկ որքան ևս առավել կարևոր էր այն XVII դարի համար, երբ 1600 թվականին նույնպիսի համարձակ ու խիզախ մտքերի համար խարույկ էր բարձրացվել Ջորդանո Բրունոն, իսկ 30-ական թվականներին՝ Գալիլեո Գալիլեյը ստիպված հրաժարվել էր արեգակի շուրջը երկրի պտտվելու կոպեռնիկոսյան գաղափարից։ Մի ժամանակաշրջան, երբ կրոնական հալածանքների պատճառով ինքնասպանություն էր գործում հոլանդացի մեծ մտածող Ուրիել Ակոստան, իսկ նրա աշակերտ Բենեդիկտ Սպինոզան ենթարկվում էր «փոքր» ու «մեծ» բանադրանքների։

Ահա այսպիսի մի ժամանակաշրջանում, երբ գիտությունը գտնվում էր կրոնի բռնության ներքո և առաջին քայլերն էր կատարում իր անկախության ու ազատության իրավունքը նվաճելու համար, մեծ համարձակություն էր պահանջվում Սիմեոն Ջուղայեցուց հայտարարելու, թե երկիրը գնդաձև է ու պտտվում է (թեև չի ասում արեգակի շուրջը, բայց պարզ հասկացվում է), որ արեգակը բազմապատիկ անգամ մեծ է երկրից և արեգակի խավարման պատճառը լուսինն է և այլն, և որ ամենակարևորն է՝ թե այդ ճշմարտությունների գոյության համար նշանակություն չունի թե քանի մարդ է այն ընդունում։ Իսկ ո՞ւմ հայտնի չէ, որ վերջին միտքը, կամա թե ակամա ուղղվում է կրոնի դեմ։

Հիշենք, որ Ջուղայեցին ապրում էր այնպիսի ժամանակաշրջանում, երբ գիտությունը նոր էր փշրում կրոնի կապանքները, իսկ ինքը լինելով եկեղեցու



պաշտոնյա, բնականաբար պետք է բախվեր գիտության ու աստվածաբանության փոխհարաբերության հարցին։ Դեռ միջին դարերում մի շարք մեծ մտածողներ՝ Դ. Անհաղթ, Ա. Շիրակացի, Ս. Ռեշայնացի, Ավիցիեննա, Իբն-Ռոշդ և ուրիշներ, ի հակակշիռ աստվածաբանության գերիշխանության, առաջ էին քաշել գիտության և աստվածաբանության գոնե հավասարության գաղափարը։ Այս սկզբունքը գիտության մեջ հայտնի է «երկյակ ճշմարտություն» անվամբ։ Ճիշտ է, XVII դարում բավականին փոփոխություններ էին տեղի ունեցել, բայց և այնպես դեռ տիրապետում էին միջնադարի ոգին ու շունչը։ Դա է պատճառը, որ անգամ միջնադարի խավարի դեմ պայքարողները՝ Ֆրենսիս Բեկոնն ու Ռենե Դեկարտը, մասամբ նաև Էմանուել Կանտը, պաշտպանում էին «երկյակ ճշմարտության» գաղափարը, որի կողմնակից է և Սիմեոն Ջուղայեցին։ Նա ևս ընդունում է երկու ճշմարտություն՝ գիտական և աստվածաբանական։

Արտաքնապես գիտությանն ու աստվածաբանությանը Ջուղայեցին տալիս է հավասար իրավունքներ. ամեն մեկն ունի ուսումնասիրության իր օբյեկտն ու եղանակը, բայց եթե գիտությունն զբաղվում է բնության ու մարդու ուսումնասիրությամբ, պատճառակցական կապերի հայտնագործությամբ, ապա աստվածաբանությունը հենվում է միայն հավատի վրա։ Ավելին. խոսքով Ջուղայեցին աստվածաբանությունը վեր է դասում գիտությունից, բայց դա զուտ ձևական հարկ է իր ժամանակին. իրականում գիտությունը նրա մոտ շատ ավելի բարձր է, քան աստվածաբանությունը, որովհետև վերջինս պատճառակցական կապեր չի հայտնագործում, այլ հենվում է միայն հավատի վրա։ Մինչդեռ ճշմարտություններից ամենից կարևորն ապացուցականն է, իսկ բնական գիտությանը՝ «որքան պիտոյանայ առարկութիւն, ապացուցականաւն վարի, զի բնականին դիտաւորութիւն է ճշմարտապէս ըմբռնումն էակաց»։

Արդ՝ իսկ այդ ո՞ր գիտությունն է, որի նպատակը էակների ճշմարիտ ըմբռնումը չէ։ Հետևողական լինելու դեպքում կարելի է տալ միայն մեկ պատասխան... աստվածաբանությունը, բայց Ս. Ջուղայեցին այդ չի անում և շատ հասկանալի պատճառներով չէր էլ կարող անել. նա պաշտպանում է «երկյակ ճշմարտության» գաղափարը, որն իր ժամանակ առաջընթաց քայլ էր գիտության խնկական դերի ու պատմական միսիայի վերականգնման ուղղությամբ։ «Երկյակ ճշմարտություն»-ը այն սահմանագիծն է, ուր հավասարակշռվում են գիտության ու կրոնի ուժերն ու հնարավորությունները, որից հետո սկսում է գերակշռել գիտության նժարը՝ աստիճանաբար վեր բարձրացնելով ու հօդս ցնդեցնելով աստվածաբանության կշիռը։ Եթե պատմականորեն այդ գաղափարն ունի իր արդարացումը և սկզբնական շրջանում հանդես է եկել ի պաշտպանություն գիտության շահերի՝ ընդդեմ աստվածաբանության, ապա ներկա պայմաններում, գիտության հաղթարշավի դարաշրջանում, հետապնդում է տրամագծորեն հակառակ նպատակ՝ պաշտպանել կրոնի հետադիմական ու հակագիտական դոգմաները։ Ուստի, մեր օրերում այն արժանի է խիստ քննադատության ու մերկացման։

# Գիտության աշխարհում

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԸՆԴԵՐՔԻ ՀԱՐՍՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Հայկական Սովետական Սոցիալիստական Հանրապետության տերիտորիան 30 հազար քառակուսի կիլոմետր է, որը հարուստ է բազմաթիվ ու բազմատեսակ բնական հանածոներով:

Հայաստանում օգտակար հանածոների հանքավայրերն սկսել են մշակել հազարավոր տարիներ առաջ: Այդ մասին են վկայում այն հնէաբանական տվյալները, որոնք ձեռք են բերվել բնակավայրերի պեղումների, արխիվային նյութերի ու հանքավայրերի ուսումնասիրությունների ընթացքում: Սակայն, չնայած դրան, Հայաստանում գիտական երկրաբանական ուսումնասիրությամբ փաստորեն սկսել են զբաղվել 19-րդ դարի վերջերից: Հայաստանի բուն երկրաբանության հարցերով առաջինն զբաղվել է գերմանացի գիտնական Հ. Աբիխը: Նրանից հետո երկրաբանական ուսումնասիրություններ կատարել են Ռուսաստանում կրթություն ստացած երկրաբանները, ինչպես՝ Օ. Կարապետյանը, Ա. Ղուկասյանը և այլն:

Հետագայում, սովետական իշխանության հաղթանակից հետո, Հայաստանի աճող ժողովրդական տնտեսության հումքի նոր բազաներ ստեղծելու համար ամենից առաջ անհրաժեշտ էր վերականգնել փլված ու ջրածածկ պղնձի հանքավայրերը և կազմակերպել հանրապետության տերիտորիայի երկրաբանական կառուցվածքի գիտական, պլանաչափ ուսումնասիրությունը:

Այդ խնդիրները հաջողությամբ լուծեցին ինչպես 1923 թվականին ստեղծված «Արմմեդ» տրեստն ու Հայաստանի ժողտնտխորհին կից լեռնային բաժինը, այնպես էլ Հայաստանի երկրաբանական վարչությունն ու Մոսկվայից, Լենինգրադից մեզ մոտ եկած երկրաբանները: Հանրապետության երկրաբանական կառուցվածքի ուսումնասիրությունը կատարվեց պլանաչափ ու մանրամասն, որը տվեց իր փայլուն արդյունքը:

Ներկայումս Սովետական Հայաստանը զարգացած լեռնահանքային արդյունաբերության երկիր է. նրա ընդերքից հանվում է պղինձ, մոլիբդեն, ոսկի, ցինկ, արծաթ, ալյումին, քրոմ և այլ մետաղներ, հսկայական քանակությամբ շինարարական նյութեր, քիմիական և սննդի արդյունաբերության համար հումք, հրակայուն նյութեր ու հանքային ջրեր: Պղնձի, մոլիբդենի և շինարարական նյութերի արդյունահանմամբ Հայաստանը Սովետական Միությունում առաջավոր տեղերից մեկն է գրավում, իսկ նրա մոլիբդենի պաշարները



համաշխարհային նշանակություն ունեն: Մեզ մոտ առայժմ մետաղային օգտակար հանածոների մի շարք հանքավայրեր կան:

Հայաստանի երկրաբանական ծառայության անխոնջ ու քրտնաջան աշխատանքի շնորհիվ վերջին տասնամյակներում հայտնաբերվել և հետազոտվել են օգտակար հանածոների հանքավայրեր, որոնց բազայի վրա ստեղծվել են ժողովրդական տնտեսության նոր ճյուղեր և խոշոր լեռնահանքային արդյունաբերություն: Առայժմ երկրաբանները պարզել են Հայաստանի տերիտորիայում գտնվող մետաղային հանքավայրերի բաշխման օրինաչափությունները, որի համաձայն Հայաստանում և նրա սահմաններից դուրս ձգվում է մետալոգեն երեք գոտի. 1. Փամբակ—Սյունիքի (որտեղ գլխավորապես տարածված են պղնձա-մոլիբդենային), 2. Ալավերդի—Ղափանի (պղնձա-հրաքարային) և 3. Սևան—Ամասիայի (տարբեր տիպի և առանձնապես ոսկու ու քրոմի հանքայնացումներ): Նշված գոտիներն ունեն որոշակի երկրաբանական կառուցվածք՝ մագնատիզմ ու հանքատարություն:

Հանրապետության ընդերքում հանդիպում ենք գրեթե բոլոր մետաղների հանքավայրերի. բնորոշը, սակայն, գունավոր և հազվագյուտ մետաղներն են, որոնք խոշոր դեր են խաղում էկոնոմիկայի ու ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի զարգացման գործում: Վերջերս Հայաստանում հետազոտվել ու հայտաբերվել են երկաթի հանքանյութերով հարուստ շատ հանքավայրեր, որոնցից հայտնի են Հրազդանի, Սվարանցի, Կողբի, Կապուտանի, Ձյալաքարի և այլ հանքավայրերը: Հրազդանի հանքանյութը լավորակ է և ունի արդյունաբերական նշանակություն. Կողբի հանքավայրի պաշարը մի քանի միլիոն տոննա է, երկաթի պարունակությունն այնտեղ 35—50, առանձին տեղամասերում՝ 60—65 տոկոսի է հասնում: Սվարանցի հանքավայրերում հանքանյութը ցածրորակ է, սակայն, դրա փոխարեն, այն պարունակում է օգտակար բաղադրիչներ (Mn, V, Co), որոնք անջատվում են մշակման ընթացքում: Ներկայումս գիտահետազոտական աշխատանքներ են կատարվում Սվարանցի մագնեզիում օլիվինային երկաթաքարի ֆորմացիայի հանքանյութերի կոմպլեքսային մշակման համար:

Քրոմի հանքավայրերը ձգված են Սևանի հյուսիս-արևելյան մասում և Ամասիայում: Երկրաբանները մանրազնին ուսումնասիրել են Շորժայի հանքավայրերը: Այն կապված է գերհիմնային ապարների՝ դունիտային զանգվածների հետ (տարածված ոչ մեծ չափերով՝ բների ու գոտիների ձևով) և մշակվում է:

Տիտանը XX դարի մետաղ է: Սա լայն կիրառություն ունի գերհրակայուն և ամուր համաձուլվածքներ ստանալու գործում: Տիտանի հանքանյութերը սերտորեն կապված են երկաթի հանքավայրերի հետ (տիտանո-մագնէտային երկաթաքարի ֆորմացիա): Այդպիսի հանքաերևակումներ կան Կալաքարում (Մեղրիի շրջան), Դալլախլուում (Եղեգնաձորի շրջան), Հաղարծնում (Իջևանի շրջան): Սակայն սրանց պաշարները մեծ չեն և արդյունաբերական առանձին նշանակություն չունեն: Վերջերս Ծաղկունյաց լեռնաշղթայի (Ապարան—Հրազդանի շրջանների) ընդերքում բյուրեղային թերթաքարեր են հայտնաբերվել, որոնք մեծ չափով տիտան են պարունակում: Երկրաբանական վարչությունը ձեռնամուխ է եղել այս կարևոր հանքավայրի հետազոտությանը:

Մոլիբդենի հանքատարածությունները Հայաստանում հայտնի էին դեռևս մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը, սակայն հանքավայրերի երկրաբա-

նական հետազոտություններն ու մշակման աշխատանքները ծավալվեցին միայն հետպատերազմյան տարիներին։

Հայաստանում մոլիբդենի հանքային երևակումներ կան Քաջարանում, Հաջիբաջիում, Քեֆաշենում (Ղափանի շրջան), Ագարակում, Ալավգյունենում, Կարմրաքարում, Այգեձորում, Նյուվադիում, Աստազուրում (Մեղրիի շրջան)։ Մոլիբդեն կա նաև Եղեգնաձորի, Ազիզբեկովի, Հրազդանի շրջաններում։ Մոլիբդենի պաշարներով և պղնձա-մոլիբդենային հանքաքարի հանույթով Քաջարանի հանքավայրը ունի ինչպես միութենական, այնպես էլ համաշխարհային նշանակություն։ Մշակվում են նաև Ագարակի, Դաստակերտի պղնձա-մոլիբդենային հանքավայրերը. լավ ուսումնասիրված են Ջինդարայի—Մյուլքի և Հանքավանի հանքավայրերը։

Վոլֆրամի հանքանյութը առայժմ փոքր մասշտաբի հանքայնացումներով է հայտնաբերվել Ղափանի շրջանի Գեղի գետի հովտում։ Հետազոտությունները շարունակվում են։ Սնդիկի հանքային գոտիներ և մանր երակներ են հայտնաբերվել Մարց գետի հովտում և Վեդու շրջանում։ Բիսմուտը և անագը Հայաստանում առանձին հանքավայրերի ձևով չեն հայտնաբերվել. դրանք հանդիպում են պղնձա-կոլչեդանային և պղնձա-մոլիբդենային հանքավայրերում և չեն մշակվում։

Պղնձի հանույթով Հայաստանը գրավում է ՍՍՀՄ-ում առաջին տեղերից մեկը։ Նրա արդյունաբերությունը բուռն թափով զարգացավ սովետական իշխանության տարիներին։ Այժմ հանրապետությունում հաշվվում են 300-ից ավելի պղնձի հանքաերևակումներ, որոնցից մշակվում են Ղափանի ու Շամլուղի հանքավայրերը, որոնք զգալի քանակությամբ պղնձի կոնցենտրատ են տալիս Ալավերդու պղնձաձուլական գործարանին։ Հանրապետությունում հիշատակության արժանի են նաև Ալավերդու, Արդվինի, Սպասաքարի (Ալավերդու շրջանում), Ջիբուխլիի, Սիսիմադանի, Հանքաձորի (Գուգարքում), Դիլիջանի և Ամասիայի հանքավայրերը։ Սակայն պղնձի հանույթի մեծ մասը ստացվում է պղնձամոլիբդենային հանքավայրերից, որոնցից գլխավոր տեղը պատկանում է Քաջարանին և Ագարակին։

Մեր հանրապետությունում բոլոր պայմանները կան պղնձի հանույթը ընդլայնելու ուղղությամբ. նախատեսվում է առաջիկայում Ղափանում կառուցել պղնձաձուլական նոր գործարան։

Ցինկի հանքավայրերը մինչև հեղափոխությունը մշակում էին ֆրանսիական կոնցեսիոներները։ Վերջին երկու տասնամյակում այդ մետաղների հանքավայրեր հայտնաբերվել են Եղեգնաձորի, Ալավերդու, Ստեփանավանի և Ազիզբեկովի շրջաններում։ Ներկայումս շահագործվում է միայն Ախթալայինը։

Ալյումինի արտադրությունը Հայաստանում երկու տասնամյակի պատմություն ունի։ Դրա հումքը մինչև վերջին տարիները բերվում էր Միության հեռավոր շրջաններից։ Մեր երկրաբանների ջանասեր աշխատանքի շնորհիվ Փամբակի լեռնաշղթայում հայտնաբերվել և ուսումնասիրվել են Թեժսարի նեֆելինային սիենիտների հանքավայրերը, որտեղ կան ալյումինի հումքի անսպառ պաշարներ։ Նեֆելինային սիենիտների կոմպլեքս մշակման միջոցով ստացվում է ոչ միայն կավահող՝ ալյումին ստանալու համար, այլ մի շարք թանկարժեք քիմիկատներ, ցեմենտ և այլ նյութեր։ Նշված հանքավայրի բազայի վրա կառուցվող Հրազդանի լեռնաքիմիական կոմբինատը շուտով իր արտադրանքը կտա մեր հայրենի արդյունաբերությանը։



Մագնեզիումի հանքանյութերով հարուստ են Սևանի հյուսիսային և հյուսիս-արևելյան շրջանների հիպերբազիտային ապարների գոտում տեղադրված սերպենտենիտները, որոնց մշակման միջոցով հնարավոր է ստանալ (բացի հրակայուն նյութերից) նաև որակյալ մագնեզիում. այս ուղղությամբ որոշակի աշխատանքներ են կատարվում։ Այսպիսով, հավանաբար, Հայաստանը կունենա նաև մագնեզիումի արդյունաբերություն։

Ոսկու հանույթը Հայաստանում ունի դարերի պատմություն, սակայն, եթե չհաշվենք պղնձա-մոլիբդենային հանքանյութերի մշակման ժամանակ ստացվող ոսկու և արծաթի փոքր քանակությունները, ներկայումս տիպիկ ոսկու ոչ մի հանքավայր չի մշակվում։ Մեր երկրաբանները վերջին տարիներին հայտնաբերել են մի շարք ոսկու հանքավայրեր։ Բասարգեչարի շրջանում՝ Զոդը, Հրազդանում՝ Մեղրաձորը և այլն, որոնցից Զոդի հանքավայրը շուտով երկրին կտա իր առաջին արտադրանքը։ Մնացած հանքավայրերից (արդյունաբերական տեսակետից) ուշագրավ է Մեղրաձորինը։ Մեր հանրապետությունը հարուստ է ոսկու արմատական հանքավայրերով։

Արծաթը սովորաբար ստացվում է բազմամետաղների, ինչպես նաև ոսկու հանքավայրերի մշակման ժամանակ։ Նման հանքավայրերը Հայաստանում հարուստ են արծաթով և մշակվում են։

Պլատինի և դրա խմբի մետաղներից՝ օսմիումի, իրիդիումի հանքայնացումները կապված են Սևանի ավազանի հիպերբազիտային ապարների հետ և առայժմ արդյունաբերական կիրառում չունեն։

Հայաստանի ընդերքն առանձնապես հարուստ է տարբեր տիպի ոչ մետաղային օգտակար հանածոներով, որոնց մեջ զգալի տեղ են գրավում շինարարական-հրակայուն նյութերի և հանքային ջրերի հանքավայրերը։

Բնական շինարարական նյութերի մեծ քանակը և բազմազանությունը պայմանավորված են մեր հանրապետության երկրաբանական առանձնահատուկ կառուցվածքով։ Այդ առանձնահատկությունն այն է, որ Հայաստանը հրաբխային երկիր է, նրա ընդերքը հիմնականում կազմված է խորքային և մակերեսային հրաբխային ապարներից։ Առաջին հերթին մշակվում են այն շինարարական նյութերի հանքավայրերը, որոնք գտնվում են երկաթգծին մոտ ու արդյունաբերական կենտրոնների շրջակայքում։ Արժանի է հիշատակել շինարարական բարձր հատկությամբ օժտված զանազան գույնի տուֆերը։ Մեր հին ու նոր ճարտարապետական կոթողների վեհությունը, վարդագույն քաղաքների գեղեցկությունը զգալի չափով պայմանավորված են գեղազարդային բազմազանությամբ հարուստ տուֆերի անսպառ պաշարներ ունեցող հանքավայրերով։ Արթիկի, Լենինականի, Տաթևի, Ղալաչայի, Շահնազարի, Թումանյանի, Անիի, Երևանի հանքավայրերը տարեկան տալիս են հսկայական քանակությամբ շինաքար և այլ շինարարական նյութեր։ Միայն Արթիկի հանքավայրը տարեկան արտադրում է 450000 խորանարդ մետրից ավելի վարդագույն քար։ Տուֆերի հանքավայրերի մշակման ռացիոնալ տեխնոլոգիայի կիրառմամբ և աշխատանքների լրիվ մեքենայացմամբ հանրապետությունը կստանա մեծ եկամուտ։

Բազալտ ու անդեզիտ քարերն այնքան են տարածված Հայաստանում, որ դրանց պաշարները գործնականում անսպառ են. դրանք որպես շինաքար լայն կիրառություն ունեն շինարարության մեջ, ինչպես նաև օգտագործվում են որպես թթվակայուն, հրակայուն և էլեկտրամեկուսիչ նյութեր։ Շինանյութերի

հանքավայրերից շահագործվում են Նորքինը, Այրումինը, Աղատանինը, Փարաքարինը, Ավանինը, Կիրովականինը, Խնձորուտինը և Կապուտանինը:

Պեմզայի և պեռլիտի հաքավայրերը կապված են ամենաերիտասարդ հրաբխային արտավիժումների հետ. հայտնի են 57-ից ավելի պեմզայի հանքավայր, որոնցից արդյունաբերական նշանակություն ունեն Անիինը և Պեմզաշենինը, Գյումուշինը և Լուսավանինը: Հայաստանը եղբայրական հանրապետություններին այսպիսի նյութերով միակ մատակարարողն է: Միայն Անիի և Պեմզաշենի հանքավայրերը տարեկան արտադրում են 775000 խոր. մետր պեմզա:

Պեռլիտը արտաքինով նման է պեմզային, սակայն դրանից տարբերվում է ֆիզիկա-քիմիական հատկություններով, որը հնարավորություն է ընձեռում այն օգտագործել շինանյութերի, ներկերի, պլաստմասսաների և ասֆալտների արդյունաբերության մեջ որպես լցոն, իսկ սննդի և արդյունաբերության այլ ճյուղերում գործածվող հեղուկների մաքրման համար՝ որպես ֆիլտրներ: Պեռլիտի անսպառ պաշարներով հայտնի են Հրազդանի, Սիսիանի, Թալինի, Աբովյանի շրջանների հանքավայրերը: Հայաստանից պեռլիտը արտահանվում է նաև եվրոպական երկրներ. միայն Արագածի պեռլիտների պաշարները հասնում են մի քանի միլիոն տոննայի:

Գրանիտային ապարները Հայաստանում զբաղեցնում են զգալի տարածություն. դրանք ունեն լավ դեկորատիվ հատկություններ և մեծ կիրառություն ճարտարապետության, շինարարության մեջ և փողոցների սալահատակման գործում: Առայժմ լայնորեն օգտագործվում է Փամբակի գրանիտը:

Տարբեր գույների և երանգների հայկական լավորակ մարմարները ունեն հսկայական երկրաբանական պաշարներ: Լավ ուսումնասիրված և հետազոտված մարմարի 15 հանքավայրերից արդյունաբերական հետաքրքրություն են ներկայացնում Աղվերանի, Արզաքանդի, Արարատի, Խորվիրապի, Մարմարասարի հանքավայրերը, որոնք օգտագործվում են ինչպես մեր հանրապետության, այնպես էլ Սովետական Միության այլ շրջաններում:

Գիպսի հանքավայրեր կան Երևանի շրջակայքում, Կիրովականում, Ալավերդիում. դրանք լայնորեն կիրառվում են ճարտարապետության, շինարարության և բժշկության մեջ: Միայն Ջրվեժի հանքավայրն ունի 300 միլիոն տոննայից ավելի պաշար: Այդ բազայի վրա է աշխատում Երևանի գաջի գործարանը:

Հրակայուն նյութերի հանքավայրերը Հայաստանում տարածված են Սևանի հյուսիս-արևելյան ափին, Ալավերդու շրջանում: Արդյունաբերական նշանակություն ունեն Շորժայի, Ջիլի, Բաբաջանի և Դարայի, Թումանյանի հանքավայրերը: Սևանի ափին տարածված ֆորստերիտային կազմի հրակայուն նյութերը սերպենտինացված և մագնեզիտացված դունիտներ-մագմատիկ խորքային ապարներ են, որոնք հարուստ լինելով մագնեզիումով, պիտանի են ոչ միայն որպես լավորակ հրակայուն նյութ, այլև մեխանիկական հարստացման ճանապարհով դրանցից հնարավոր է ստանալ մետաղական մագնեզիում: Իսկ հանքանյութի հետ կապված մագնեզիում-սիլիկատային ապարները լավորակ պարարտանյութ են և կաղապարանյութ ձուլվածքների համար: Ներկայումս գործում է Թումանյանի հրակայուն աղյուսի գործարանը և կառուցվում է Շորժայի կերամիկայի խոշոր կոմբինատը:

Մեր հանրապետությունը հարուստ է աղաբեր շերտախմբերով: Այդպիսիք հայտնաբերվել են Հրազդանի, Ախուրյանի, Քասախի ավազաններում, որոնց



ընդհանուր պաշարը հարյուրավոր միլիոն տոննա է: Միայն ավանի հանքավայրում հաշված է 500 միլիոն տոննա կերակրի աղի պաշար, որն օգտագործելի է ինչպես սննդի արդյունաբերության մեջ, այնպես էլ տեխնիկական նպատակով: Ներկայումս այն մշակվում է:

Հայաստանը հարուստ է նաև քաղցրահամ ու հանքային ջրերով: Անցած ժամանակաշրջանում կատարված հիդրոերկրաբանական ուսումնասիրությունները հնարավորություն են ընձեռել պարզելու ստորերկրյա ջրերի բաշխման օրինաչափությունները և դրանց կապը շրջանի երկրաբանական կառուցվածքի հետ: Ուսումնասիրված են ստորերկրա ջրերի տեղադրման, տարածման և առաջացման պայմանները, պաշարներն ու քիմիական հատկությունները, հաստատված է, որ այդ ջրերի զգալի մասի սնման և տեղաբաշխման գործում հսկայական նշանակություն ունեն վերին երրորդական և չորրորդական երկրաբանական հասակների հրաբխային ապարների ծածկոցները և հոսքերը: Արարատյան և Շիրակի դաշտավայրերում, Սևանի ավազանում, Սիսիանի և Փամբակի սարահարթերում հայտնաբերվել են արտեզյան ջրերի կուտակներ, որոնք օգտագործվում են գյուղատնտեսության և արդյունաբերության մեջ: Ներկայումս հայտնի են 8000-ից ավելի աղբյուր և փորված են 1200-ից ավելի հիդրոերկրաբանական հորատանցք, որոնց զգալի մասի ջուրը ազատ դուրս է ելնում երկրի մակերես: Հիդրոերկրաբանների հաշվառումներով մեր հանրապետության յուրաքանչյուր 1 ք. կիլոմետրին ընկնում է վայրկյանում 3,5 լիտր բնական և արհեստական ջրերի ելք:

Գործնական մեծ նշանակություն ունեն լավային հոսքերի խորքային մասում հին գետային հովիտներով հոսող ստորերկրյա ջրերը, որոնք հայտնաբերվել են Գառնիում, Վարդենիսում, Եղեգնաձորում, Բազարչայում, Զորագետում, Ղազանչիում, Սպանդարյանում: Այդպիսի հոսքերը սովորաբար սկիզբ են առնում բարձր լեռնաշղթաներից: Հնարավոր է ռելիեֆի բարձրադիր մասերում դրանք հատել հորատանցքերով ու օգտագործել ոռոգման և էներգետիկայի նպատակներով: Նման հոսքերի տիպիկ օրինակը Այղրլիճ-Գյոլբեկլու ստորերկրյա ջրային հոսքն է:

Հայաստանը հարուստ է բուժիչ հանքային ջրերով: Հանքային աղբյուրներից և հորատանցքերից բխող ջրերի ընդհանուր ելքը վայրկյանում կազմում է 700 լիտրից ավելի: Հանրապետությունում հայտնաբերված են համարյա բոլոր տիպի հանքային ջրեր, որոնց բազայի վրա աշխատում են Հայաստանի առողջարանները և հանքային ջրերի գործարանները: Վերջին տասնամյակներում հայտնաբերվել են Հանքավանի, Ջառի, Արարատի, Ֆիոլետովոյի, Կամոյի, Տաթևի, Ախուրյանի, Լիճքի և Մարտունու հանքային ջրերը, որոնք ապագայում մեծ կիրառություն կգտնեն:

Ջերմուկի հանքային աղբյուրները տարածված են Արփա գետի վերին հոսանքներում, ծովի մակարդակից 2100 մ բարձրության վրա: Այստեղ հանքային ջրերի պաշարները մեծ են՝ ջրի առավելագույն ջերմաստիճանը 64,5° C, այն ջրակարբոնատ-սուլֆատնատրիումային տիպի է և նման է Չեխոսլովակիայի Կարլովի Վարի հանքային ջրերին: Այժմ այնտեղ գործում են միութենական նշանակության մի քանի առողջարաններ և հանքային ջրերի լցման գործարան: Նման ջրեր հայտնաբերվել են նաև Վորոտանի հովտում, Մեղրիում և այլուր:

Արզնու հանքային ջրերը տարածված են Հրազդանի հովտում, նրանք կապված են աղաբեր, գիպսաբեր շերտախմբերի հետ, որի պատճառով էլ ու-

նեն աղալկալիական բաղադրություն. մեկ օրում ջրերի ելքը կազմում է 2 միլիոն լիտր, ջերմաստիճանը՝ 24 է: Արզնու ջրերն իրենց բուժիչ հատկություններով նմանը չունեն մեր ընդարձակ Միության մեջ: Այժմ այնտեղ գործում են մի քանի սանատորիաներ ու հանքային ջրերի լցման գործարան:

Դիլիջանի հանքային ջրերը տարածված են Բլդան գետի գեղատեսիլ հովտում, ունեն ջրակարբոնատ-նատրիումային բաղադրություն և նման են հանրահայտ Բորժոմի ջրերին, ջերմաստիճանը՝ 11—11,5 է:

Հրազդանի շրջանի Մարմարիկ գետի գեղատեսիլ հովտում են գտնվում Հանքավանի հանքային ջրերը, որոնք ջրակարբոնատ-քլոր-նատրիումային են, ջերմաստիճանը՝ 34 և նման են Էսենտուկիի հանքային ջրերին. ջրի ընդհանուր ելքը մեկ օրում գերազանցում է 3 միլիոն լիտրից: Այստեղ գործում են հանգստյան տներ և հանքային ջրերի լցման գործարան: Էսենտուկիի նման հանքային ջրեր հայտնաբերվել են նաև Սևանի ավազանում, Մարտունու ավանի և Լիճք գյուղի մոտ:

Արարատի հանքային ջրերը գտնվում են Արարատյան դաշտավայրի Արարատ բանավանում: Շատրվանող ջրերը մեկ օրում տալիս են մոտ 14 միլիոն լիտր ելք, ունեն ջրակարբոնատ-կալցիումային բաղադրություն և 20—25° ջերմություն. Նմանվում են նրանք Ցխալտուբոյի հանքային ջրերին: Բոլոր հնարավորությունները կան ապագայում այդ վայրերում առողջարաններ կառուցելու համար.

Ածխաթթվա-ծծմբաջրածնային բաղադրությամբ հանքային ջրեր հայտնաբերվել են Ախուրյան գետի հովտում և ունեն մեծ պաշարներ: Վերջին տարիներին Եղեգնաձորի շրջանի Եղեգիս գյուղի մոտ և Արարատյան դաշտավայրում՝ Դվինի մոտ հայտնաբերվել են բոր պարունակող ջրեր, որոնցից հնարավոր է ստանալ արդյունաբերական մասշտաբի մետաղական բոր:

Մեծ հեռանկարներ են կապված Հայաստանի ընդերքի ջերմությունը ժողովրդական տնտեսության կարիքների՝ առանձնապես էներգետիկայի և ջեռուցման մեջ օգտագործելու հետ: Մեր հանրապետությունը երիտասարդ ծալքավոր շրջան է ու գործող հրաբուխներով հարուստ երկիր: Վերջիններիս հետ էլ կապված է ընդերքի բարձր ջերմաստիճանը. դրա լավագույն ապացույցը բխող տաք ջրերն են:

Մեր երկրաբանները՝ բնության հետախույզները, հայտնաբերել են գորշ ածխի ոչ մեծ պաշարներով հանքավայրեր Ջաջուռում, Ջերմանիսում, Մայիսյանում: Այրվող թերթաքարերի հանքավայրեր հայտնի են Դիլիջանում և Ամասիայում: Նավթ և գազ հայտնաբերելու նպատակով Հոկտեմբերյանի շրջանում հորատանցքերից ժայթքել է բնական գազ: Այդ նպատակով կատարվող երկրաբանական աշխատանքները շարունակվում են. հավանական է կունենանք բնական գազի հանքավայր:

Ընթացիկ հնգամյակում մեծ միջոցներ են նախատեսված մեր հանրապետության բնական հարստությունները հայտնաբերելու, դրանք ժողովրդի բարօրությանը ծառայեցնելու համար:

Ս. ՍՈՒԼԵՅՄԱՆՅԱՆ
Լեռնային ինժեներ, երկրաբան

# ՄՈԼՈՐԱԿԻ ԱՆՈՒՆԸ ՕՎԿԻԱՆՈՍ Է*

Մեր մոլորակը մոտ չորս միլիարդ տարեկան է:

Օվկիանոսների տարիքը, ինչպես գիտնականներն են ենթադրում, երկու-երեք միլիարդ է:

Հինգ հազար տարուց ավելի է, որ մարդը լողում է օվկիանոսներում: Նա մտել է օվկիանոս, հայացքը հառել ջրի կիլոմետրանոց շերտին, թափանցել նրա խորքը, տեսել ստորջրյա վիթխարի աշխարհն ու հասկացել՝ իր առջև նոր, բոլորովին անծանոթ մոլորակ է, ավելի լայնածավալ ու հարուստ, բնակեցված ավելի խիտ, քան մեր ծերունի Երկիրը:

Մարդը մտավ օվկիանոս: Վերջին երկու տասնամյակում նրա մասին անհամեմատ ավելի շատ բան իմացանք, քան նախընթաց ողջ ժամանակներում, բայց մեր իմացածը շատ չնչին է: Մենք հասկացանք, որ մեր առջև փոքր կոսմոս է, ապագայի, գուցե ամենամոտ ապագայի, անսպառ գանձարանը:

Այս կապակցությամբ խոսենք մի պրոբլեմի մասին, որը վերջերս շատ էր հուզում մարդկությանը: «Հանքային քաղցի» պրոբլեմն է այդ, որին ավելի ու ավելի շատ տեղ է տրվում մասնագիտական և գիտամասսայական գրականության մեջ, հուզում մտքերը:

Ահաբեկող հաշվարկներ են բերվում: Վերջին 30 տարիների ընթացքում գունավոր և հազվագյուտ մետաղների հանույթը Երկրում ավելի մեծ է, քան մարդկության պատմության նախորդ ժամանակներում: Անցյալ հարյուրամյակում ընդերքից հանվել է 15 միլիարդ տոննա նավթ: Մարդկությունը ողջ պատմության ընթացքում մոլորակի պահեստարանից վերցրել է $2 \times 10^9$ տոննա երկաթ և $50 \times 10^9$ տոննա ածուխ: Մամուլում սկսել են երևալ նաև այլ հաշվարկներ. նավթը կարող է բավարարել 25, ածուխը՝ 50, երկաթը՝ 100 տարի: Նման հաշվումները անհրապույր են դարձնում կյանքը...

Մարդը մտավ օվկիանոս: Եվ առաջին բանը, որ նա տեսավ, այդ առափնյա ծանծաղուտներն էին կամ, ինչպես գիտնականներն են կոչում՝ շելֆերը: Եվ երբ պարզվի, որ շելֆերի գրաված տարածության 25 տոկոսը երկրային ցամաքահող է, ապա հասկանալի կլինի, որ գործ ունենք մեր մոլորակի չուսումնասիրված մի վիթխարի մասի հետ: Շելֆերն ունեն երկուսից երեք հարյուր մետր խորություն և փռված են տարբեր վայրերում, ափերից հարյուր, երկու-երեք հարյուր մղոնի վրա:

Շելֆերը օվկիանոսի հատակի համեմատաբար մատչելի մասն են, դրա համար էլ մարդը, առաջին հերթին, այն սկսեց ուսումնասիրել: Եվ այդ անդրանիկ քայլերը ցույց տվին, որ գործ ունենք հարուստ մի գանձարանի հետ:

Նավթ: Լոկ ենթադրություն չէ այս: Շատ պետություններ շելֆերից նավթի ավելի ու ավելի մեծ պաշարներ են հանում:

Ամերիկացիք հանույթը ձեռք են բերում Մեքսիկական ծովածոցում, ճապոնացիք՝ Պարսկական: Նավթային Քարերում հայթայթվող Բաքվի մեր նավթը նույնպես շելֆային է: Եվ, երբ ցամաքի հետախուզված պաշարները 45 միլիարդ տոննա են, ապա շշմեցուցիչ են շելֆերում գտնվող նավթի պաշարների ամենամոտավոր հաշվումների տվյալները—125 միլիարդ տոննա:

Օրանժևոյ գետաբերանի շրջանում հայտնաբերված է երկու-երեք անգամ ավելի ալմաստ, քան Հարավային Ամերիկայի ամենահարուստ ալմաստաբեր խողովակներում:

Ավստրալիայի Նոր Հարավային Ուելսի ափերին, 15 մղոն հեռավորության վրա, հայտնաբերվել է նստվածքների «շերտիկ», որի խորությունը 6—200 մետր է, երկարությունը՝ 2 225 կիլոմետր: Պարզվել է, որ շելֆային այդ ավազուտներում սատափի ու ցիրկոնի հարուստ պաշարներ կան:

ԳԴՀ-ում արդեն կազմակերպված է տիտանի, սատափի և իլմենիտի հանույթը:

Ճապոնիայի Խոնդո կղզիներում շելֆերի երկաթատիտանային ավազուտներում վանադիում են գտել: Սրանց պաշարները հասնում են 10 միլիոն տոննայի:

Շելֆերում գտնվել են մագնիսական երկաթաքարի, ծծմբի, ֆոսֆորիտների, գրեթե բոլոր հազվագյուտ մետաղների հողաշերտեր: Եվ այդ ամենը այնպիսի չափերի են հասնում, որ մեկեն վերանում է «հանքային քաղցի» հարցը: Ընդ որում, շատ կարևոր է ու էական, որ շելֆերի այս և շատ այլ հարստություններ, գուցե բացի նավթից, մարդիկ չեն փնտրել:

Շելֆերը օվկիանոսի հատակի միայն 3 տոկոսն են կազմում: Մարդը շարունակում է ավելի խորքերը թափանցել, իջնելով մայր ցամաքի լանջերից, կտրվելով ոտքի տակի հողից, հայտնըվում է կիլոմետրածիգ խորություններում, հավիտենական խավարի թագավորությունում, օվկիանոսի մահճում: Գիտնականներն այստեղ ամենից առաջ տեսնում են վիթխարի հարթավայրեր: Այդպիսիք ցամաքում չես գտնի: Դրանք ամենուր են, հարյուր-հազարավոր կիլոմետրերով, սեղանի նման հարթ ծածկված, նստվածքային խոր շերտով: Դրանց հաստու-

* Տպագրվում է կրճատումներով:

հայտնագործություններից, որի հրաշունչ Դևը հեղափոխել էր մարդկանց գիտակցությունը. անկասելի էր կյանքի առաջընթացը։

«Այնտեղ կռվում են... սքանչելի է։ Կեցցե՛, կեցցե՛ Փարիզը»,— այդ տասը տարեկան Ֆրեդն է գոչում։ Նա շատ փոքր էր հասկանալու համար, թե ում և ինչը ողջունել. ինչ-որ տեղ մարտեր էին... իսկ նա՝ դեռ մանուկ, մարտատենչ էր արդեն. նա չգիտեր էլ, որ պայքարն այդ իր պատմությունն ունի, և վերջացել է նրա քառասնամյա ընդմիջումը։

1830 թվականի ամռանն էր։ Ապստամբել էր Փարիզը։ Հեղափոխության հուրը հաղթանակ էր բերել ժողովրդին։ Ցնծում էր ողջ առաջավոր Եվրոպան։

Բայց... հաղթանակած ժողովուրդը խաբվեց. նրան նորից ճկեցին, նոր շղթաներ հագցրին ու նոր թագավոր հրամցրին։ Բայց դավաճանությամբ կարելի՞ է միթե հանդարտեցնել փոթորիկը։ Ու թեև հեղափոխությունը ցած էր դրել զենքերը, բայց շարունակում էր անհանգիստ քայլել Եվրոպայում։ Այն շրջում էր ֆաբրիկաների դժոխքում, գիտնականների լաբորատորիաներում, նկարիչների ձեղնահարկերում, պոետների ու կոմպոզիտորների սալոններում ու մոլեգնում մտքերը։ Գերմանիան մարդկությանը նվիրեց Հեգելի դիալեկտիկան՝ «հեղափոխության հանրահաշիվը»։ Ֆրանսիան հրատարակում էր Սեն-Սիմոնի, Ֆուրիեի երկերը, Բեռլինում սոցիալիստական գաղափարներ էին երգում Հայնեն, Բյուխները, Բյորնեն, հեղափոխական գաղափարների հանդեպ Փարիզում իրենց բացահայտ համակրանքն էին հայտնում կոմպոզիտոր Բեռլիոզն ու նկարիչ Դելակրուան։ Լոնդոնում այդ մասին էր մտորում Դարվինը, Պետերբուրգում՝ Գերցենը։

... Եվրոպան նորից հրե ցանցով էր ծածկվել։ Մեծացել էին Գավրոշի եղբայրները, նրանք վրեժի էին կոչում. հասունացել ու ամրացել էր հեղափոխությունը։ Ահեղ ու մեծ էպոխան իջնում էր բեմահարթակից։ Գալիս էր նորը... Քսանութ տարեկան Ֆրեդը, հաղթահարելով վիթխարի արգելքներ, հրճվանքով այրելով ետդարձի բոլոր կամուրջները, գնաց նորին ընդառաջ։

Բուռն ոգևորությամբ, խելացի ու ճշմարտացի է ներկայացնում Պրոդևը մեր հերոսին հեղափոխությանը զինվորագրող մեծ ժամանակաշրջանը։

Ֆրեդի կերպարն այդքան հրապուրիչ, ուսանելի ու հմայիչ չէր լինի, եթե հեղինակին չհաջողվեր ժամանակաշրջանի և մյուս գլուխների միջև դինամիկ կապ ստեղծել։ Գիրքը ժամանակի, հասարակության, տոհմի, ողջ լավագույնի, առանձնահատուկի խտացած, միաձույլ պատկերն է։ Այդ լավագույնը, առանձնահատուկը պետք է որոնել Ֆրեդի տոհմում, ապա՝ ուսումնարանում և հետո հասարակության մեջ։

Էնգելսները հումանիզմի սիրահարներ էին։ Նրանց հոգին ազատ էր շղթաներից, ջերմացած վերածնության արևի շողերով։ Էնգելսների շուրթերին լյութերյան սրբերի փոխարեն հաճախ Կոլումբոսի, Մագելանի, Վասկո դե Գամայի անուններն էին։ Տրամադրությունը բարձր է, ապրելն ուրախ, երբ գիտությունը ծաղկում է,— ասում էին նրանք,— գիտության սերը լըրացվում էր կյանքի սիրով։

«Էնգելսների արյան մեջ եռում են էպոխայի դիվային ուժերը»,— գրում է հեղինակը։ Իրավ այդպես է. չէ՛ որ նրանք միշտ արթուն են եղել, պայքարի պատրաստ։ Կյանքի լավ տեղի համար մղած մեծ ճակատամարտում նրանք դարձան անընկճելի, ապահով ու աներեր։ Առնտուրն էր նրանց տարերքը՝ խելքի կռիվը։ Երբեք նրանք չէին վրիպում, տանուլ չէին տալիս, վստահ ու համարձակ մտնում էին մարտի մեջ։

Յոհան-ավագը էնգելսների լավ հատկությունների հավաքական կերպարն է. նա համարձակ է, խելացի, գործնական։ Ապրել ու տեսել էր աղքատության բոլոր սարսափները. տառապյալ սիրտ ու երկաթյա կամք ուներ նա, նպատակին հասնելու մեծ կորով։

Նրա որդին նույնպես հետաքրքրական անձնավորություն էր։ Յոհան-կրտսերը կարողացավ եռապատկել հոր ժառանգությունը, կայուն դիրք գրավել հասարակության մեջ։ Նա լավ գիտեր փողի արժեքը և տիրապետում էր այն կուտակելու տեխնիկային։ Առևտուրը նրա համար ո՛չ միայն ապրանքաշրջանառություն էր, այլև արվեստ՝ իր օրենքներով, գաղտնիքներով ու հնարներով։

Էնգելսը ժառանգել է Յոհան պապերի մտքի ճկունությունը, ազատատենչ հոգին, հումանիզմը, հարուստ ներքնաշխարհը։ Եվ այնպես է ներկայացնում հեղինակն այդ ամենը, որ ընթերցողը սիրում, հարգում է Ֆրեդի պապերին։

Իսկ Ֆրեդի հա՞յրը։ Նա բոլորովին այլ է, թեև նույնպես էնգելս։ Բայց... Կտրված բանվորական մեկնակետից, շրջապատված ֆեոդալական արիստոկրատիայի քարացած օրենքներով։ Բնավորությամբ խիստ է նա, ուժեղ կամքի տեր, առյուծասիրտ այդ մարդը տանը բռնակալ էր, առևտրի մեջ դև, մարդկանց հանդեպ անողորմ։ Չափավոր էր նա միշտ. կյանքից կտրվել, պոկվել չէր կամենում։ Երկնայինն ավելի հետաքրքրական է, քան հանդերձյալ աշխարհը. ամպերը չափազանց թեթև են,— ասում էր նա,— մի ֆաբրիկայի հիմք իսկ չեն կարող դառնալ։ Իսկ այնտեղ, ուր չկա ֆաբրիկա, արդյունաբերություն, դ յտարկություն է, ոչնչություն։



Սակայն, որքան էլ զարմանալի է, այդ առյուծն աշխարհում ամենից ավելի երաժշտությունն էր սիրում, լուրջ կլասիկ երաժշտությունը։ Երաժշտությունը միակ ուժն էր, որ կարող էր ուզած րոպեին կտրել նրան շուկայական տարերքից, կապիտալիստական արենայի դաժան մրցությունից։ Նա խոնարհվում էր մարդկային հանճարների գլուխգործոցների առաջ, քահ-քահ ծիծաղում Մոլիերի պիեսները կարդալիս, մանկան պես հեկեկում Շեքսպիրի ողբերգությունները դիտելիս։

Հակասություններով լի այդ «վերջին մոհիկանը» ականատես եղավ դարավերջի ու սկզբի մայրամուտին ու արևածագին։ Գուցե այդ էր պատճառը, որ նա որքան վանող, նույնքան և գրավիչ անձնավորություն էր... Մեծ հրաբխի վերջին ժայթքումն էր ավագ էնգելսը— ամենագեղեցիկը, ամենասարսափելին։

Եվ Ֆրեդը հորից ժառանգեց անվնաս մնացած մի ռացիոնալ հատիկ... ու մինչ հայրը խիստ մաթեմատիկական հաշիվներ էր անում՝ որդուն հեղափոխական ազդեցությունից զերծ պահելու, նրա մեջ եղած ռացիոնալ հատիկը պարարտ հող գտնելով հրաշալի, կանգուն ծիլեր տվեց։ Հայրը սայթաքեց, կորցրեց որդու մտքի բանալին։ Ահա հոր դժբախտությունը։

Փոքրիկ Ֆրեդը մոլի հավատացյալ էր։ Տղայի հավատը ջերմ էր, մոլեռանդ։ Վուպերտալցիները հաճախ էին նրան տեսնում ծնկաչոք, աղոթագիրքը ձեռքին։ Այդ պահերին ֆաբրիկանտի որդին երկնային արարածի էր նման, սակայն աղոթելիս նա չէր կարողանում որևէ լուրջ հանցանք հիշել և վուպերտալյան աստծուց խնդրում էր՝ Գասպար պապի ականջին շշնջալ, որ սա այդպես զայրացած չքրքրի իր մեծ մորուքը, աստված հասկացնի մայրիկին. թե տղան միշտ չի կարող պրոֆեսորի պես վայելուչ լինել, Վան Հաարին հորդորել ավելի շատ հեքիաթներ պատմի, աղաչում էր աստծուց, որ հայրն այդպես կոպիտ ու համառ չլինի։ Ֆրեդի հոգևոր առաջնորդը պապն էր (մոր հայրը), որին այնպես պաշտում էր նա և որի ազդեցության տակ էր երկար տարիներ։

Սակայն կարո՞ղ էր եկեղեցու երերուն քողը միշտ փակ պահել Ֆրեդի մտքի լուսամուտները (թեև ֆաբրիկանտն այդպես էր կամենում)։ Ֆրեդը լույսի, արևի շողերի ներթափանցման ուրիշ լուսամուտներ ուներ, ուրիշ աղբյուրներ։ Ու դեն արթնացավ Ֆրեդի մեջ։ Արթնացրին... Տասնյոթ տարեկան էր պատանին, երբ սթափվեց ու տեսավ իրականությունը՝ աղքատի մեկնած ձեռքը, փքված ֆաբրիկանտի անտարբեր հայացքը. նա տեսավ սուտը, կեղծիքն ու ցինիզմը, գեղեցիկ հեքիաթների մեջ խցկված կեղտոտ ձեռքերը։ Զայրույթի ու վրդովմունքի հետ մեկտեղ տղայի մեջ բռնկեց կասկածը. խռովվեց անդորրը։

Ծառանալ աստծու դեմ — այս էր փոթորկի առաջին ալիքը, առաջին կռիվն ու հաղթանակը։ Ֆրեդի աստվածը դառնում է մարդը, մարդկային բանականությունը. ազատ, ուժեղ, խելոք, կենսասեր մարդը, որը եկեղեցի է գնում ոչ թե խաբվելու, աստծուն պաշտելու, այլ երգեհոն լսելու։ Նա քիչ բան գիտե սրբերի մասին, բայց կարող է ժամերով կանգնել նրանց հոյակապ պատկերների ու քանդակների առաջ։

Չափի մեծ զգացումով ու վառ գույներով է հեղինակը նկարագրել աստծուն ու Ֆրեդին— բարեկամ, ապա՝ թշնամի։ Ոչ մի կեղծ երանգ, անհամոզիչ իրավիճակ։

Բայց ահա և երկրորդ ալիքը, երկրորդ հաղթանակը։ Ուսումնարան։ Որքա՜ն հուր է վառել նրա սրտում ու մոխրացրել, որքա՜ն վառ երազներ են հօդս ցնդել, բայց և որքա՜ն հզոր ու անսպասելի ուժեր են արթնացել ու ճիշտ ուղի գտել։

Վուպերտալյան աշակերտ — հակասություններով լի հոգի է նա, միշտ գրգռված, խանդավառ, մերթ միամիտ ու բարի, մերթ խորամանկ ու չար, մեծահոգի, վրեժխնդիր։ Ոչ մեկի, ոչնչի հանդեպ նա երբեք անտարբեր չի եղել, երբեք չի գնացել տրորված, դյուրանցանելի, հարթ ուղիներով։ Նրան հարազատ են սուր ծայրերը. կամ ստեղծող է նա, կամ կործանող։ Նա սխրանքների կծիկ է, խտացած էներգիա։

Ֆրեդը միաժամանակ անզուգական ընկեր էր, ազնիվ բարեկամ, ատում էր սուտն ու կեղծիքը։ Նրա ամեն մի քայլը բանականության դրսևորումն էր։ Վուպերտալյան գորշ մթնոլորտը, ավելի քան գորշ ուսումնարանը ամեն ինչ անում էին խեղդելու, թունավորելու, նսեմացնելու պատանիների գեղեցիկ, երազող, որոնող հոգիները։

Սակայն Ֆրեդը տեղի չէր տալիս։ Ուսումնարանում կային նրա ճամփան լուսավորողներ, ինչպես ծերուկ Կլաուզինը։ Նրանք սիրում էին Ֆրեդին և ամեն ինչ անում պատանու մեջ ինքնուրույն մտածելու ունակությունը զարգացնելու համար։ Այդ դաստատուների ջանքերը զուր չանցան։ Ֆրեդը սիրում էր աշխատել, սիրում էր գիտությունը։ Նրա աշակերտական փոքրիկ սենյակում ամենուրեք գրքեր էին, այլազգի տարբեր ժամանակների գիտնականների, գրողների, արվեստագետների ստեղծագործություններ։ Այնտեղ նա մոռանում էր ուսումնարանը, փողոցը, խաղերը, սուզվում խորհրդածությունների հանելուկային աշխարհը։

Սակայն գլորվեցին աշակերտական տարի-

ները. ահա և գիմնազիայի ավարտականը, ուր սառը սրտով ու ձեռքով գրված է միայն՝ «լավ թարգմանում էր», «լավ գիտե քերականությունը», «կայուն գիտելիքներ ունի»։ Իսկ Ցրեզը դառը ժպտում է։ Բայց ի՞նչ փույթ... Հայրը որոշել է տղային առևտրական դարձնել և ոչ գիտնական կամ ինչ-որ պոետ, և նրան ուղարկում է գրասենյակ...

Ջեղնահարկ նետվեց աշակերտական պայուսակը, բայց երազները մնացին, գրքերն էլ մնացին Ցրեզի փոքրիկ սենյակում։

Մնա՜ս բարով վուպերտալյան խիստ ուսումնարան։ Ողջո՜ւյն կյանք, ուսում և աշխատանք։

Ժառանգած էնգելսների լավագույնը, բեռնըված գիտելիքներով, ծառացած եկեղեցու, ուսումնարանի խավարի դեմ, էնգելսը մտավ հասարակության մեջ։ Գրասենյակ... Հանճարի գարունն իր ավարտն էր ապրում. շատ բան էր սպասում նրան. մակընթացություններ, տեղատվություններ ու կրկին պայքար՝ հաղթանակի մեծ հավատով։

Բայց հաղթանակը շատ էր հեռու, ճամփան՝ փշոտ, անհասանելի։ Ուղիղ հիսուն տարի անց, արդեն ծերացած Ցրեզը ստիպված էր խոստովանել՝ իմ «եգիպտական ստրկությունը շարունակվում է»։

Եվ, այնուամենայնիվ, գրասենյակն օգնեց նրան։ Այնտեղ, թե երեկույթներում նա գրեթե ամեն օր բախվում էր «բարձր հասարակության հետ» և տեսնում փողի պաշտամունք, սուտ, կեղծիք, բութ հայացքներ, անտարբերություն, ձանձրույթ։ Ամեն բան այստեղ գրգըռում էր նրան, վիրավորում, ճնշում։ Ներքին կոնֆլիկտը կրծում էր սիրտը ու նա չէր կարողանում ոչ ոքի ու ոչինչ ներել։ Ցրեզը հետըզհետե օտարանում է հասարակությանը։ Սկըսվում է անխուսափելի մղձավանջը՝ «սառը պատերազմը» ամենատարբեր հակառակորդների դեմ։ Ոմանք կռվում էին կոպիտ, գիշատչի նման, ոմանք ստորաբար՝ անկյունից։ Անհավոր մարտերում, ինքն էլ չիմանալով ինչպես, անցավ սոցիալական սահմանը։ Նոր ճամփան նեղ էր ու ցեխոտ։ Նա բախեց առաջին պատահած դուռը, և նրա առջև բացվեց տառապանքի ու աղքատության աշխարհը...

Նրան այստեղ բերող գերընական ուժը սեփական սրտի ձայնն էր, աշխարհին ու մարդկանց ընկալելու նոր ըմբռնումը, էպոխայի ոգին։ Եվ որքան նա խոր էր թափանցում աղքատության մութ անկյունները, այնքան մռայլվում, մենակյաց էր դառնում։

Հայրն զգաց, որ տղայի ուղեղում բուն են դրել «վտանգավոր» մտքեր։ Նա շտապեց հեռացնել որդուն Բարմենից, իսկ նրա մեջ մտած «սատանային» մեծ կապիտալիստն անգիտակցաբար պարգևեց մարդկությանը։

Թանկագին, մե՜ծ պարգև...

Մարդկությո՛ւն, ընդունի՛ր նրան, քո գիրկն է գալիս։

***

Երախտագիտության մեծ զգացումով ես համակվում հեղինակի հանդեպ, որ այնպես մարդկայնորեն, ջերմությամբ ու անպաճույճ նկարագրել է հանճարի գարունը։

Մենք վարձահատույց կլինենք,— գրում է նա,— եթե սովետական ընթերցողն այս գրքում գտնի այնպիսի մի միտք կամ կերպար, որը նրա համար օրինակ լինի։ Գրելով բոլոր նըրանց համար, ովքեր չեն մոռացել, որ իրենք էլ պատանի են եղել, ովքեր այժմ էլ ապրում են այդ գեղեցիկ պահը, հեղինակը հասել է իր նպատակին։

ԼԻԴԱ ԽՈՒԴՈՅԱՆ


ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈՒՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱԿՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿԿ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

*Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24*

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 6/III 1967 թ.։

ՎՖ 05805 | Պատվեր 354 | Տիրաժ 10623 | Գինը 25 կոպ.։

*Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետին առընթեր մամուլի կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51ա*




# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության մասին։ *Երկրորդ հրատ., Մ., Քաղհրատ, 1966, 443 էջ։*

*Այս ժողովածուում զետեղված են Իլյիչի լավագույն երկերը, որոնցում լուսաբանվում են Հոկտեմբերյան հեղափոխության բնույթը, շարժիչ ուժերը, համաշխարհային պատմական նշանակությունը, բազմազգ ժողովուրդներին համախմբելու, սխրանքների ոգեկոչող ուժը։*

ԲՈՒԽԱՐՈՎ ՅԱ. Ս., ՏԼՈՍՏԱՆՈՎ Վ. Կ., ԽՈՐԻՆ Ի. Ս.— Սոցիալիստական հեղափոխության լենինյան տեսությունը և ներկա դարաշրջանը։ *Մ.,* «Мысль» *հրատ., 1966, 303 էջ։*

*Աշխատության մեջ արծարծված են հետևյալ թեմաները՝ ներկա դարաշրջանի հակասությունները և համաշխարհային հեղափոխության պրոցեսը. սոցիալիստական սիստեմի ներգործությունը համաշխարհային հեղափոխության զարգացման պրոցեսի վրա. կապիտալիստական երկրների բանվոր դասակարգի պայքարը սոցիալիզմի և դեմոկրատիայի համար. կապիտալիստական երկրների հեղափոխությունների բնույթն ու ձևերը. ազգային-ազատագրական հեղափոխությունների դերը իմպերիալիզմի կործանման գործում. ազգային-ազատագրական հեղափոխությունները սոցիալիստականի վերաճելու պայմանները։*

ՄՈՐՈԶՈՎ Բ. Մ.—Կուսակցությունը և սովետները հոկտեմբերյան հեղափոխության մեջ։ *Մ.,* «М ісль» *հրատ., 1966, 420 էջ։*

*Ելնելով լենինյան սկզբունքներից և օգտագործելով համապատասխան գրականությունն ու արխիվային նյութերը, հեղինակն ուսումնասիրել է բոլշևիկյան կուսակցության կազմակերպիչ ու ղեկավար դերը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակի, բանվորա-գյուղացիական սովետները պետական օրգանների վերածելու և ամրապնդելու գործում։*

Հայաստանի պոեզիան հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը, *Ե., Հայաստան հրատ., 1966, 511 էջ։*

*Հայ պոետների լավագույն բանաստեղծությունների ռուսերեն ժողովածուն է այս, որն առաջին անգամ հրատարակվել է 1916 թ.։ Ներածականն ու ծանոթագրությունները գրքի խմբագրինն են՝ մեծագույն հայասեր Վալերի Բրյուսովինը։ Ուղղումներն ու հավելումներն արվել են Է. Թոփչյանի, Կ. Այվազյանի և Գ. Թաթոսյանի հսկողությամբ։*

ԴԻԼՈՅԱՆ Վ. Ա.—Լազարյանների հասարակական-քաղաքական գործունեության պատմությունից *(XVIII դարի երկրորդ կես)։ Ե., ԳԱ հրատ., 1966, 275 էջ։*

*Հեղինակը լուսաբանում է Լազարյանների նշանակալից դերը հայ ժողովրդի մշակույթի զարգացման ու տարածման, հայ-ռուս ժողովուրդների բարեկամության ամրապնդման, Հայաստանի ազատագրության մեծ պայքարին ծառայելու գործում։*

ԿԵՐԱՄ Կ. Վ. (ՄԱՐԵԿ Կ. Վ.)—Աստվածներ, դամբարաններ, գիտնականներ։ *Վեպ հնագիտության։ Ե., Հայաստան հրատ., 1966, 492 էջ։*

*Արևմտագերմանական հրապարակախոսի (ժուռնալիստի) — այս գործում արտացոլված են հնագիտական այն մեծ հայտնագործությունները, որոնց շնորհիվ հնարավոր եղավ վերականգնել Հունաստանի, Եգիպտոսի, Բաբելոնի, Մեքսիկայի հնագույն քաղաքակրթությունների պատմությունը։*

ԳԻՆԸ 25 Կ.



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՇՆԱՁԿԱՆ ԼՅԱՐԴԸ ԵՎ ՔԱՂՑԿԵՂԻ ՈՒՌՈՒՅՔԸ

Ուռուցքաբանների ամերիկյան ընկերության անդամ բժիշկ Ջոն Գ. Գելլերը հետաքրքրական հաղորդում է արել. շնաձկան լյարդից վերցրած նյութը ոչընչացնում է քաղցկեղի ուռուցքը։ Այդ նյութի քիմիական բաղադրությունը դեռևս չի պարզված։ Դոկտոր Գելլերը նկատել է, որ շնաձկներին ոչ մի կերպ չի հաջողվում վարակել քաղցկեղով և այդ դիտումներից արել է հետաքրքրական մի հետևություն. շնաձուկը այդ հիվանդության հանդեպ ունի ինչ-որ պաշտպանական միջոց։ Եվ ահա շնաձկան լյարդից հանված նյութը սրսկվել է փորձարկման համար առանձնացված քաղցկեղով հիվանդ 1500 կենդանիների՝ հավերի, առնետների, մկների։ Արդյունքը եղել է ցնցող. կենդանիների մեծ մասի մոտ քաղցկեղային ուռուցքները բոլորովին չքացել են, կենդանիները լիովին բուժվել։

## ԱԼՅՈՒՄԻՆ ՆԵՐԿԵԼՈՒ ՆՈՐ ԵՂԱՆԱԿ

Ալյումին ներկելու համար նախկինում պահանջվող երեք օպերացիայի փոխարեն, այժմ հունգարական գիտնականները մշակել են ալյումինը դարչնագույնի ուղած երանգներով ներկելու եղանակ, որը պահանջում է միայն մեկ օպերացիա։ Նոր ներկը լույսի և կոռոզիայի նըկատմամբ ավելի դիմացկուն է։

Այս եղանակով ներկելու տեխնոլոգիական պրոցեսը կրճատվել է՝ 55—110 րոպեից հասնելով մինչև 15—30-ի։

## 10 ՀԱԶԱՐ ԽՈՍԱԿՑՈՒԹՅՈՒՆ ՄԻԱԺԱՄԱՆԱԿ

Բուդապեշտի կապի գիտահետազոտական ինստիտուտում մեկ տարուց ավելի է, ինչ աշխատում է «Բարեկամություն» սարքը՝ լայն դիապազոնի միկրոալիքային կապի համար։ Այն կարող է գործել մինչև 12500 կմ տարածության վրա և ի վիճակի է միաժամանակ հաղորդելու ավելի քան 10 հազար հեռախոսային խոսակցություն։

Այս եղանակը կարելի է օգտագործել նաև սև-սպիտակ և գունավոր հեռուստահաղորդումների ու կապի արհեստական արբանյակների հետ կապ պաշտպանելու համար։

## ԿԱԽԱՐԴԱԿԱՆ ՀԱՅԵԼԻ

Ֆրանսիական գյուտարար Մ. Ֆեյարը ավտոմեքենաների համար հնարել է նոր հայելի, որը վարորդին հնարավորություն է տալիս տեսնելու, թե ինչ է կատարվում առջևից գնացող մեքենայի հետ։ Դա գործնական մեծ նշանակություն ունի, հատկապես, եթե մարդատար մեքենան գնում է վիթխարի բեռնատարի հետևից։ Հայելին բաղկացած է պրիզմայից և լինզայի ամբողջ սիստեմից։

## ԾՈՎԸ ԾԱՎԱԼՎՈՒՄ Է

Շվեդական երկրաբաններն ու մետեոբոլոգները ուսումնասիրում են այն հարցը, թե ինչպես է հետագայում փոխվելու ծովի ու ցամաքի հարաբերակցությունը մեր մոլորակի՝ Երկրագնդի վրա։ 500 հազար տարվա եղանակի վերլուծության հիման վրա գիտնականները եկել են այն եզրակացության, որ Բրիտանական կղզիների և Արևմտյան Եվրոպայի հյուսիսային ափերի վրա մոլեգնող փոթորիկներն ավելի հաճախակի և ուժգին են դառնալու։ Այդ կհասցնի այն բանին, որ ծովը կգրավի նոր տերիտորիաներ։ Հետազոտողների կարծիքով ծովի առաջին լուրջ գրոհը արևմտաեվրոպական ցամաքի վրա տեղի կունենա 4000 թվականին, իսկ 10000 թվականին տեղի կունենա Հյուսիսային ու Բալթիկ ծովերի լրիվ միացումը Շլեզվիգ-Հոլշտեյնի (ԳՖՀ) շրջանում։